ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՄԾ.

# ՏԱՂԱՍԱՑՆԵՐ
# ԵՒ
# ՏԱՂԵՐ

ԳՐԵՑ

Հ. ՆԵՐՍԷՍ Վ. ԱԿԻՆԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ

ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1968

# ՏԱՂԱՍԱՑՆԵՐ ԵՒ ՏԱՂԵՐ

ԳՐԵՑ
Հ. Ն. ԱԿԻՆԵԱՆ
ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ

ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1968

# ԵՐԿՈՒ ԽՕՍՔ

«Տաղասացներ եւ Տաղեր» վերնագրով հանգուցեալ Մեծ Հեղինակը նկատի ունի այնպիսի մատենագիրներ, որոնց մասին Հայ Մատենագրութեան մէջ հազիւ յիշատակութիւններ կան։

Ինչպէս «Բովանդակութեան Ցանկէն» կը տեսնուի այդ հեղինակներու կեանքն ու գործունէութիւնը իրենց երկերով լոյս տեսած են նախապէս «Հանդէս Ամսօրեայ»ի մէջ, զանազան տարիներու ընթացքին։ Այժմ այս հատորին մէջ ի մի ամփոփելով այդ մատենագրական ուսումնասիրութիւնները ժամանակագրական կարգով, կը ներկայացնենք ընթերցող հասարակութեան։

Վիեննա 12 Մարտ, 1968

ՀՐԱՏԱՐԱԿԻՉ

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

Ա.

# Ս. ՆԵՐՍԷՍ ՇՆՈՐՀԱԼԻՈՑ

## ԳՈՎԵՍՏ Ի Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆՆ Ի ԽՆԴՐՈՑ ՄԵԾԻՆ ԹՈՐՈՍԻ

*Ս. Աստուածածնի նուիրուած այս Գովեստի տաղս պահուած է Երեւանի Պետական Թանգարանի Թ. 372 Գանձարան–Տաղարանին մէջ, որ գրուած է ԺԳ. դարու երկրորդ քառորդին, հաւանօրէն Երզնկայէ ծագած գաղափար–օրինակի մը վրայէն: Իր ամբողջութեան մէջ անծանօթ էր տաղս:*

*Տաղին խորագիրն եւ սկզբնաւորութիւնն է.*

*Աստուածածնին Գովեստ ի Ներսիսէ կաթողիկոսէ ասացեալ:*

*Նոր երկինք յերկրի արփւոյն պարունող,*
*Ծագողի ծագող...*

*փ. Իմանալի սերոբէ, Բանին աթոռ քերոբէ...*

*վջ. Երրորդութեան անեղին յաւէտ ի նոյն միշտ էին:*

*Տնակապ գրերը կը յօղեն.*

*ՆԵՐՍԷՍԻ ԳՈՎԵՍՏ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ Ի ԽՆԴՐՈՑ ՄԵԾԻՆ ԹՈՐՈՍԻ Է.*

*= Երեւան, Պետ. Թանգ. Թ. 372, Թղ.* 266*ա*—268*ա*:

*Տաղս ամբողջութեամբ թէպէտ այս ձեռագրին մէջ միայն պահուած է, բայց անկէ*

մասեր կը գտնուին ուրիշ Գանձարաններու եւ Տաղարաններու մէջ ալ:

Ա. Մասը, որուն տուները կը կապեն «Ներսէսի» ունինք Երեւանի Թ. 372, Թղ. 54ա—55բ: Պարիս, Ազգ. Մատ. Թ. 79, Թղ. 335ա (տպկէ օրինակուած՝ Վենետիկ, Թ. 294, Թղ. 81ա. Սարգիսեան, Ցուցակ, էջ 1068): Վենետիկ, Տաղարան, ԺԲ., էջ 4: Տպկէ տպագրուած է՝ Տեառն Ներսիսի Բանք չափաւ, Վենետիկ, 1830, էջ 366:

Երրորդ Մասը, որ Ցորդորակ է (փ. = փոխէ գձայնն), «Իմանալի սերովբէ» սկզբնաւորութեամբ, կը կապէ «Ի խնդրոյ Մեծին Թորոսի է». ունինք Երեւան, Թ. 974 (ԺԶ. դարէ) եւ Վիեննա, Թ. 663, Թղ. 75բ (ԺԷ. դարէ):

Այս երրորդ մասի երկրորդ բաժինը «Մայր կենդանեացըն հոգւով» սկզբնաւորութեամբ եւ «Մեծին Թորոսի» տնակապ գրերով, առնուած է Գրիգոր Ծերենցի Գանձարանին մէջ. Երեւան, Թ. 351, 324ա (1424): Էջմ. 474, 10ա: Բրիտանական Թանգարան, Թ. 54, 272բ (1412. Catalogue, 120ա): 56, 11բ (1520. Cat. 125ա): Հալէպ, Քառասուն Մանկունք, Թ. 71 (1497. Սիւրմէեան, Ցուցակ, Ա., էջ 148բ): Դուբլինի Թ. 43, էջ 349ա: Եւայլն:

Օրինակողները նկատի առնելով տնակապ գրերը «Մեծին Թորոսի է» համարած են «Ի Մեծէն Թորոսէ է տաղս». այսպէս Բրիտ. Թանգ. Թ. 54:

Տաղս ըստ տնակապ դրերու «Ներսէսի․․ ի խնդրոյ Մեծին Թորոսի է»: Այս Մեծն Թորոս Կիլիկիոյ համանուն Իշխաններէն երկրորդն է. որուն յարաբերութիւնը Ներսէս Շնորհալւոյ հետ ծանօթ է պատմութենէն: Կը գրէ Ներսէս Լամբրոնացի, թէ 1165ին, երբ Լամբրոնի տիրոջ Օշինի եւ Կիլիկիոյ իշխան Թորոսի մէջ գժտութիւն ծագեցաւ եւ Թորոս իր զօրքով գնաց Լամբրոնի սահմանները աւերելու, Գրիգորիս կաթողիկոս ուղարկեց իր եղբայրը՝ Ներսէս, «որպէս զի խոհականութեամբն իւրով հնարեսցի համոզել զնոսա ի խաղաղութիւն»: Եւ Ներսէս յաջողութեամբ ի գլուխ հանեց երկու համազգի իշխաններու հաշտութիւնը, «ի ձեռն իւրոյ միջնորդութեանն անքակ սիրով կապակցելով զնոսա ընդ միմեանս» (Սիսուան, էջ 81):

«Ի խնդրոյ Մեծին Թորոսի» գրուած այս տաղը առհաւատչեայ մըն է, թէ Ներսէս ոչ միայն Օշին եւ Թորոս իշխանները իրարու հետ անքակ սիրով կապած է, այլ եւ իր եւ Թորոսի մէջ սիրոյ եւ հիացմունքի անքակ կապ մը հաստատուած է: Թորոս խնդրողն է Աստուածածնի գովեստին եւ Ներսէս կատարողն է «Մեծին Թորոսի» խնդրուածքին: Թորոսի «Մեծ» յորջորջումը Շնորհալի Ներսէսին հիացմունքի արտայայտութիւնն է: Իր կենդանութեան այսպէս կը յորջորջուէր Թորոս արժանիքի արդար գնահատողէն: Մեծն Թորոս ինքնին գրասէր եւ գրագէտ

էր․ Վահրամ Րաբունի երգած է իր բարեմասնութիւնները․

Էր սա մարմնով յառաջացեալ
Այլ եւ հոգւով յոյժ զօրացեալ․
Զողորմութիւն առատ տուեալ,
Ըստ արեգական լուսոյ փայլեալ․
Բարեաց գործովք բարգաւաճեալ,
Եւ հաւատով պայծառացեալ․
Աստուածային գրովք վարժեալ,
Եւ յիմաստից արուեստ մտեալ․
Ասեն հոգի սա ընկալեալ,
Մարգարէի հաւասարեալ․
Որով դըժուար բանըս լուծեալ,
Որ գըտանի այժմըս գըրեալ։
Ցամենայնի փառաւորեալ,
Եւ յԱստուծոյ հաճոյս կացեալ[1]։

Դժբախտաբար ժամանակը թոյլ չէր տուած ինձ օրինակել Երեւանի Թ․ 372, Թղ․ 266ա—268ա, այս տեղ ներկայացնելու համար Շնորհալւոյ այս անտիպ տաղը իր ամբողջութեամբ։ Կը բաւականանամ տալ սորեւ անոր վերջին մասը, Ցորդորակը հանելով մեր Մատենադարանի Թ․ 663, Թղ․ 75բ—76բ Տաղարանէն (M)։ Բ․ բաժնին համար համեմատութեան առած եմ Դաւրիժի Թ․ 43, էջ 349ա, զոր ունիմ օրինակութեամբ Ուսուցչապետ Հ․ Աճառեանի (A)։

[1] Վահրամ, էջ 299։

## ՆԵՐՍԷՍԻ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ ԳՈՎԵՍՏ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ Ի ԽՆԴՐՈՅ ՄԵԾԻՆ ԹՈՐՈՍԻ

*Իմանալի սերովբէ,*
*Բանին աթոռ քերովբէ.*
*Խորան լուսոյ արքային*
*Հարսըն մաքուր փեսային.*
*Նոր բուրաստան ծաղկերանկ,*
*Ողկուզաբեր բարունակ*
*Դըրախտն կըրկին քեւ տըւաւ,*
*Մաւրն Եւայի որ մեղաւ:*
*Բոտեալ զերկունս տըրտմական*
*Փոխադրեցեր րախճական.*
*Ուրախութիւն երկրայնոցս*
*Հարսն ի յերկրէ երկնայնոց:*
*Մայր կենդանեացըն հոգւոց*
*Զոր նախահայրըն ծանոյց,*
*Երկոտասան վըտակաւ*
*Վէմն առ ի քէն շնորհեցաւ:*
*Ծընար քաւիցըն խընկոց*
*Հոգւոյն ոգիդ խառնելոց.*
*Իմաստութիւն զաւրութիւն*
*Արդարամիտ մաքրութիւն:*
*Նարդոս զըմուռ ծովային*
*Եւ կինամոն մեծագին.*
*Թագ եւ պըսակ զարմազան*
*Զըմրութ եւ կայծ, կարկեհան:*

ԽՈՐԱԳԻՐԸ՝ *Տաղ գեղեցիկ ի սուրբ Աստուածածին ի խ. մ. թ.:* — 2 M *յաթոռ:* — 6 M *ողկոյզաբեր:* — 11 M *յերկրայնոցս:* — 13 Հոս կը սկսի A: M *հոգւոց* A *հոգոյն:* — 14 A *նախահայր:*
18 A *հոգիդ:* — 21 M *նարթոս:* A *եւ զըմուռ:* — 23 A *թ. պաճուճեալ գ.:* — 24 M *կարդեհան* A *կարկէհան:*

*Ով դու քաղաք կենդանի*
*Տաճար չինեալ Ցիսուսի.*
*Ռաբունւոյն (Տեառն) Քրիստոսի,*
*Ծընաւղ մարմնով ի յերկրի:*
*Ով որ հայցեմք մայր լուսոյ,*
*Ձերգող երգոյս եւ զոաղոյս,*
*Սրրբել ըզմեզ ի մեղաց*
*Լեր բարեխաւս անմոռաց:*
*Ի զըւարթնոցըն կային*
*Երգել ըզփառս ընդ նոսին*
*Էրրորդութեան անեղին*
*Ցաւէտ ի նոյն միշտ էլին:*

26 A *չնորհեալ*: — 27 A *բամեալ գոյից արարչին*: — — 28 A *մարմնովծնող*: — 29 A *որով*: — 30 M *երգաւղ*: A *երկոյս եւ զխնդրողս*: — 33 A *ի զըւարթնոց կայանին*: — 35 A *Երրորդութեան*: M *անեղի*:

# Բ.

# ՎԱՐԴԱՆ Վ. ԲԱՐՁՐԲԵՐԴՑԻ
## (ԿԻԼԻԿԵՑԻ)

---

## Բ.

# ՎԱՐԴԱՆ Վ. ԲԱՐՁՐԲԵՐԴՑԻ

Էջմիածնի Թ. 470 ձեռագրին մէջ գտած էի երկու չափական գրուածք, որոնք ընծայուած էին «Վարդան վարդապետի Բարձրբերդցւոյ Կիլիկեցւոյ»: Այս անունով մատենագիր մը կը յիշէ Յակոբ Նալեան, որ խօսելով Բարձրբերդի մասին կը գրէ. «որ էր ամրագոյն բերդ մի պարսպաւոր ի Կիլիկիա. յորմէ էր Վարդան Բարձրբերդցի, այր իմաստուն եւ բանիբուն»[1]: ԺԳ. դարուն բերդիս տէրն էր Կոստանդին Արքայահայր. իր որդին Յովհաննէս Պաղտին արքայեղբայր, բերդիս մօտերը կառոյց Գռների վանքը, ուր եւ կը բնակէր ինքը: Իր առաջնորդութեան շրջանին ծաղկեցաւ վանքս, ունեցաւ դասարան. եղաւ դրչութեան արուեստի Դպրոց:

Վարդանի յորջորջումը «Կիլիկեցի» կը զանազանէ զինքը Վարդան Արեւելքցիէն, Հաղբատացիէն եւ Մարաթացի—Այգեկցիէն: «Բարձրբերդցի» կոչումը ցոյց կու տայ, թէ ինչպէս Կոստանդին Բարձրբերդցի Կաթողիկոս, նոյնպէս ինքը Բարձրբերդի շրջակայքի մէջ ծնած է: Վարդան իր «սնուցիչն եւ ուսուցիչը» կ'անուանէ

[1] Գիրք կոչեցեալ Գանձարան ծանուցմանց. Պոլիս 1758, հատոր Գ., էջ 284:

Յովհաննէս Արքայեղբայրը․ ուսած իր դաստիարակութիւնն առած է Գոների վանքին մէջ ի Կիլիկիա։ Կը յիշէ նաեւ իր միւս ուսուցիչն «Եսայի վարժապետ», որ Գլաձորի դպրոցին վարիչն էր։ Հետեւաբար Յովհ․ Արքայեղբօր մահէն († 1289) ետքը, իբր 1300ին, անցած է Վարդան Սիւնեաց աշխարհը, չարունակելու իր ուսումը Գլաձորի «Համալսարանին» մէջ առ ոտս Եսայի Նչեցւոյ։

Իր դպրոցական կեանքի մասին են հետեւեալ տողերը, զորոնք գրած է «Խոցուած շատ ունիմ սրտիս» տաղին մէջ․

Ի մանկութենէ, եղբարք, հետ ուսման
 բանից կու դատիմ․
Ի սիրոյ տաղնապ կրեալ՝ ծարաւի հող–
 ւով տոչորիմ․
Միշտ ակն ունելով համման յիմաստից
 դուռըն դեղերիմ։
Գերիս յանհմուտ անձանց անաչառ հա–
 րուածս ընդունիմ․
Որ իմ խոցուս չեն գիտակ՝ գինչ պիտի
 նա դայն կու խօսին։

Վարդան առ ոտս իր դաստիարակին՝ Յովհաննէս Արքայեղբօր սորված է նաեւ գրչութեան արուեստը․ հասած են իր գրչէն հետեւեալ օրինակութիւնները․

1․ Յովհաննէս Արքայեղբայր 1286ին օրինակել տուած է երեք գրիչներու Իշնա–

տիոսի Մեկնութիւնն Ղուկասու, Նոննայի Մեկնութիւնն Յովհաննու, Անդրէասի Մեկնութիւնն Յայտնութեան եւ Ն. Լամբրոնացւոյ Մեկնութիւնն Հանգստեան Յովհաննու. «Թուի կը գրէ Հ. Ալիշան, Սիսուան 147, Թէ մի յերից գրչաց իցէ Վարդան Բարձրբերդցի, զի է յիշատակ մի նորին ի մատենին, յորում ուսուցիչ իւր կոչէ զոյն ինքն զՅովհաննէս»: Յիշատակարանը յառաջ չէ բերուած. չէ ալ նշանակուած, Թէ ուր կը գտնուէր ձեռագիրը[2]:

2. Էջմիածնի Թ. 470, որ կ'ամփոփէ իր ծոցը Գրիգոր Նիւսացւոյ (Նեմեսիոսի) Յաղագս բնութեան եւ կազմութեան մարդոյ, ունի յիշատակարաններս.

Թղ. 87բ. «Զանուցիչ եւ զուսուցիչն իմ զտէր Յոհաննէս զեղբայր արքային Հայոց Հեթմոյ յիշեցէք ի Քրիստոս. եւ Աստուած ձեզ յիշէ:

Թղ. 115բ—116ա. «Զարփիական գերահանդէս եւ զներածմունք բնաւին յընթացս ի վերնականոյց իմաստութեանն զծաւալ բանին երկխուղածաց, զվարժապետս իմ (զՆսայի ջնջուած) ստացաւղ համայն աստուածագիր վիպասխս (ա՛յսպէս) ծիրանափայլ հողո վառմաբ յիմանալին կրող աւրն լուսո զաւրըստաւրէն հաց իմաստու-

[2] Այս ձեռագիրը կ'ակնարկէ Հ. Ալիշան, Հաւաքումն Պատմութեան Վարդանայ վարդապետի. Վենետիկ 1862, էջ Բ. «որպէս յիշէ մատենագիծն յամի 1286»:

թեան յարքաական սեղան ընդ բանին միացեալ յիշեցէք... եւ զիմն տեառն Յոհաննէս զեղբայր արքային Հայոց Հեթմո եւ զտարակացեալ գրիչս Վարդան Կիլիկեցի իմոլքըն... ամէն»: Կը յաջորդէ ծածկագրութիւն մը:

Թղ. 213ա. «Զենթադիր արտակերտեալս ի վիսսաւլէն ի Գրիգորէ Նիւսեա արտաջարեալ զոխյն տերունեան... Հրամանաւ իմոյ վարժապետիս Եսայեա չարադան պարեցի զգերաբուն դրախտս... զվերոասցեալ բարունիս մեր Խասյի հանդերձ ծնողաւք եւ ազգայնաւք անմոռաց մաղթել զխակն բան...: Ո՛ եւ զիմն տեառն Յոհաննէս արքայեղբայր Հայոց Հեթմո յիշել... այլ եւ զիմս անարժան թախիծ մակացու գըրչողս զՎարդան Կիլիկեցի համայն ծնողաւք մեր եւ եղբարբք...»:

Ձեռագիրս թէեւ թուական չունի, բայց գրուած ըլլալու է 1300էն ետքը Գլաձորի մէջ. Վարդան ինքզինքը Յովհ. Արքայեղբօր «տարակացեալ» աշակերտը կը ներկայացնէ:

3. Այս շրջանին, նոյնպէս Գլաձորի վանքը, գրուած է Եսայի վարժապետի համար Գրիգոր Նիւսացւոյ Մեկնութիւնն Ինն Երանութեանց եւ Հայր մերի (Էջմ. Թ. 749, ղժբախտաբար առանց թուականի յիշատակութեան): Ինն Երանութեանց կից կայ Վարդանի յարասութիւնը ոտանաւոր չափով, որուն տնակապ գրերը կը կազմեն

«Վարդան»: Այս յարասութիւնն է (Թղ. 109բ).

Վիմարդեան գլուխ բանի
Իննեակ թուով յաւէտ խօսի.
Տէրն է քարող բարձր վիմի.
Աշակերտացն Տեառն Յիսուսի

Ահա ասել զՏեառն ձայնի
Յոյժ աղքատացն երանելի,
Հոգւով լինել իբր զոսկի.
Մաքուր մարմնով մինչ ապակի:

Բախ լինել հեզ եւ բարի
Ժառանգ վերինն կայանի.
Հաւատ եւ յոյս է կենդանի,
Միշտ ելանել յերկիր բարի:

Դիտումն է լոյս զգայականի,
Սգաւորք լինել ի յաշխարհի.
Յորժամ հոգի Տեառն հնչի
Մխիթարիչ հոգւոց լինի:

Ահա քաղցեալքն երանելի
Որ ի սեղան Հօրն բազմի.
Ատել զսէր այս աշխարհի,
Եւ ճաշակել զբան կենդանի:

Նախկնաբար մեզ քարոզի
Յաստուածային Բան եւ Հոգի,
Թէ ողորմածն երանելի,
Տէր մարդասէր առ նա ձայնի[3]:

---

[3] Այս մասը Էջմիածնի Թ. 749էն լուսատիպ հրատարակած է Գարեգին Արքեպ. Յովսէփեան, Խաղբակեանք, Բ., էջ 217. հմմտ. նաեւ էջ 214 եւ Գ. 163—164:

Կ'երեւայ թէ Ձեռագրին մէջ այստեղ թուղթ մ'ինկած է, ուր կը շարունակուէր յարասութիւնս «ԿԻԼԻԿԵՑԻ ԱՌ ԵՍԱ(ՑԻ) տուներով:

Հայ քաղցելոյն ճաշակողի
Ցաւաջընթա ի յատենի:
Ցորմէ Ցիսուսն այն սոսկալի
Հատուցանէ զգործս բարի·
Եսայիաս վարժապետի
Ձիմանալի հաց ծասկողիս·
Ի Վարդանա աշակերտի
Որ մեզ հայցէ առ Տէրունի
Զթողութիւն յաւիտենի,
Եւ ինքն գտցէ յաւիտենի:

Այս օրինակէն արտագրուած է 1317ին Գլաձոր Վենետիկի Մխիթարեանց Թ. 265 ձեռագիրը, ուր պահուած է Վարդանի այս յարասութիւնս ալ: Հ. Բ. Սարգիսեանի Ցուցակէն (Բ. էջ 849) չ'իմացուիր, թէ պահուա՞ծ է հոն Ցարասութեանս երկրորդ մասը, ուր նկատի առնուած պէտք է ըՍային Զ—Թ Երանութիւնները:

4. Բարձրբերդցին կ'երեւայ հետեւեալ Վարդան գրիչը, որ 1275ին օրինակած է Գրիգոր Աստուածաբանի ճառերը· գրեցաւ «ձեռամբ Վարդանայ անպիտան քահանայի եւ յետին գրչի»· կը խնդրէ յիշել «զարդիւ-նական բաբունին Վահր(ամ), որ զատա-ջոյ գրեալսն ի սմա շնորհեաց մեզ եւ մեք կատարեցաք» (Նոր Ջուղա, Թ. 102):

5. *Երուսաղէմի Թ. 1709 (Դիոնեսիոս Արիսպագացւոյ գրութիւնք) գրուած է 1298, եւ ունի յիշատակարանս. «Վերնահանդէս լոյսն իմաստութեան առատակազմն յաւրինէ ի լուսաւորեալս պէսպէս որակս. եւս առաւել ի հանդիսարկուք յախտենականսն ընախաւսել. զի որք հոգւոյն են ըստ Պաւղոսի՝ չարալծեալ ունին զամենայն. իսկ որք աշխատասէրք գոլով ի վերին աւգնականութենէն չարժեալ պարզ գոլով տեսողակին (ա՛յսպէս) գերամբարձ զաւրութեամբն. քանզի ներգործականքն առաքինութեամբն չարժին զխակական լոյսն առ ի յընդունումն լուսալիր մտաց, ի պատիւ եւ ի փառս Երրորդութեանն. յաւէտ եւս չարժեալ զխս տկարութիւնս ի սէր աստուածային մարգարանիս մեծին Դիոնէսիոսի: Եւ թէ ոք վերաձայնէ թէ զիարդ կամ որպէս զմեծին Ստեփանոսի զՄեկնիչն չէ աստ չարագրել. զի ոչ թէ խոտան գոլով, այլ կարի յոյժ գեղեցիկ իմաստաբար. եւ այսպէս ուսցիս զպատճառն. մին վասն տկարութեան մարմնոյ ոչ չարագրեալ, եւ միւսն վասն աղքատութեանս. իսկ միւսն վասն ժամանակին անկարութեան: Աղաչեմ, ով ոք տիրեսցէ յետ մեր սիրով ընկալջիք. զի բազում են մեկնիչք. եւ ով եւ կամի՝ առցէ. զի առաւել սիրէի զորբոյս վարդապետութիւնս. այսմ այսպէս գրեցաւ:*

*Աղաչեմ յիշել զմեզ ի բարին Քրիստոս՝ զՎարդան սպասաւոր բանի Հանդերձ*





ծնաւղաւքն մեր եւ եղբարրք· ընդ նմին եւ զուսուցիչն իմ զտէր Յովհաննէս զարքաեղբայր Հայոց Հեթմոյ, գրեսցի ի դպրութիւն կենաց· եւ որ մեղ հայցէ եւ ինքն գտցէ ի Քրիստոսէ: Էր թիւն Հայոց ՉԽԷ (1298)· ի թագաւորութեան Հայոց Հեթմոյ բարեպաշտի եւ աստուածասիրի, այր ողորմածի եւ բարեվայելուչ թագաւորի· եւ ի հայրապետութեան Հայոց տեառն Գրիգորիսի երկրորդ վկայասէրի եւ գերակատար իմաստասիրի, այր առաքինւոյ, ուղիղ եւ ճշմարիտ դաւանողի զԵրրորդութիւնն եւ ինքն Քրիստոս աւրհնեալ յաւիտեանս:

Կից ունի Դաւթի Խակաց գիրքը յիշատակարանովս· «Կատարեցաւ Խակաց գիր եւ Դիոնէսիոսի ի մի կազմ ձեռամբ Վարդանայ Կիլիկեցոյ· յիշել յաղաւթս աղաչեմ»:

6· Նոյն Գրիգոր Անաւարզեցի կաթողիկոսի համար գրուած է Էջմիածնի Թ· 500 (Ն· Շնորհալւոյ Թղթակցութիւնք): Գրութեան տարին կը պակսի· բայց 1305էն տարիներ յառաջ գրուած ըլլալու է, վասն զի այս թուականին կաթողիկոսը զայն նուէր ուղարկած է Գլաձոր Եսայի Նչեցւոյ համար: Յիշատակարաններն են· Թղ· 209ա· բուն գրչէն· «Զերջանիկ կաթողիկոսն զտէր Գրիգոր ստացող գր(ոցս) յիշեցէք աղօթիւք ի Քրիստոս· այլ եւ զՎարդան գր(իչս)»: Թղ· 230բ· «Զարժանապատիւ հայրապետն Հայոց զտէր Գրիգորիոս ստացօղ գրոցս ա—

ղաչեմ յիշել ի Տէր ծնողաւք, քերֆրք եւ եղբարբք եւ բնաւին զարմաւք, որպէս զի ողորմեսցի նոցա Քրիստոս: Ընդ նոսին եւ մեղաւոր գրիչս Վարդանա եւ իմոց ծնողացն եւ որոց ամէն ասեն»: Թղ. 369բ կը գրէ կաթողիկոսը ինքնագիր. «Տէր Գրիգորիս ծառայ Աստուծոյ եւ ողորմութեամբ Նորին կաթողիկ(ոս) ամենայն Հայոց. ընծայեցի զգիրքս Եսայի վարդապետին (Զ. վգին) ի ձեռն մեր հաւատարիմ լեկատին տէր Կոստանդեայ արքեպիսկոպոսին Կեսարու, առաքեալ յԱրեւելս ի թվին ՉԾԴ»: Թղ. 435ա. «Եսայի վարդապետին է գիրքս. յաղագս որոյ միշտ յիշել աղաչեմ յողորմութիւնն Աստուծոյ [4]»:

7. Վարդան 1299ին Կոստանդին Կեսարիոյ արքեպիսկոպոսի համար կ'օրինակէ Երուսաղէմի Թ. 305 (Գէորգ Սկեւռացւոյ Եսայեայ խմբագիր մեկնութիւնը). կը խնդրէ. «Զստացող սուրբ եւ աստուածային Երգարանիս զտէր Կոստանդին արշիեպիսկոպոս աղաչեմ յիշել ի Տէր. նաեւ զանպիտան ծառայս տեառն զՎարդան գր(իչս) յիշեսջիք ի Տէր»: Ձեռագիրս յետոյ նուիրած է Կոստանդին արքեպիսկոպոս Եսայի Նչեցւոյ: Իր ինքնագիրը լուսատիպ հրատարակած է Ա. Ալպօյաճեան Պատմութիւն Հայ Կեսա-

[4] Հմմտ. Արարատ 1893, էջ 237—238ա. եւ Գ. արքեպ. Յովսէփեան, Քարտէզ հայ հնագրութեան, էջ 46 եւ Տխ. ՀԶ, 116. ուր լուսատիպ տուած է Գրիգոր կաթողիկոսի ինքնագիրը:

րից· Ա· էջ 914· Հմմտ. նաեւ Ա· 913 եւ Բ· 1845—1846: Ջեմ կասկածիր թէ Վարդանս Բարձրբերդցի–Կիլիկեցին չըլլայ:

Մինչ Կիլիկիա կը կորսնցնենք Վարդանի հետքը 1299էն ետքը, ի Գլաձոր կը յայտնուի 1301ին Վարդան Կիլիկեցի նոր գրիչ մը: Ջեմ տեսներ որ եւ է դժուարութիւն հաստատելու համար թէ Վարդան Բարձրբերդցի–Կիլիկեցի 1300ին փոխադրուած ըլլայ Գլաձոր, շարունակելու համար իր ուսումները Եսայի Նչեցւոյ համալսարանին մէջ· ուր կը յաճախէին նաեւ ուրիշ Կիլիկեցիներ: Իր գրագրութիւններէն մէկն եղած է հոս ձեռագիրներ օրինակել. ունինք իրմէ.

8· Էջմիածին, Նոր ժողոված, Թ· 1844 (Ն· Լամբրոնացւոյ Մեկնութիւնն Սաղմոսաց) գրուած է Եսայի Նչեցւոյ համար· Ա· մասը՝ Թղ· 1—329ա օրինակած է Յովհ· Երզնկացի· շարունակութիւնն մինչեւ Թղ· 441 գրած է Վարդան Կիլիկեցի ի Գլաձոր· մնացածը լրացուցած է Մկրտիչ գրիչ Թեղենեաց վանքը 1302ին· յիշատակարանին մէջ այսպէս կ՚արտայայտուի Մկրտիչ գրիչ· «բայց առաջին սկիզբն գրութեան սորա եղեւ ի գաւառին Վայոյ ձոր կոչեցեալ, ի սուրբ եւ ի գերահռչակ ուխտն Գլաձոր... ձեռամբ ուրումն սրբազան քահանայի... Յովհաննէս անուն, որ էր ի հռչակաւոր քաղաքէն Եզրնկայ կոչեցեալ. արդ գկէս Մեկնչի Սաղմոսիս գրեաց սոյն այր· եւ ապա սակաւ ինչ այլ ոմն Վարդան անուն ի Նահանգէն Կիլիկիոյ· գո-

րոց զվարձս հատուսցէ Տէր» (Ցովսէփեան, Խաղբակեանք, Գ. 161)։ Վարդան օրինակած է Թղ. 329ա—441. ինչպէս ինքնին ուշադիր ըրած է Թղ. 329ա. «Աստից ի վեր Վարդանա Կիլիկեցւոյս է գիր»։ Թղ. 408ա. յիշատակագրած է. «Զամպս գերագոյն հրաշիւք լուսատու ցաւղ զվարժապետս իմ Եսայի, ստացաւղ զաստուածային իմաստիս, ո՛վ ընթերցաւղք, յիշեցէք ի յաղաւթս ձեր եւ զՎարդան նուաստ գրիչ. եւ Աստուած զձեզ յիշէ. ամէն»։ Կը տեսնուի ասկէ, թէ Կիլիկեցի Վարդան մօտաւորապէս 1300էն ի վեր կը դեգերէր Գլաձորի վանքը։

9. Երուսաղէմի Թ. 1309 (Գրութիւնք Դաւիթ Անյաղթի) ունի յիշատակարանս. «Փառք...։ Արդ եղեւ աւարտումն իմաստասիրական եւ յոքնիմաստ գրոցս որ է Պերիարմենիաս, ձեռամբ մեղապարտ եւ անհմուտ գրչի՝ Խապարի սարկաւագի, որ երկանուամբ Գրիգոր կոչի, ի կատարմանս ՉԿԱ թուիս, յոր եւ սկիզբն լինի միւս շրջագայութեանն ՉԿԲ (1313 յունուար 1) հրամանաւ իմաստախոհ վարդապետին Վարդանայ. եւ եղեւ աւարտ գրոցս ի դեկտեմբերի ԼԱ. որ է չորս աւուրբք յառաջ վարդապետն Վարդան էառ հրաման իշխանական եւ զգաւազան վարդապետական»։ Դժբախտաբար գրչութեան տեղը չէ նշանակուած։ Հայոց ՉԿԱ. տարին կ՚աւարտէր 1313 յունուար 1ին եւ նոր տարին կը սկսէր յունուար 2ին։ Ո՞վ է այս Վարդան Վար-

դապետ, որ 1312, դեկտ. 28ին ստացած է վարդապետական իշխանութիւնն եւ գաւազանը։

Կրնա՞նք ենթադրել, թէ Վարդան Կիլիկեցին ըլլայ այս նորընծայ վարդապետը, ուստի այսքան երկար դեգերած ի Գլաձոր։ Ինձ կը թուի թէ այս շրջանին եւ այս միջավայրին մէջ գրուած է նաեւ Վենետիկի Մխիթարեանց Փիլոնի գրուածներու հաւաքածոյքը, որ գրչութեան ոչ տեղին ունի եւ ոչ թուականը. բայց օրինակուած է «Յովհաննէս րաբունւոյ» համար, որ «մականուն Երզնկայեցի կոչի». գրիչն է «անարժան գծող պիտականուն քահանայ Վարդան սպասաւոր բանի[5]»։ Ուրիշ ձեռագիր մը կը գրուի ի Գլաձոր «առ ոտն կայծակնամաքուր րաբունւոյ մերոյ Էսայեայ, որ է պայծառացեալ գործնականաւն եւ տեսականաւ». գրիչն է Ներսէս, եղբօրորդին Կերիոն վարդապետին. իսկ վերջինս՝ կազմողը։ Ստացողը կը գրէ. «Արդ ես Վարդան բանի սպասաւոր ստացայ զգիրքս զայս ի վայելումն մանկանց Սիոնի եւ յիշատակ ինձ եւ արեան մերձաւորաց իմոց՝ հաւրն իմոյ՝ Պարսամի եւ մաւրն իմոյ Տերանցի եւ եղբարցն իմոց Յովանէսի... եւ Ստեփանոսի եւ քուերցն իմոց Խաթունի, Մամախաթունի եւ Շնողփորի» (Գեղամ Տէր-Կարա-

[5] Փիլոնի Եբրայեցւոյ Մնացորդք ի Հայս. Վենետիկ 1826, էջ 622։

պետեան, Ձեռագիրք Տարօնի)։ Այս Վարդան արեւելցի մը կը թուի։

Այս տեղ կը կորսնցնենք Վարդան Բարձրբերդցի–Կիլիկեցւոյ հետքը։ ԺԳ. դարու վերջին եւ ԺԴ. դարու առաջին քառորդին բազմաթիւ Վարդաններ ծաղկած են թէ ի Կիլիկիա եւ թէ ուրիշ հայկական վանքերու մէջ։ Չեմ գտներ որ եւ է կռուան անոնց մէջ նմանութեան գիծ վեր հանելու Բարձրբերդցւոյ հետ։

2. Միանգամ վեր հանելէ ետքը Վարդան Բարձրբերդցւոյ անձնաւորութիւնն եւ անոր ժամանակը, դժուարին չէ այնուհետեւ հերքել Հ. Մ. Չամչեանի եւ անոր հետեւողներու այն թիւր կարծիքը, թէ Բարձրբերդցի Վարդան նոյն ըԱյ Վարդան Պատմիչի հետ, զոր սովոր ենք առհասարակ կոչել Արեւելցի։

Չամչեան խօսելով Արեւելցի Վարդան Մեծ պատմիչի մասին կը գրէ. «Սա էր ծննդեամբ ի Բարձր բերդոյ յաշխարհէն երկրորդ Հայոց[6]». Կոստանդին Ա. Բարձրբերդցի կաթողիկոս «յանձն արար զայն մեծին Վարդանայ վարդապետի Բարձրբերդցւոյ իւրում քաղաքակցի[7]». «Վարդան Վ. Բարձրբերդցի կամեցաւ ձեռն արկանել յայն (ի Մեկնութիւն Սաղմոսաց) ի խնդրոյ Յովհաննու Վ.ի առաջնորդին Հաղբա–

[6] Պատմութիւն Հայոց, Գ. 340։
[7] Անդ, էջ 228։

*տու[8]»: Վարդանի Սաղմոսաց մեկնութիւնը լոյս տեսաւ* 1797*ին Աժդարխան, ճակատին վրայ արձանագրուած «յօրինեալ... տեառն Մեծին Վարդանայ Բարձրբերդցւոյ»: Սոմալեան Գեր. Սուքիաս նոյնպէս Չամչեանի հետեւելով կը գրէ[9].* «Vartano detto il Grande, che fiori nell' anno 1241, in Partzertpiert, città dell' Armenia minore e mori nell' 1271»: 1853*ին լոյս տեսաւ Հ. Ղ. Ալիշանի խնամքով Յովհաննու Սարկաւագայ,* վարդանայ Բարձրբերդցւոյ, *Յովհ. Երզնկացւոյ Ներբողեանք ի Ս. Գրիգոր Լուսաւորիչ[10]. Այսպէս նաեւ Մ. Էմին Վարդանի Հաւաքումն պատմութեանց խորագրած էր «Մեծին Վարդանայ Բարձրբերդցւոյ Պատմութիւն տիեզերական[11]»:*

*Այս թիւր ըմբռնումին անդրադարձաւ Հ. Ղ. Ալիշան* 1862*ին[12]: «Ոչ միայն յիս եւ ի գիրս, այլ ինձ թուի եւ հայրենեացն կոչումն սխալեալ, որոց Բարձրբերդցի զսա ասեն. քանզի ոչ ոք ի նախնեաց անտի կոչէ զնա այսպէս, այլ մանաւանդ բանք նոցին ցուցանեն յարեւելից Մեծաց Հայոց լինել զնա. եւ ամս ինչ պանդխտութեամբ կեցեալ ի*

---

[8] *Հ. Մ. Չամչեան, Մեկնութիւն Սաղմոսաց. Վենետիկ* 1823, *Հատոր Ա., էջ* 7:

[9] Quadro della storia letteratura di Armenia Venezia 1829, p. 109.

[10] *Սոփերք Հայկականք Ե., Վենետիկ* 1853:

[11] *Մոսկուա* 1861:

[12] *Հաւաքումն Պատմութեան Վարդանայ վարդապետի. Վենետիկ* 1862, *Յառաջաբան, էջ Բ.:*

Հռոմկլայն եւ ոչ ի Բարձրբերդ. դայլ ոմն Վարդան Բարձրբերդցի ցուցանելով ժամանակակից նորին կրսեր, որպէս յիշէ [13] մատենագիծ ոմն յամի 1286, որ էր իբր վեշտասան ամաւ յետոյ քան զմահ մեծիս այսորիկ Վարդանայ»: Նոյն միտքը կը կրկնէ Հ. Ալիշան նաեւ «Սիսուանի» մէջ. «Զայնու ժամանակաւ — այս ինքն ԺԳ. դարու վերջերը — հռչակաւոր գիտութեամբ Վարդան Բարձրբերդցի վարդապետ, զոր տեսաք յառաջագոյն աշակերտ լինել Յովհաննու արքայեղբօր. եւ յայտ է ամենեւիմբ զի սխալէին որք զմեծ վարդապետն Վարդան՝ զհեղինակ Պատմութեան եւ զմեկնիչ Հնգամատենին եւ այլ բազում գրոց՝ ընդ սմա շփոթէին. զի նա Արեւելցի է եւ † յամի 1271. իսկ սա է Բարձրբերդցին, որ եւ յամի 1286 կոչէր զինքն աշակերտ Արքայեղբօրն. այլ թերեւս ցարդ շփոթիցին երկասիրութիւնք ինչ երկոցունց համանուանցն, եւ որպէս կարգ բանիս պահանջէ՝ նաեւ համաշնորհից. այլ արդ դործ առանձին եւ ստոյգ ոչ ճանաչի երկրորդիս. եւ ոչ յիշեալն ի Յակոբայ Նալեան. «Գիրք մի ճարտասանութեան, աննման ոճիւ, խրթնապէս շարադրեալ». որ եւ կոչէ զսա Վարդան Բարձրբերդցի, այր իմաստուն եւ բանիբուն»: Թէպէտ այժմ լուսաւորուած է երկու անձնաւորութիւններուս զանազանութիւնը, բայց դեռ կը յեղյեղուի ոմանց

---

13 Սիսուան, Վենետիկ 1885, էջ 149:

բերանը «Վարդան Վ. Բարձրբերդցի Պատմիչ[14]»:

Ինձի կ'երեւայ, թէ Զամչեանը մոլորութեան առաջնորդողն եղած է Յակոբ Նալեան, իր տողերովս. «Բարձր բերդ, յորմէ էր Վարդան Բարձրբերդցի այր իմաստուն եւ բանիբուն»: Հրապարակի վրայ չկար որ եւ է գործ, որ արդարացնէր Բարձրբերդցւոյ վերագրուած այդ յատկութիւնները. բայց անոնք ճշդիւ կը համապատասխանէին Մեծին Վարդանայ:

Հ. Ղ. Ալիշան այս կնճիռը լուծելու ժամանակ նոր հանգոյց մը հրապարակ կը դնէ, երբ նախորդ տողերու շարունակութեան մէջ կը գրէ. «Իսկ զմիւսն զայն գկրսեր, այսինքն Վարդան Բարձրբերդցին, Երկրորդ Վարդան կոչէ Ղազար Ջահկեցի կաթուղիկոս, եւ նմա ընծայէ զՀամառօտ մեկնութիւն չորից աւետարանաց, զԱռակսն, զՀամառօտ աշխարհագրութիւնն, զՄեկնութիւն քերականի. որոց յետինքդ կարծին երրորդի ուրումն կրսերագունի Վարդանայ գործք[15]»: Ասկէ մոլորած է Հ. Տաշեան եւ Վարդան Բարձրբերդցւոյ վերագրած է «Լուծմունքն ի Ս. Գրոց», որ Արեւելցւոյն է, եւ «Թերեւս իրեն՝ Մեկնութիւն Քերականին[16]»:

---

[14] Համեմատէ Հայապատում Բ. ցանկ անուանց:

[15] Հաւաքումն պատմութեան Վարդանայ, էջ Բ:

[16] Հ. Յ. Տաշեան, Ցուցակ, էջ 1155 գ:

Ղազար Ջահկեցի[17] կը զանազանէ Ա. եւ Բ. Վարդան. «Վարդան Մեծն եւ առաջինն, այր գիտնական եւ աստուածաբան» կը ճանչնայ. իսկ «Վարդան Երկրորդ, այր ճոխիմաստ եւ շնորհազարդ» կը ներկայացնէ: Վերջնոյս համար կը գրէ. «Սա արար Համառօտ Մեկնութիւն չորից աւետարանաց գժուարիմաց բանիցն: Եւ ժողովեաց զԳիրս Առակաց ի պէտս հոգւոյ եւ մարմնոյ: Արար եւ զհամառօտ Աշխարհացոյցս: Ասաց եւ զարմանալի Ներբողեանս ի դէմս սրբոյ Լուսաւորչին պատմագրաբար»: Կը տեսնուի ասկէ, թէ Ջահկեցի չէ կրցած զանազանել Արեւելցին, Այգեկցին եւ Աշխարհացոյցին հեղինակները: Ցամենայն դէպս «Վարդան Բարձրբերդցի» անծանօթ մնացած է իրեն թէ՛ անուամբ եւ թէ՛ գրութիւններով:

3. Եւ ընդհանրապէս ոչ ոք, բացի Նալեանէ, ի մերձուստ կամ ի հեռուստ ծանօթ եղած է Վարդան Բարձրբերդցւոյ անունը կրող որ եւ է գրութեան, ամէն անոնցմէ, որոնք խօսք ըրած են իր մասին: Այս պատճառաւ ալ հարկ է ծանրակշռութիւն տալ Ցակոբ Նալեանի հաղորդած տողերուն, որոնք հետեւեալն են. «Վարդան Բարձրբերդցի այր իմաստուն եւ բանիբուն. որ ունի զգիրք մի ճարտասանութեան աննման ոճիւ

[17] Դրախտ ցանկալի. Էջմիածնի 1735, էջ 638—639:

խրթնապէս շարադրեալ»[18]: Առանց տարակուսի նա ձեռքի տակ ունեցած էր այդ ճարտասանութիւնը, որուն ոճի մասին դատաստան կը կտրէ. այդ գործը խորագրին մէջ կրած ըլլալու էր նաեւ հեղինակին անունը «Վարդան Բարձրբերդցի», որով միայն կարող էր զանիկա հեղինակ ճանչնալ: Անշուշտ ցանկալի էր մեզի այժմ ոչ միայն գրքին ներքին կազմութեան մասին լայնագոյն ծանօթութիւններ ունենալ, այլ եւ անոր գրութեան պարագաներու եւ ժամանակի նկատմամբ տեղեկութիւններ ստանալ: Այդ գործը չէ հասած մեզի:

Բայց հասած են Վարդան Բարձրբերդցւոյ հեղինակութիւններէն երկու չափական գրութիւններ, մին բարձր ոճով եւ գրաբար հայերէնով. երկրորդը՝ ռամկօրէն լեզուով: Ասոնք են, պահուած էջմիածնի Թ. 725 ձեռագիր Հաւաքածոյին մէջ, գրուած ԺԴ. դարուն.

1. Վարդան վարդապետի Բարձրբերդեցւոյ ոգեալ բան յաղագս զանազան եւ հրաշալի աւուր Մկրտութեան:

Գերահզօր խորհուրդ փրկագործութեան,
Մեծահանճար արհեստ վերամբարձութեան...

[18] Յակոբ պատրիարք Նալեան, Գիրք կոչեցեալ Գանձարան Ծանուցմանց: Կ. Պոլիս 1758, Հատոր Գ., էջ 284—285:

վչ· Ի խաչ կալով լնուլ զկարիս հոգւոց:
= էջմ. 725, թղ. 266բ—276բ:

2. Վարդան վարդապետի բան Բարձր-բերդցւոյ Կիլիկեցւոյ:

Խոցուած շատ ունիմ սրտիս. զո՞ր ասեմ կամ զո՞ր գանգըտիմ...
= էջմ. Թ. 725, թղ. 82բ—83բ:

Բնագիրը տեղ տեղ աղաւաղուած է այս երկրորդին մէջ. բայց եւ այնպէս պահած է թարմ եւ գողարիկ նկարագիրը. յօրինուած հայրեններու չափով՝ 2—5—3—5 հատածներով: Ստորեւ ամբողջութեամբ կը հրատարակեմ այս քառեակները, զոր օրինակած էի 1926ին էջմիածին:

Վարդան Բարձրբերդցի ժամանակակից է Ֆրիկի, նաեւ Յովհաննէս Երզնկացւոյ եւ Խաչատուր Կեչառուեցւոյ:

Առաջին երգը, որ Գանձի նկարագիրը կ՚երեւցնէ, կը յիշեցնէ ինձ երկու գանձ, որոնք վերագրուած են «Վարդան վարդապետի» եւ կը գտնուին ԺԳ. դարու առաջին կէսին գրուած հին Գանձարաններու մէջ. ասոնք են.

Գանձ Յարութեան Քրիստոսի Աստուծոյ մերոյ եւ ամենայն Կիւրակէի. Վարդան վարդապետի ասացեալ:

Վեհագոյն խորհուրդ տիրական, զոր կարգեցեր գալստեամբ քո յաշխարհս...:
Տուները կը կապեն «Վարդանայ»:

= Երեւան, 372, թղ. 270ա—272ա (1379)։ Երուսաղէմ, 231, թղ. 86բ (ԺԴ.)։ 338, 73ա (1387)։ Անկիւրա 107 (1391)։

Փառօք Յարութեան Քրիստոսի Աստուծոյ
 մերոյ. Նոր Կիւրակէի։
Աճաւոր մեծութիւն, անճառ էութիւն,
 բարձրեալ անքնին,
Անանջատ միութեամբ զուգեալ սուրբ Եր-
 րորդութիւն...

Տուները կը կապեն. «Ասացած Վար-դանա»։

= Երեւան 372, 251բ—256բ։ Էջմ. 2061, 58ա (1310)։ Տիւբինգէն 61, 49ա (1290?)։ Պարիս, 79, 96ա (ԺԴ.) 80, 188ա (1380)։ Վենետիկ, 254, 12ա։ Երուսաղէմ 231, 91բ։ Նիկոսիա 48, 106ա։

Պարիսի Թ. 80 խորագրին մէջ կ՚ընծայէ «ասացեալ եռամեծի եւ սուրբ վարդապե-տին Վարդանայ». միւսները պարզապէս «Վարդան վարդապետի»։ Զեմ համար-ձակիր այս Վարդանի մէջ «Բարձրբերդցին» տեսնել։

Ցովհանէս եպ. Շահխաթունեանց կը գրէ [19], թէ Էջմիածնի Մատենադարանին մէջ «ղտաւ... չարակնոց մի կարի հարուստ եւ ճոխ, յորում ընդ այլ անծանօթ շարական

[19] Ստորագրութիւն կաթողիկէ Էջմիածնի եւ հինգ գաւառացն Արարատայ, Էջմիածին 1842, հատոր Ա., էջ 48։

երգոց, գրեալ կայր եւ շարական մի ի վերայ սուրբ Գեղարդայ՝ յօրինեալ ի մեծէն Վարդանայ Բարձրբերդցւոյ»[20]»: Այդ նորագիւտ շարականն էր Մանկունքն ի Ս. Գեղարդ, որ կը սկսէր. «Իսկ դու պարծանքդ պարծանաց, գեղարդդ սուրբ եւ գերապանց»: Ակնարկուած ձեռագիրն է էջմիածնի Թ. 1588 Ճաշակնոցը, որուն կից Սարգիս երէց կազմած է ցանկ մը թէ շարականները ո՛ր հեղինակներէ յօրինուած են: Սարգիս երէց, ըստ Ամատունի վարդապետին[21] ԺԳ. դարու հեղինակ է, այս ինքն նոյն դարու վերջերը ծաղկած: Վերոյիշեալ Մանկունքին համար կը գրէ Սարգիս երէց, թէ «սուրբ Վարդապետին Վարդանայ է ասացեալ. ուստի առանց «Բարձրբերդցւոյ» յաւելուածի: Կը համարիմ թէ Ճահխաթունեանց հոս Ջամչեանի ազդեցութեան տակ նոյնացուցած է Վարդանը համանուն Բարձրբերդցւոյ հետ, եւ իմացած է Արեւելցին:

Նոյն Սարգիս երէց իր ցուցակին մէջ «Վարդապետին Վարդանայ ասացեալ» նշանակած է նաեւ յաջորդ պարականոն շարականներս, զորոնք խնամով հաւաքած եւ

[20] Հ. Ալիշան, որ շարականս կ՚արտագրէ Ճահխաթունեանէն, կ՚արտայայտուի այսպէս. «Մեծին Վարդանայ վարդապետի մակագրի եւ շարական գովասանական ի Գեղարդն», Այրարատ, 348, ծան. 1:

[21] Սահակ Վ. Ամատունի, Հին եւ Նոր Պարականոն կամ անվաւեր շարականներ, Վաղարշապատ 1911, էջ 130:

հրատարակած է Սահակ Վարդապետ Ամատունի։

1․ Մեծացուցէ․ Հրաշագեղ ծաղիկ յուսոյ Մարիամ․․․։ — Տիրուհի եւ մայր Աստուծոյ բանին․․․։ — Ուրախական զարդ խորանի․․․։ — Աննիւթական սրոբէ․․․։ — Արփիափայլ լուսածագ արեւ․․․։ — Ուրախացիր, Աստուածածին Մարիամ․․։ — Աստուածածին տաճար փառաց․․․։ — Տունք՝ ՀԵԹՈՒՄ ՏԻՐԱՑՈ (էջ 15—17)։

2․ Օրհնութիւն․ Հզօր արքային զօրեղ գինաւոր․․․ (էջ 57)։

3․ Մեծացուցէք Աւագ շաբաթու։ Եղեմ բանաւոր․․․։ — Երկինք յերկրի Մարիամ․․․։ — Լոյս արարչական․․․։ — Ով Մայր լուսոյ Աստուածածին․․․։ — Ով տիրամայր տրտմութեամբ տխրեալ․․․։ — Աստուածածին ի շնորհէն․․․ (էջ 96—99)։

4․ Մեծացուցէք Համբարձման․ Ուրախացիր Մարիամ․․․։ — Հարսն երկնից․․․ (էջ 104)։

5․ Շարական Ս․ Սանդխտոյ․ Անդրանիկ կամացն Հօր կամակատար․․․ (էջ 116—117)։

6․ Վարագայ խաչին Օրհնութիւն․ Թագաւորդ մեր Քրիստոս․․․ (131—132)։

7․ Սրբոց Թարգմանչացն՝ ձաշու․ Ցնծացէք այսօր ազգք եւ ազինք․․․ (էջ 139)։

*Թէ այս Վարդան վարդապետ նոյն չէ Արեւելցւոյ կամ աւելի հնագոյն Հաղբատացի Վարդաններու հետ, բացայայտ կը տեսնուի «Հզօր արքային զօրեղ զինակիր» Ս. Սարգսի նուիրուած շարականէն, ինչպէս գայս նկատի առած է արդէն Ամատունի (57—58), ուր երգած է հեղինակը ի մէջ այլոց տողերս.*

*Ցերեւեալս ի Պարս խորին Խորասան...*
*Եւ մօտ ի քաղաքն որ կոչի Տամղան,*
*Ի դաշտ ծաղկածին զոր յիշէ Վարդան,*
*Ի յամուռն անառ Քրդաքաւ անուան,*
*Անդ ուր զՄարտիրոս արկին ի կապան:*

*Վարդանայ յիշած տեղիքն է Վարդան Արեւելցւոյ Պատմութեան հետեւեալ պարբերութիւնը. «լուեալ Եղտկուզն... դառնայ ի դաշտն Գաղայ. եւ առաց այրել զԽաչն հռչակաւոր»: «Իսկ Մոլար Նոյին... (էառ) զԳաղ անուանի բերդ... ուր կայ հռչակաւոր եւ սուրբ ուխտն Խաչ եւ եկեղեցի յանուն սրբոյն Սարգսի զօրավարին, օրհնեալ ի սրբոյն Մեսրովբայ վարդապետէն եւ Թարգմանչէն Հայոց, որ կայ ի գլուխս Գաղայ, եւ հայի ի դաշտն լայնանիստ եւ երկայնատարած» (էջ 127, 144—145. հմմտ. նաեւ 123): Եթէ շարականիս հեղինակ Վարդան Վարդապետ կարդացած է 1268ին աւարտած Հաւաքումն պատմութեան Վարդանայ Արեւելցւոյ, բնականաբար նա ապրած պիտի ըլլայ այս թուականէն վերջը: Այս պարա-*

դային այս Վարդան կարող է նոյնանալ Բարձրբերդցւոյ հետ, որ կը ծաղկէր 1280—1320ին մօտաւորապէս: Տեսանք վերագոյն, թէ Վարդան Բարձրբերդցի զԳրիգոր Անաւարզեցի երկրորդ վկայասէր կը կոչէր. եւ Ամատունի Աւագ չարաթու վերոյիշեալ Մեծացուսցէներու մէջ նմանութիւն կը գտնէր Անաւարզեցւոյ ոճին հետ. որ զարմանալի չէ: Եւ եթէ այս չարականներու յօրինման ժամանակը ԺԳ. դարու վերջին քառորդին կ'իյնայ, վասն զի Սարգիս երէց այս շրջանին ծաղկած է ըստ Ամատունւոյ (էջ Դ.), կրնանք յանձին «Հեթում տիրացուի» Հեթում Բ. Թագաւորը նկատել, որ այն ժամանակ դեռ թագաժառանգ ըլլալու էր: Շարականներու հեղինակ Վարդանը Ամատունի միշտ «Բարձրբերդցի» անուանած է. կը թուի ինձ թէ ճիշդ է անոր այս անուանումը, այն իմաստով որ յամենայն դէպս Արեւելցին չէ, այլ 1270—1300 ծաղկող ուրիշ Վարդան մը: Գարեգին արքեպ. (այժմ Վեհափառ Կաթողիկոս) Յովսէփեան անդրադառնալով այս կէտին գրած է. «ԺԳ. դարում արեւելեան Հայաստանում ծաղկել է սկսում հոգեւոր երգերի, տաղերի եւ գանձերի գրականութիւնը, Վարդան (ոչ Բարձրբերդցի, ինչպէս կարծում է Ամատունին), Մխիթար Այրիվանեցի, Խաչատուր Կեչառեցի, Մկրտիչ, Յովհաննէս Երզնկացի, Կիրակոս Երզնկացի են, ձգում են այդ գանձանակի

մէջ իրենց լումաները[22]»: Որքան ինձ ծանօթ է նոր կամ պարականոն շարականները ԺԳ. դարու վերջին քառորդին եւ ԺԴ. դարու առաջին տասնեակին շարադրուած են Հռոմկլայ, Կիլիկիա եւ Երզնկա: Հռոմկլայ ապրած է իր կեանքին վերջին մասը Յովհ. Գառնեցի, Երզնկա՝ Յովհ. եւ Կիրակոս, Կիլիկիա՝ Բարսեղ արքայեղբայր, Գրիգոր Անաւարզեցի, Յակոբ Մեծքարեցի եւն. ԺԳ. դարու վերջին քառորդին արեւելեան Հայաստան երգեցող Վարդան ծանօթ չէ. իսկ Վարդան Բարձրբերդցի, ճիշդ այդ շրջանին. ծաղկած է թէ իբրեւ գրիչ, թէ իբրեւ տաղասաց եւ թէ հոգեւոր երգ գրող. չկայ պատճառ իրեն չվերագրելու նաեւ Վարդանայ անունով այդ շրջանին յօրինուած շարականները. գոնէ առ այժմ:

## ՎԱՐԴԱՆ ՎԱՐԴԱՊԵՏԻ ԲԱՐՁՐԲԵՐԴՑԻՈՅ ԿԻԼԻԿԵՑԻՈՅ ԲԱՆ

*Խոցուած շատ ունիմ սըրտիս,*
*զոր ասեմ կամ զո՞ր գանգըտիմ.*
*Ի մանկութենէ, եղբարք,*
*հետ ուսման բանից կու դատիմ.*

## ՁԵՌԱԳՐԻՆ ԸՆԹԵՐՑՈՒԱԾՆԵՐԸ

ԽՈՐԱԳԻՐՆ՝ Վ. *վարդապետի բան բարձրաբերդեցւոյ Կիլիկեցւոյ:*
1 *գանըտիմ:* — 2 *եղբայրք:* — 3 *կրել...*

---

22 *Խաղբակեանք կամ Պռոշեանք Հայոց պատմութեան մէջ, Երուսաղէմ*, 1944, *էջ* 99:

Ի սիրոյ տագնապ կրեալ՝
ծարաւի հոգւով տոչորիմ.
Միշտ ակն ունելով հասման՝
յիմաստից դուռըն դեղերիմ:

Գերիս յանհմուտ անձանց՝
անաչառ հարուածս ընդունիմ.
Որ իմ խոցուս չեն գիտակ՝
զինչ պիտի նա զայն կու խօսին:
Եղբարք խոցեցայ հոգւով
եւ չհասայ զինչ հասրաթ ունիմ.
Քանզի հեռացեալ յաստեաց՝
տեսութեանցս այլ իմն երեւիմ:

Արդ երանելի սա ի,
որ երեք շընորհք յինքն ունի.
Մին որ գիտութիւն խելացն
ընդ բարին ընտրել հընարի.
Մին որ քաջութեամբ կամաց
սուրբ պահէ զինքն 'ւ առաքինի.
Մին որ ցանկութիւն սրտին
երկնային փառացն փափաքի:

Ձինչ որ հարաւոյ հողմըն
'ւ հիւսուսոյն ընդ յիրար բախի.
Ցերկուց տարրեղէն օդըն
յըղանայ 'ւ անձրեւ ծընանի:

հոգով: — 4 դէղերիմ: — 5 այլ իմ:
7 խոցեցա հոգով... չհասա: — 8 յաստեց: —
9 արդ երանելի սա ի իմացիր՝ այնըմ երանի սահմ...:
Երրորդ, ճախճարար անշուշտ գ պատուով: — 10 բէ
իոս եւ բէ 11—12 ա պատուով փոխ. մէկի: —
11 ու փոխ. 'ւ: — 13 եւ բերեւս յաւագոյն 'ւ: —
14 յղանա ո՞ւ: — 17 դ (պատուով) տարերքն առ մդ
(պատուով) հշտի (պատուով): — 19 հոգոյն: —

*Հանց երբ Աստուծոյ սէրըն,*
*որ ի յերկեղ սըրտին խառնի.*
*Նա ցօղ իմաստից բըխէ*
*ի մըտաց եւ հանճար բարի։*

*Յորժամ որ գարնան նըման*
*չորս տարերքն առ մարդըն հաշտի,*
*Եւ յօրստմանէ հոգմոց*
*զինչ երկիր ի գործ զարթըչի։*
*Նա իւր անդաստան հոգւոյն*
*գիտութեամբըն պըտղաբերի.*
*Երբ զամէն բարեաց համբաւ*
*'ւ աւետեաց որ ի նմա հընչի։*

*Զինչ հողն ի ծաղկանց ծընունդ*
*զանազան գունօք զարդարի.*
*Յորժամ յեղանակ տարւոյն*
*չորս ի մի ժամ հաստակլի։*
*Հանց բանն անհաշիւ բըխէ*
*ի մըտացըն հողեղինի,*
*Երբ արիութիւնն ու սէրն*
*ու խոկումն միաբան առ իրար լինի։*

*Սուրաթ ըէսիֆաթ ասի*
*զինչ անշունչ տիպար կենդանւոյն.*
*Որ խօսք պայմանաւ ասէ*
*'ւ անթարթիպ ի դէմը մարդոյն.*
*Որ շըքլ ու շիւա ցուցնէ*
*ու խաբէ ըղտեսն աչերոյն.*
*Ա՞յ դէմին զամազ, ասեն*
*տալ խօսից վըկայ ի գործոյն։*

20 *զամէն*... *ո°ւ*։ — 22 *տարոյն*։ — 24 *միաբանի*։ — 25 *անշունչտ ի փար կենդանոյն*։ — 26 *ու* փոխ. *'ւ*... *ի դէմ*։ — 27 *ըտեսն*։ — 28 *այ դէ մի՛ն. զամալ.* կարդացի *ա՛յ դէմին զամ(մ)ազ*, ո՛ր տառապեալ բանաստեղծ է հատուածաց ազգ։

Մեծ է կրշրռով խօսիլըն
մէկին ի մէջ բաղըմաց,
Որ խելօքըն լոյս ծաղեալ
փարատէ գխաւար ի մըտաց,
Եւ իմաստութեան խելքըն
ցուցանէ բանիւ լըսօղաց.
Ապա ով ըղսէրն ունի,
որ լըումն է պատուիրանաց:

Ով ոք որ ի զուր հողոց
՚ւ յանցաւոր իրաց կայ ի բաց,
Զինչ ոսկի խալաս է նա
որ զատի ի չորս տարերաց.
Եւ այլ թէ հոգւով լըսէ
ու խօսի իր մի ի խելաց,
Ի վեր քան զերկիր է նա
եւ նըման է լուսեղինաց:

Ով ոք մ՚որ սիրոյն ըղըոցն
ի սրտին ի վառման ունի,
Հառչէ նա ու ջուր ուզէ,
յայն ի պահն յինչ ակնէ լինի:
Այս բանս ի յամէն մարդէ,
հետ ամէն սըրտից կու կըշռի,
Զի ընդ հոգեւոր սիրոյն
չատ մարմնոյ սէր կու խառընի:

Ես չատ եմ յարմացք մնացել,
թէ խելօքն ինչ ցեղ կու խարի.
Իրք մի որ ջօհար ասի
եւ աղատ յայլ իրք չխառնի,
Ամ հանց գիտացէք ըղնա,
որ ամէն մարդոյ չհասնի.
Բայց թէ որ յըստակ մըտօք
ի Քրիստոս ուղիղ ղաւանի:

34 ով որ չունի ոք... հողոց... կա: — 36 խէ ու խօսի էլայ: — 38 ով ոք մոր: — 39 հառաչէ... յան ի պահն: — 40 ամեն. չունի կու: — 44 գիտաք:

## ՕՏԱՐ ԲԱՌԵՐ

*Անթարթիպ.* ա. թէրթիպ, *կարգ, ուստի «անկարգ»:*
*Բէսիֆաթ.* պ. ա. բէ + սիֆաթ, *ան–որակելի, աննկարագիր:*
*Խալաս.* ա. խասս, խալիս, *զուտ, անխառն:*
*Հասրաթ.* ա. *անձուկ, կարօտութիւն:*
*Ղամազ.* ա. ղամմազ, *քսու, բանսարկու, մատնիչ:*
*Ղէմին.* պ. ղամին, ղաման. *թախծեալ, տառապեալ:*
*Շէքլ.* ա. *ձեւ, կերպարանք:*
*Շիւա.* պ. *ճարտարախօսութիւն:*
*Ջօհար.* պ. *գոհար:*
*Սուրաթ.* ա. *երես:*

Գ.

# ԹՈՐՈՍ ՄՇԵՑԻ
## (1458)

Միջնադարեան տաղասաց մըն է Թորոս Մշեցի: Իր տաղերը հրատարակեց վերջերս Տիար Յ. Քիւրտեան[1]: Կ'ուզեմ միւսանգամ խօսք ընել անոր մասին, վասն զի համամիտ չեմ այն եզրակացութեան, որուն յանգած է Յ. Քիւրտեան, յատկապէս տաղասացին անձի եւ ժամանակի մասին:

Յ. Քիւրտեան լուսաբանելու համար Թորոս Մշեցւոյ կեանքի գծերը, նկատի առած է Թորոս Տարօնեցի գրիչ–նկարիչը, ծաղկած ԺԴ. դարու առաջին կէսին. այս նպատակով համադրած է այն ամէն յիշատակարաններն եւ յիշատակագրութիւնները, որոնք կը հային Թորոս Տարօնեցւոյ: Այս ձեռագիր աղբիւրները ըստ մեծի մասին աչքի առաջ ունեցած էր նաեւ Գարեգին Արքեպ. Յովսէփեան, առթիւ իր ուսումնասիրութեանց, նուիրուած Թորոս Տարօնեցւոյ[2] եւ Գլաձորի Դպրոցին[3]:

---

[1] Յ. Քիւրտեան, Թորոս Տարօնեցի, կեանքն եւ իր Տաղերը. Նիւ Եորք, 1943, 8°, էջ 47, արտատպուած Տարօնի Արծիւ ամսաթերթէն, 1943, Թ. 21—22:

[2] Անահիտ, ԺԲ (1911), 97—115:

*Բայց այդ Ցիշատակարանները, ինչպէս ինձ կը թուի, ոչ մէկ Տարօնեցի Թորոս գրիչ–նկարչի կը վերաբերին եւ ոչ ալ որ եւ է կապ ունին տաղասաց Մշեցի (Տարօնեցի) Թորոսին հետ:*

*Ես կը զանազանեմ երեք համանուն, համաքաղաքացի եւ համարուեստ Տարօնեցիներ, երեքն ալ ժամանակակից:*

1. *Թորոս Տարօնեցի գրիչ ի Դրազարկ. սա իր անձին մասին ամփոփ տեղեկութիւն կը հաղորդէ 1290ին Դրազարկ, յառաջնորդութեան տէր Թորոս Հոռմկլայեցւոյ գրած Աւետարանին մէջ. յիշելով միշտ, կ՚ըսէ «զպատմութիւնս ծերունի հօր իմոյ զհայրենի զաւառէն Տատախ կոչեցելոյ եւ զՏարօնոյ... ի վաղուց հետէ ցանկայի տեսանել զսուրբ ուխտն եւ զհայրենի զաւառն իմ. եւ մինչեւ ցայս վայր ըղձայի՝ աչօք ոչ տեսի այլ մտօք յամենայն ժամ... եւ ես ինքնին ձեռօք իմովք գրեցի զցանկալի Աւետարանս եւ յարդար ընչից իմոց ետու զսա (նկարազարդել) ոսկեծաղկօք, ոսկի գլխագրովք, համարաբերաւօք եւ չորեսին խորանօք եւ բազմերանգ գունով. կազմօք եւ արծաթի կոճակօք յարմարեցի ըստ իմ փանաքի եւ թարմատար կարի եւ ետու զսա ընծայ Ս. Յովհաննու Կարապետի որ է ի գաւառն Տարօնոյ» (Գեղամ Տէր–Կարապետեան, Ձե–*

---

[3] *Յաղքակեանք կամ Պռօշեանք Հայոց Պատմութեան մէջ. Հատոր Բ. Երուսաղէմ* 1944, *էջ* 220—239 *եւ Հատոր Գ. Նիւ Եորք, էջ* 166—176:

առաջնորդ Տարօնոյ)։ Այս Թորոսէն է առանց տարակուսի Վենետիկի Մխիթարեանց Թ. 5 Աստուածաշունչը, որուն գրիչն է Թորոս քահանայ աշակերտ Թորոսի (Հռոմկլայեցւոյ), ուստի գրուած 1290էն ոչ շատ յառաջ։ Ինքն է հաւանօրէն նաեւ Էջմ. Թ. 2588ի «սակաւ նորոգողն» 1294ին, զոր այս Աբրահամ Տարօնի եպիսկոպոսը տարած է Մուշի Ս. Ղազար վանքը։ Սա ըլլայ թերեւս նաեւ այն Թորոս գրիչը, որ գրած է Նոր Ջուղայի Ամենափրկիչ վանքին Թ. 202 Աւետարանը ի Բարձրբերդ։

2. Թորոս որդի Սարգսի եւ Մարիամի, գրիչ եւ նկարիչ, որ գրած է Վենետիկի Մխիթարեանց Թ. 193 Նոր Կտակարանը 1284ին ի Մուշ. ծաղկած է 1328ին Բաղէշի Աստուածաշունչը. գրած է 1330ին Բաղէշի Աւետարանը, 1331ին ի Թոնդրակս Ապահունեաց Երուսաղէմի Թ. 95 Ճաշոցը, 1332ին Վենետիկի Մխիթարեանց Թ. 12 Աստուածաշունչը եւ Հալէպի Թ. 110 Աւետարանը, որուն գրչութեան տարին եւ տեղը անծանօթ կը մնայ։

3. Թորոս Տարօնեցի, գրիչ եւ նկարիչ ի Գլաձոր, որ տակաւին «սարկաւագ» 1311ին ծաղկած է Թաւրիզի Բերդաթաղի Ս. Աստուածածին եկեղեցւոյ Թ. 1 Աւետարանը (Աճառեան, Ցուցակ, էջ 70—72), որուն գրիչն էր Տէր, տեղը անծանօթ։ Ի Գլաձոր կը յիշուի 1314ին Մխիթար Երզնկացիէն (Վենետիկ, Մխիթ. Թ. 803), 1318ին Սար–

գիս գրչէն (անդ, Թ. 265)․ կը մասնակցի 1317ին էջմ․ 181 Աստուածաշունչի գրչութեան եւ ծաղկումի, 1318ին կը նկարազարդէ էջմ․ 182 Աստուածաշունչը, 1321ին Բրիտ․ Թանգարանի Թ․ 14 Աւետարանը, 1323ին Բաղէշի Աւետարանը, 1325ին՝ էջմ․ 560 եւ 1346ին՝ էջմ․ 2187, ամէնն ալ գրուած եւ ծաղկուած ի Գլաձոր։

Այս գրիչ–նկարիչներէ որ եւ է գրական աշխատութիւն չէ հասած մեզի։

Ասոնց հետ համանուն է եւ համաքաղաքացի տաղասաց Թորոս Մշեցի, բայց ոչ ժամանակակից։ Տաղասացս ապրած է ժամանակ մը, երբ Երզնկա եւ Տարօն կը գտնուէր Օսմանեան տիրապետութեան տակ, երբ թուրքերէն լեզուին ծանօթ եւ ընտել եղած էր հայ ժողովուրդը։ ԺԵ․ դարուն կ'իյնայ անոր ծնունդը։ Ժամանակը ճշդելու համար մեզի կռուան կ'ընծայէ տաղասացս իր «Ի մէջ մեղաց եմք մոլորեր» սկզբնաւորութեամբ տաղին մէջ, ուր կը նկարագրէ ականատեսի աչքով Երզնկայի երկրաշարժը։ Յառաջ կը բերեմ այդ տաղէն հետեւեալ տողերը (էջ 22—23)․

Ի յանդընդոց դերկիր շարժեց,
շատ շինութիւն արար աւեր․
Հանց մեծամեծ ցասումն եցոյց,
դեռ ի մեղաց չենք վախենար։
Այն Եզընկան ամուր քաղաք
խսկլի չունէր առնելու ճար,

Զբոլոր պարիսպն ի շուրջ ածեց,
ըզգլուխն տարաւ ի հիմն ի վար:
Հանցեղ քակեց եւ աւերեց,
երեւս անցուց զքաղաքն ի վար.
Անասելի մարդ կոտորեց,
յորս էր թըւով տասըն հազար...
Շատ մի սպանեց մեծ խոճանին...
կըտրճվորաք մըտօք ճարտար.
Շատ մի սպանեց կին գեղեցիկ,
ճոհար ոսկուն էն պարապար.
Զամէնն յիւր տունըն խափանեց...
իսկի չեղաւ փախչելու ճար.
Խեղճ էն անմեղ կաթընակերքն,
որ կու հեծեն դառն ու դիժար...
Պարոնըն զիւր քաղաքն ձըգեց,
մինչ ի Բաբերթ գընաց չափառ:

Այս շարժը, կը գրէ Ց. Քիւրտեան, «Երզնկայի բազմաթիւ շարժերէն միայն 1287ին կը համապատասխանէ» (էջ 24): Այդ շարժին համար Տարեգիրք կը նշանակեն միայն. «Թվ. ՉԼԶ (1287) շարժ եղեւ Եզընկան խիստ ահագին ի մայիս ամսոյն եւ բազում մարդիկ մեռան. որ զթիւն Աստուած միայն գիտէ» (Զմմառ, Թ. 328, թղ. 46ա): Բայց Թորոս Մշեցի գիտէ իր օրով տեղի ունեցած Երկրաշարժէն մեռնողներու թիւը 10000. կը շեշտէ միանգամայն, թէ այդ շարժը «զբոլոր պարիսպն ի շուրջ ածեց, զգլուխն տարաւ ի հիմն ի վար»: Երզնկայի երկրաշարժներու ժամանակագրութիւնը

Նման շարժ մը կը յիշէ 1374ին. «Թվ. ՊԻԳ. դեկտեմբերի Ը. օրն ուրբաթ. շարժ եղեւ Եզընկան. եկաց ժամ մի. կարծէին թէ այլ ոչ շարժի. կրկին սաստիկ շարժ եղեւ. պարըսպէն շատ տեղ փլաւ» (անդ)։ Մարդկային կորուստի մասին խօսք չ՚ըլլար։ Աւելի ահաւոր եղած է 1458ի շարժը. «Ջէ. շարժ եղեւ յԵրզնկան. ԼԲԹ (կարդա՛ ԺԲԹ) մարդ մեռաւ» (անդ)։ Այս շարժի մասին ժամանակակից մը, Սարգիս գրիչ, իբրեւ ականատես կը գրէ Երուսաղէմի Թ. 1490 ձեռագրին Յիշատակարանին մէջ.

«Եւ դարձեալ ի սոյն աւուրս եղեւ ահագին շարժ յԵզնկան եւ կործանեաց զքաղաքն եւ զբոլոր պարիսպն յատակէն տապալեց. եւ մեռան ի նմին ժամու ի շարժէն անձինք ԲԺ հազար, հաւատացեալ եւ անհաւատ, այր եւ կին, ծեր եւ տղայ եւ սըրբասնեալ քահանայք, զոր ոչ կարեմք զաղէտս եւ զկսկիծ եւ զկոծ եւ զհառաչ նոցա թուել, զի ականատես եղաք ահագին պատուհասին, զոր արարիչն Աստուած մի ցուցցէ ծառայից իւրոց այնպիսի փորձութիւն եւ վիշտ։ Եւ այս ամենայն եկն ի վերայ մեր վասն մեղաց մերոց ըստ մարգարէին. եւ յայսմ ամի էր Թվական Ջ եւ Զ, ապրիլ ամսոյ ԻԳ, յաւուր շաբաթու կրկնազատկին, ի չորրորդ ժամու ցերեկին»։ Ուրիշ յիշատակագիր մը, Ստեփանոս գրիչ, յԱւագ վանս 1464ին անդրադառնալով այս երկրաշարժին կը գրէ. «Հինգ ամաւ (յառաջ) եկաւ ահա-

դին չարժ եւ աւերեաց զբոլոր մայրաքաղաքն զԵզընկայ. եւ ԲԺԲ ընդ այր եւ ընդ կին ի ներքոյ հողին մնացին» (Էջմ. Թ. 1309)։ Այս մասին արձանագրած է նաեւ Գրիգոր Դարանաղցի իր ժամանակագրութեան մէջ. «Ջէ. փլաւ Երզնկին պարիսպն ի շարժէն» (էջ 5)։

Այս շարժին յատկանշականն է յանկարծակաճը, 12000 մարդկաճ կորուստը եւ պարիսպին փլուզումը, կէտեր որոնք ճշդիւ կը համապատասխանեն Թորոս Մշեցւոյ նկարագրութեան։

Այսպէս ճշդելով «Ի մէջ մեղաց ենք մոլորեր» տաղին գրութեան ժամանակը 1458, կ'ունենանք Թորոս Մշեցւոյ կենսագրութեան համար որոշ թուական մը, որմէ յառաջ ծնած եւ յետոյ վախճանած է։ Այս շրջանէն ծանօթ է Թորոս վարդապետ մը, որ աշակերտած է Յովհաննէս Համշենցւոյ († 1497) յԱւագ վանս եւ որ յետոյ գաւազանի իշխանութիւն տուած է Տարօնեցի Գրիգորի, որ աշակերտած էր Համշենցւոյ առոր կեանքի վերջին տարիներուն. Առաքել Դաւրիժեցի կը գրէ. «Յովհաննէս Համշենցին. նորին աշակերտ՝ Թորոս. նորին աշակերտ՝ Գրիգոր Տարօնեցի» (440—442), զժբախտաբար չէ նշանակուած Թորոսի հայրենիքը։ Այս շրջանէն ինձի ծանօթ է Թորոս աբեղայ գրիչ մը յԱմասիա (Էջմ. 370, Թղ. 3ա) եւ համանուն աբեղայ մ'ալ 1465ին յԵրուսաղէմ (Նօտարք 221), երկու–

քին ալ հայրենիքը անյիշատակ։ Եթէ Թորոս վարդապետ աշակերտած է Յովհ. Համշենցւոյ Աւագ կամ Կայիփոսի վանքերու մէջ, կարող էր ի մերձուստ ականատես եղած ըլլալ Երզնկայի շարժին։

Թորոս իր տաղերու մէջ կոչած է ինք զինքը պարզապէս «Գիրի Թորոս», իսկ տաղերու վերնագիրներու մէջ «Թորոս Մշեցի», անգամ մը նաեւ «Տարօնեցի»։ Չկայ որ եւ է ակնարկութիւն իր վիճակի մասին, աբեղա՞յ էր, վարդապե՞տ թէ երէց։ Տաղերու կրօնաշունչ տողերը ենթադրել կու տան զինքը եկեղեցական։

Իր ստեղծագործութիւնները մերկ են աւիւնէ, շարադրութիւնը անոճ, լեզուն՝ ռամկախառն, մտքերը՝ անգոյն։ Կ՚երեւայ, թէ կարդացած է իմաստասիրական գրքեր, աշակերտած է ժամանակակից մէկ վարդապետի. բայց ձեռք չէ կրցած բերել մեծ իմաստութիւն։

Իր տաղերու թիւն է եօթը։ Այդ տաղերէն հինգը հանած է Յ. Քիւրտեան իր սեպհական երկու Տաղարաններէ, գրուած 1661 եւ 1678—1681 տարիներուն։ Կան տաղեր, որոնք կը տեսնուին 1625ին գրուած Տաղարանի մը մէջ, սեպհականութիւնն եղած † Շաւարշ Վ. Սահակեանի (Եւդոկիա)։

Այս տեղ պիտի ներկայացնեմ Թորոս Մշեցւոյ տաղերու թիւը, առընթեր նշանա-

կելով այն տեղիքները, ուր կը գտնուին անոնք եւ կամ հրատարակուած են *:

1․ Երգ վասն աղաչութեան ի Թորոսէ:

Աղտեղեցայ խաւար մեղօք,
  քան զկին պոռնիկըն Ռախաբու[4]․
Մոռացայ զուխտն աստուածեղէն
  վասըն մեղաց 'ւ անչափ չարու…

Վ․ Գիրի Թորոս մըտօք յիմար,
  քեզ դատաստան կայ 'ւ օր մահու․
Ի յայնմ ահեղ հրապարակին
  ի՞նչ չատ համար ունիս տալու:

Խորագիրը W 988 ունի «Ասացեալ ի Թորոսէ Մշեցւոյ Աղաչութեան․ այլոց քարոզեմ եւ ես ոչ առնեմ»: E «ի Թորոս Մշեցի տաղ…:

=Ձեռագիրք K 1, 50ա—52բ: E․ 395, 33ա: W․ 988, 176բ—177բ (վերջին 26 տողերը կը պակսին, թուղթ ինկած ըլլալով:

Հրտ․ Քիւրտեան, 24—27:

2․ Տաղ Վարդի եւ Պլպուլի[6]

---

* Կը կիրակեմ հետեւեալ համառօտագրերը․
E=Երեւան, Պետ․ Թանգարան:
H=Հայերգ:
K 1 եւ 2=Քիւրտեան, 1661ին եւ 1678ին գրուած տաղարանները:
W=Վիեննայի Մխիթ․ Մատենադարան:
[4] KW արախու E ուրախու․ պէտք է ուղղել Ռախաբու:
[5] W չունի խորագիր:

*Երբ քափուր վարդըն փըթըթի,*
*Մըտիկ արէք այն պըլպուլին·*
*Զտերեւն արեր իւրըն վըրան,*
*զօրըն կենայ ի վըրայ վարդին*[6]...
*վ· Թորոս զովէր զվարդն ու զպըլպուլն,*
*որ ի սիրուն զամ կու քաշին·*
*Զինչ հողածին կայր արարածս,*
*որ չէր դիպեր այն պալային*[7]:

=*Ձեռագիրք՝ Երուսաղէմ Թ*· 3052: *Բեռլին* 84, 127*բ*—130*ա* (*ԺԷ*): W· 398, 22*բ*—24*բ*:

*Հրտ· Քիւրտեան*, 42—44: *Հայերգ* 116—118:

3· *Տաղ ի վերայ հողւոյ ասացեալ:*

*Ի մէջ մեղաց եմք մոլորեր,*
*յատընվորիս կու գործեմք չար·*
*Այլվի զԱստուած բարկացուցաք,*
*որ սըրտին եկեր դիժար...*
*վ· Զայնչափ չարիքդ որ կու նայիս*
*գիրի Թորոս մըտօքդ յիմար·*
*Գընա լալով խոստովանեց,*
*լեզուով արէ զմեղքդ ի խրատ:*

=*Ձեռագիրք*· K· 2· 71*բ*—72*ա*· *Մոռոդեան, էջ* 212—215:

*Հրտ· Քիւրտեան*, 22—23:

---

[6] K *յարտին*: H *վարդին վըրան*:
[7] W վերջին տողն ունի *մեղքըն թողած է Թորոսին եւ լըսողացդ ամենին*:

4· Պատմութիւն վասն ԺԲ Հողմից· զոր ասեմք ի սակաւ մտացս զոր լուաք փոքր ի չափէ աստուածային գրոցն, որ եղանեն ի չորրորդ հրեշտակաց· վասն երգողացն ասացաւ ի Թորոսէ:

Ի յետ ստեղծմանն արարածոց,
որ գոյացոյց զայս ամենայն,
Օդոց ետուր իշխանութիւն
հողմ ու քամու արար սահման...

Վ· Թորոս պատմէ զաղնիւ հողմունքդ,
որ են Թըւով երկոտասան...
ով որ քամուն յիշոցք տայ,
նա զ(երդ) կայէն եղբայրսպան:

Խորագիրն K· ունի «Պատմութիւն ԺԲ հողմոց, ասացեալ ի Թորոսէ:

=Ձեռագիրք՝ K· 1· 52ա—54ա: E· 395, 34ա: Էջմ· 1636, 145ա (ԺԸ):

Հրտ· Քիւրտեան, 35—39:

5· Ոտանաւոր վասն դատաստանին աւուրն հատուցման, չարեացն զչար եւ բարեգործացն՝ զբարիքն, որ վկայէ սուրբ Աւետարանն· արարեալ ի Թորոսէ[8]:

Յորժամ տարերքըն դըղըրդին,
երկինք 'ւ երկիր խոնարհանան,
Եւ կատարին կեանք եղելոց,
որ արարածքըս հիանան...

[8] Խորագիրն՝ E· ի Թորոս Մշոյ ասացեալ է:

*Վ. Թորոս յիշէ զօրն ահագին,*
*երբ ժողովին ի դատաստան,*
*Ի յայնմ ահեղ հրապարակին,*
*ո՞ւր է լեզու կամ պատասխան:*

=K 1, 41բ—48ա: E. 395, 57ա—62ա: W. 988, 178ա—182ա (սկիզբէն չորս տուն պակաս):

Հրտ. Քիւրտեան, 27—35:

6. Տաղ երկու ազգ լեզուէ ի Թորոս Մշեցւոյ ասացեալ:

*Է էէրի կօկի քարատան,*
*էէրի կօկտան քարատան,*
*Ջհողն ի ջրոյն բաժանեցեր*
*եւ ի վերայ ջուրցըն նըստար.*
*Է սան մի սան քարիմ ռահիմ,*
*էէտու կօկա սյեան պախար...*
*Վ. Գերի Թորոս մըտօք մոլար,*
*մեղօք դարձեր ես կունահքար*
*կէճա կունտուղ ղաֆիլ օլմա.*
*աչ կօզընկի հախայ եալ վար:*

Խորագիրը W. 344 ունի «Ի Թորոսէ Տարօնեցւոյ ասացեալ է»: E. Երուսաղէմ 3057 տաղ ի Թորոսէ Մըշեցոյ ասացեալ: Անտ. 125 «տաղ երկու ազգ լեզուէ»:

=Երուսաղէմ 3057: E. 395, 52ա—բ: Զմմառ, Անտ. 125, 144բ (ժէ): Ծուարչ Վ. Սահակեան 1. էջ 162—164 (1624): W. 344, 38ա: 671, 15ա (սկիզբէն մէկ տող պակաս խորագրին հետ):

Հրտ. Քիւրտեան, 45—46: Բազմավէպ 1910, էջ 281 (առաջին 10 տողերը. ընծայուած Թաթոս Թոխաթեցւոյ, հմմտ. Հանդ. Ամս. 1910, էջ 285):

7. Վասն կատարածի աւուրն զոր Ջերօնիմոս եգիտ ի Պատմութեանցն Հրէից. ԺԸ. նշան որ լինելոցն է զկնի պիղծ Նեռին:

Քեզ ծանուցից, եղբայր, լուէ,
որ լինելոց է յետ Նեռան.
Նախ քան զգալուստըն Քրիստոսի,
որ գայ փառօք ի դատաստան,
վ. Այս փոփոխումն է որ յայտնի,
երկինք 'ւ երկիր նոր կերպարան,
Որ զանցելոցըն ցուցանէ,
յայտնէ զայժմոյս եւ զապայսն:

Խորագրին մէջ K. 1 չունի «զոր Ջերօնիմոս եգիտ ի պատմութեանցն Հրէից. ունի W:

=K 1, 48ա—50ա: W. 988, 182ա—183բ (1706):

Հրտ. Քիւրտեան, 39—41:

Երկու ձեռագիրներու մէջ ալ անանուն, Wի մէջ կը յաջորդէ Թորոսի «Ցորժամ տարերքըն դղրդին» տաղին: Ճիշդ նկատած է Յ. Քիւրտեան, թէ «վստահօրէն իրն է նաեւ այս տաղը, որ ոչ միայն նոյն ոճը ունի, այլ եւ մեր այս ձեռագրին մէջ զետեղուած է Թորոսի տաղերուն մէջ» (անդ. 39):

## Դ.

## ՄԱՂԱՔԻԱ Վ. ԴԵՐՋԱՆՑԻ † 1545
### ՏԱՂԱՍԱՑ, ՁԻՆԱՐԱՐ ԵՒ ԲԱՐԵԳՈՐԾ

Դերջանի Փողձայ գիւղն եղած է Մաղաքիայի ծննդավայրը. բայց ան նախընտրած է գաւառին անունով կոչել ինքզինքը Դերջանցի: Քահանայական տան զաւակ էր. հայրը, Մկրտիչ քահանայ, ուղարկած է իր որդին Մուշ (1500), որպէս զի ուսանի Մշեցի Գրիգոր վարդապետի «համալսարանը» Գլակայ վանքին մէջ[1]: Այն տեղ էր Մարտիրոս աբեղայ, որ 1505ին օրինակած է Աւետարան մը «ի գաւառիս Տարօնոյ, ի վանս Գլակայ, ի դուռն սուրբ Կարապետին, ի համալսարանս Գրիգոր քաջ րաբունւոյն եւ յառաջնորդութեան սուրբ ուխտիս տէր Մելքիսէթ արհեպիսկոպոսին[2]»: Ինչպէս կ'երեւայ խստապահանջ էր Գրիգոր վարդապետ. Մաղաքիա իր ուսման ընթացքը աւարտելու համար հարկադրուած էր առ ոտս Վարդապետին դեգերիլ 20 տարի համբերութեամբ եւ տոկունութեամբ. իր ուսուցչին ձօնած Գովասանքին մէջ գետեղած է 1519ին տողերս.

---

1 Ինքնակենսագրութիւն (տե՛ս վարը):
2 Հոոմ, Վատիկ. Մատենադարան, Բորգեան Թ. 7. Tisserant, Ցուցակ, էջ 24:

*Ի դաստուն յերկար կացի,*
*Դառըն կենօք զկեանս անցուցի.*
*Հառաչելով արտասուեցի,*
*Զի արժանացայց կենաց հացի:*

*Գրիգոր վարդապետ իբր 1515ին կ՚ուղեւորի Երուսաղէմ. այն տեղ կը մնայ ժամանակ մը եւ կը դասախօսէ: 519ին կը բացատրէր իր աշակերտաց Արտաքինքը, այս ինքն կ՚աւանդէր իմաստասիրութիւնը: Այս տարւոյն կը յօրինէ Մաղաքիա իր Գովասանքը: Երկու տարի ետքը, 1521ին կը ստանայ ան վարդապետական գաւազանը: Յաջորդ տարին Գրիգոր եւ Մաղաքիա կը մեկնին Երուսաղէմէն ցամաքի ճանապարհով: Հազիւ կը հասնին Հալէպ, կը վախճանի Գրիգոր վարդապետ (1522):*

*Գրիգոր Վ. Մշեցի միաժամանակ շինարար էր. կը կանգնէ Մուշի Ս. Կարապետի պարիսպը. կը նորոգէ եկեղեցին եւ վանքը: Երուսաղէմի մէջ կը բարձրացնէ Հրեշտակապետաց եկեղեցւոյն պարիսպը: Մաղաքիա կը գրէ թէ «եւ ես յամենայնի կցորդ եղէ ըստ կարողութեան». այսինքն մասնակցած է Վարդապետին շինարարական գործունէութեան: Այս հանգամանքով ուսած է նաեւ շինարուեստը, զոր ապա յայտնաբերեց իր գործունէութեան ընթացքին: Կը գովուի ան իբրեւ քանդակագործ փայտի վրայ:*

*Վարդապետին մահէն ետքը նորընծայ Վարդապետը առանձին վերադարձաւ Մուշ*

եւ վարեց ժամանակ մը «Համալսարանի» առաջնորդութիւնը: Ապա գնաց Դերջան եւ բացաւ այն տեղ Դպրոց: Կը յիշէ 1530ին իր աշակերտները՝ տէր Կարապետ, Մեսրոպ, Եղիա, Սարգիս եւ Թադէոս: Իր համբաւը կը ձգէ իրեն 1543ին Երկանի վանքին Վրթանէս աբեղան. սա կը գրէ. «Երկու տարի կեցայ ի վանքն (Երկանի). եւ անտի գնացի ի Դերջան, ի Մեծ Մաղաքիա վարդապետի վանքն եւ աշակերտեցայ նմա ի Թվին ՋՂԲ» (1543). բայց հազիւ երկու տարի կարող կ՚ըլլայ ունկնդրել Վարդապետին, վասն զի Մաղաքիա կը վախճանի 1545ին. որ, կ՚ըսէ, «եթող մեզ սուգ անմխիթար ի վերայ երկրի. զի բազում աշակերտք անմխիթար եւ որբ մնացաք ի սուրբ Հօրէն մերոյ[3]»:

Մաղաքիայի աշակերտը Սարգիս Թողուցած է մեզի յիշատակագրութիւն մը ի վերջ 1319ին Կիլիկիա գրուած Ճաշակոցի մը, զոր գնած է 1526ին: Ձեռագիրս սեպհականութիւնն էր Մուշեղ Սերոբեանի, զոր տեսած եւ ցուցակագրած եմ 1942ին ի Բէյրութ:

Թղ. 292բ—293ա կը յիշատակագրէ Սարգիս.

«Սարգիս բանին սպասաւոր աշխարհաւ Տարաւնացի, քաղաքաւ Մշեցի, աշակերտեալ մեծ հեռետոր եւ անյաղթ փիլիսոփայի Գրի–

[3] Էջմիածին, Թ. 2145, Թղ. 197ա (Յիշատակագրութիւն):

գորի մականուամբ Մչեցի կոչիւր. եւ յետ վաղճանի նորա աշակերտի նորա Մաղաքիայ Դերջանեցւոյ, որ անկեղծ սիրով եւ հայրական խնամով կրթեաց զիս յիմաստս աստուածային հանճարոյ: Եւ ի թուաբերութեան յաբեթական տումարի. ՋՀԵ. ամին, ի թագաւորութեան սուլթան Սուլէմանին եւ պարոնութեան Տարաւն գաւառին Ամիր Շարաւին. եւ ի յառաջնորդութեան սուրբ ուխտիս Գլակայ Ստեփաննոս արքեպիսկոպոսին գնեցի զՇարականոցս ի վայելումն եւ յիշատակ անձին իմոյ: Եւ ով ոք որ հանդիպիք այս գրոցս տեսանելով կամ գաղափարելով կամ աւկտելով, յիշեցէք ի Քրիստոս զերախտաւոր վարդապետքն իմ զԳրիգոր եւ զՄաղաքիա. եւ զիս զՍարգիս բանի սպասաւոր. եւ զծնաւղսն իմ, զամենայն երախտաւորս իմ. եւ դուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ. եւ ձեզ յիշողացդ եւ մեզ յիշեցելոցս առ հասարակ ողորմացի. ի վայելումն անձին իմոյ. յիշատակ Սարգիս բանի սպասաւորի, որ է լցեալ իմաստութեամբ շնորհաւք սուրբ Հոգւոյն. ամէն»:

Օրինակութիւնը եւ վերջին տողերը հաւանօրէն ուրիշ գրչէ է: Ուղղագրական ինչ ինչ անհարթութիւններ յարդարած եմ հոս. խսկականը տեսնել ցուցակագրութեանս մէջ:

Մաղաքիա Վ. Դերջանցւոյ աշակերտ կը ներկայացուի նաեւ Կ. Պոլսոյ պատրիարքն Աստուածատուր (1537—1550), ինչպէս կը

գրէ Հրանտ Ասատուր[4]: Նոյնը կը կրկնէ Օրմանեան[5]: Բայց սա Վասպուրականի շրջանէն կ՚երեւայ: Գրիգոր Դարանաղցի Մաղաքիայի աշակերտն այս անունով Սեբաստացի գիտէ եւ կը հաւաստէ թէ ան գործած է Երզնկա եւ վախճանած է հոն 1587ին[6]:

Այս տարիներուն Կամախի Աւագ վանքը, որ եպիսկոպոսական աթոռ էր, ծանր պարտքերու տակ էր, հարկերու ծանրութեան պատճառով: Մաղաքիա կը խորհի դիմել Սուլտանի բարեգթութեան: «Վասն այն, կ՚ըսէ, հարկեցայ ի բազմաց եւ գնացի ի սուլթան Սուլէյմանն ի թվին ՋՀԹ» (1530): Կը յաջողի. 12·000էն «ի 6000 իջուցի զմալն եւ զարեղայից խարաճն եւ զխապանջն բարձաք ի բաց. եւ եկեղեցեաց նորոգման հրաման առաք. եւ եկաք յԱւագ վանքն»: Նոյնը լսած է Գրիգոր Դարանաղցի աւանդութենէն. որ կ՚աւելցնէ թէ այդ 6000ն ալ «Դիմոսցի պարոն Թորոս ի վերայ երկրի ցրուեր, ի տունն չորսական ստակ կու տան մինչեւ ցայսօր[7]»: Ժամանակագիրս 1592ին կը գրէ. «Լեալ է Դերջանցի Մեծ Մաղաքի վարդապետն շնորհալի արուեստիւ եւ բանիւք, արդեամբք եւ հզօր ատենախօս իբր զՊօղոս. եւ

---

[4] Կ. Պոլսոյ Հայերը եւ իրենց պատրիարքները. Ընդարձակ Օրացոյց Ազգ. Հիւանդանոցի, Կ. Պոլիս 1901. էջ 83:

[5] Մաղաքիա արքեպ. Օրմանեան, Ազգապատում, Բ., էջ 2237:

[6] Գր. Կամախեցի, Ժամանակագրութիւն, էջ 341:

[7] Անդ, էջ 338—339:

*շատ բարութեան պատճառ է եղեալ եւ շատ եկեղեցիք եւ խաներ է շինել. ի մեր Կամախոյ վանքն է կացեր շատ ժամանակ»:*

*Մաղաքիա երկրորդ անգամ ալ գացած է Կ. Պոլիս, 1543ին: Այս անգամ խափանել տալու համար Մանկաժողովը Կամախի, Դերջանի եւ Բաբերդի գաւառներու մէջ. դարձեալ յաջողութեամբ պսակուած: Այս մասին պիտի խօսիմ առանձին գլխով:*

*Ձենք կրնար անտեսել Վարդապետիս արուեստն եւ շինարարական գործունէութիւնը: Իր շինարարութեանց մասին 1523—1530 շրջանին մէջ մանրամասն հաշիւ տուած է Մաղաքիա Ինքնակենսագրութեան մէջ: Տակաւին հրաման չէր հանած եկեղեցիներ շինելու. բաւականացած էր նորոգութիւններով եւ կողմնակի շինութիւններով (տե՛ս վարը): Իսկ 1531—1545 տարիներու շինարարութեանց մասին աղքատ են մեր տեղեկութիւնները. 1569ին Վրթանէս վարդապետ կը հաղորդէ, թէ «Մաղաքիա վարդապետն շինեաց զՍուրբնու խան, զի աւեր էր եւ նա նորոգեաց»: 1540ին արձանագրութիւն մը կը հաստատէ, թէ «Մեծ կամուրջն կապեցաւ ձեռամբ Մաղաքիա վարդապետի[8]»:*

*Գրիգոր Դարանաղցի, որ շրջած է Կամախ եւ Դերջան, գրէ, թէ «եւ այլ բազում գործս բարութեան յիշատակի արարեալ է այս Մաղաքիաս, որ կան եւ կու յիշատակին*

[8] *Արեւելք*, 1903, *Թ.* 5355: *Տես վարը:*

*մինչեւ ցայսօր. որ Լուսաւորչին եւ Աւագ վանացն մէկ մէկ գրակալք չինէր եւ այնքան զարմանալի արուեստիւ քանդակեր (է), որ տեսողքն կու սքանչանան. եւ նմանապէս դրունքն սուրբ Աստուածածնին եւ սուրբ Կարապետին սորա է արարեալ»* (*էջ* 339):

Գրութիւններ:

*Մաղաքիա Վ. Դերջանցւոյ անունին հարազատ երկու գրուածք միայն ծանօթ է ինծի. ասոնք են.*

1· Յիշատակարան – Ինքնակենսագրութիւն, *գրուած իր իսկ գրչով՝* 1218*ին օրինակուած Աւետարանի մը մէջ, որ կը պահուի Նոր-Ջուղայ, Ամենափրկիչ վանքի Մատենադարանը, Թ.* 26: *Ձեռագրիս ցուցակագրութիւնը կատարած է Սմբատ Տէր-Աւետիսեան. անկէ արտագրած եմ ես — ինչ ինչ տեղեր համառօտելով —* 1925*ին ի Տփղիս: Տէր-Աւետիսեանի ձեռագիրը տեղ տեղ դժուարընթեռնլի էր. այս պատճառով ինչ ինչ տեղիքներ արտագրութեանս մէջ կը կարօտին վերաքննութեան: Յիշատակարանիս մէջ Մաղաքիա կը հաղորդէ մեզի իր կենսագրութեան եւ շինարարական գործունէութեան մասին շատ կարեւոր տեղեկութիւններ: Թէեւ հրատարակուած է Յիշատակարանս՝ Հ. Հ. Ոսկեան, Բարձր Հայքի վանքերը, Հանդ. Ամս.* 1948, *էջ* 539—541 = *արտատպուած՝ Վիեննա* 1951, *էջ* 21—23, *բայց միւսանգամ պիտի ներկայացնեմ այստեղ ինչ*

*ինչ ուղղումներով եւ լուսաբանութիւններով: Այս տեղ յիշուած վանքերու եւ այլ տեղանուններու ճշգրիտ տեղագրութիւնը կը կարօտի անդրադոյն քննութեան:*

2. Գովասանութիւն Գրիգոր վարդապետի Մշեցւոյ ի Մաղաքիայ իւր աշակերտէ ասացեալ:

*«Հայր անկող այգեստանեաց...» սկըզբնաւորութեամբ: Պահուած է Երուսաղէմի Թ. 1455, Թղ. 227բ—232բ: Ձեռագրիս գրիչն է տաղասացն Ստեփաննոս Թոխաթեցի, որուն է Յիշատակարանս. «Գրեցօ ոտօրքս ի քաղաքս չէհրի Թոխաթ ձեռամբ Ստեփաննոս մեղաներկ երիցու ի վայելումն Յովսէփ աշակերտին իմոյ, ի Թվականիս Հայոց ՌՀԱ. մայիս ամսոյ (դատարկ), յորժամ Ըստամպօլու զուլն գլուխ քաշեցին եւ զախանն եւ զսարայն կոխեցին եւ զՕսման փատիշահն ըսպանին եւ զայլ գլուխ մարդիքն ջարդեցին, եւ եդին Թագաւոր զուլթան Մուրատ Փան (ա՛յսպէս), զոր տէր Աստուած զինքն խաղաղութեամբ պահեսցէ. ամէն...»: Տաղիս օրինակութիւնը խնդրանքովս հոգացած էր լուսահոգի Տ. Մեսրոպ Նշանեան պատրիարք իրեն ընտել բարեացակամութեամբ:*

*Մաղաքիայի գրչին միակ գրական վաստակն է այն, բայց բաւական է ճանչնալու համար անոր բարեմիտ սիրտը, հոգւոյ ազնուութիւնը եւ մանկավարժական սկզբունքները: Գրուած է այն 1519ին Երուսաղէմ, երբ տակաւին կը կատարէր իր ուսմանց ըն–*

*թացքը: 66 տունէ կը բաղկանայ Գոլա-
սանքս, ընդ ամէնը 264 տող: Ունի գրա-
կան արժէքաւոր քառեակներ: Տող 141—144
կը պանծացնէ իր ուսուցիչն իբրեւ «հալա-
ծիչ հերձուածողաց, երկարնակ չարափա-
ռաց», որոնք «զողամիտ կեղծաւորներ» են
եւ «օրէնքին թիւր քարոզողներ». կ՚ակնարկէ
անշուշտ յոյն օրթոդոքսներն եւ լատին քա-
րոզիչները, որոնց համանօրէն առաջին ան-
գամ Երուսաղէմ պատահած են Տարօնի վար-
դապետն եւ անոր աշակերտը, երկուքն ալ
Պօղոս Տարօնեցւոյ աղդեցութեան տակ: Տաղս
կը հրատարակեմ ամբողջութեամբ. ուղղե-
լով* աւ *գրչութիւնն* օի *եւ* օ *գրչութիւնը*
աւի, *ինչպէս նաեւ տեղաւորելով* ւի *անկում-
ներն եւ գեղչելով* յ *աւելադրութիւնները:
Ուրիշ փոփոխութիւններ ներկայացուած են
ծանօթութեանց մէջ:*

3. Կանոնագիրք. Երիցական հախն եւ
իրաւունքն, Մաղաքիա վարդապետի:

*«Ի գթութեանցն Աստուծոյ եւ ամենայն
սրբոց նորա, նաեւ ի Մաղաքէ վարդապետէ
հասցէ գիր օրհնութեան եւ պահպանութեան
ամենայն հաւատացելոց քրիստոնէից: Որ
կանոնագիրքն այս է. զի Երիցական Հախն
եւ իրաւունքն այս է: Զատկին խաչհամբուրն
Զ բատակ...»:*

*Ձեռագիր Էջմիածնի, Թ. 2511: Հրտ.
Գ. Վ. Յովսէփեան, Արարատ,* 1915, *էջ* 218:

*Ուշ ժամանակի յաւելուած մըն է իբր
ԺԴ. դարուն համանօրէն Գլաձոր դրուած*

*ձեռագրի մը մէջ, որ կը բովանդակէ Եսայի Նչեցւոյ Մեկնութիւնն Եզեկիէլի: Այս ձեռագիրը յետ ժամանակաց ստացած է «կոչկար» Յովհաննէս եւ նուիրած է «ի ձեռն Հարապետ աշակերտին ի դուռն սուրբ Յակոբին, որ կոչի Կապոսի»: Կազմը նորոգուած է Սրապի ձեռքով 1596ին: Որո՞ւն ձեռքով եւ ե՞րբ ներս առնուած է «Կանոնագիրքս» ձեռագրին մէջ (թղ. 377բ), յայտնի չէ. ուստի նաեւ Մաղաքիա վարդապետի ժամանակն անծանօթ: Յովսէփեան, որ հրատարակած է «Կանոնագիրքս» Արարատի մէջ, կը միտի այս Մաղաքիա վարդապետը նոյնացնել Մաղաքիա Վ. Ղրիմեցւոյ հետ († 1384): Ձեռագիրը տեսած եմ եւ հատուածս արտագրած 1927ին: Այն ժամանակ համարած էի զայն «ԺԵ./ԺԶ.» դարու գրուածք: Այժմ կը թուի ինձ, թէ յանձին Մաղաքիայի Դերջանցի Մեծն Մաղաքիա ճանչնալու է, որ ԺԶ. դարու 1525—1545 տարիներուն մեծ հեղինակութիւն կը վայելէր, յատկապէս Բարձր Հայքի մէջ:*

*Մաղաքիա Դերջանցւոյ հետ որ եւ է կապ չունի՝*

«Մաղաքիա աքեղայի Համառօտ բանք չափաւ ի վերայ իւրաքանչիւր գրոց Հնգամատենին, Յեսուայ, Դատաւորաց եւ Հռութայ. *ըստ բաւականին վայելչաձեւ ոճով. եւ են ընդ ամենայն տողք 74»: Այսպէս կը գրէ Տ. Սաւալանեան Երուսաղէմի Թ. 998*

ձեռագրի (յամէ 1623) ցուցակագրութեան մէջ։ Տողիս սկզբնաւորութիւնն է. «Աստուած անեղ անմահ եւ տէր յաւիտենից...»։

Դարձեալ «Մաղաքիա արեղայ» եւ այն 1623ին։ Այլուր[1] առիթ ունեցած եմ նշաւակելու, թէ ինչպէս Թոխաթեցի Մաղաքիա արեղայ իր անունին իւրացուցած էր Գրիգոր Ակներցւոյ Թաթարաց Պատմութիւնը։ Այստեղ ալ իր անունին սեպհականած է Աստուածաշունչի գիրքերուն կցուած անանուն տաղաչարքները, որոնք ծանօթ են մեզի արդէն 1384ին գրուած ձեռագրէ մը (Թօփչեան, Ցուցակ Խաչիկ Վ. Դադեանի ձեռագրաց, Թ. 1), եւ որոնց արտագրութիւնն ունիմ աչքի առջեւ Հ. Աճառեանի օրինակութեամբ։

[1] Մատենագրական հետազօտութիւններ, Հատոր Ե., Վիեննա 1953, էջ 216—217։

## Ա․

### Յիշատակարան–Ինքնակենսագրութիւն․

*Ի թուականութեան ՋՃԹ* (1530) *ես Մագաքիա վարդապետ Դերջանեցի գնացի ի յՍտնպալ եւ զսուրբ Աւետարանս յիշատակ եդուն ի Դերջան ի դուռն սուրբ Դաւթա եւ սուրբ Լուսաւորչին*[9]․ *եւ է յիշատակ տէր Յովանիսին եւ տէր Աւագին եւ կողակցին Լալ խաթունին․․․։*

*Եւ ես Նուաստ Մագաքիա վարդապետ Դերջանեցի ի գեղջէ Փողձա, որդի Մկրտիչ քահանայի, աշակերտեցի երջանիկ րաբունապետին Գրիգորի Մշեցոյ, որ էր նման Տաթեւացոյն եւ լի շնորհօք։ Որ եւ շինեաց զսուրբ Կարապետու պարիսպն եւ զեկեղեցեաց միջի սալրկայն եւ զժամատանցն․ եւ զկէս խցերուն եւ զՏնտեսատուն․ եւ զսուրբ Յովհաննու քարեա ժամատունն․ եւ այլ բազում չէնք անց։ Եւ ապա զԿապոտ Հարաւին ժամատունն եւ ․Դ․ խուց։ Եւ գնաց ի յԵրուսաղէմ եւ շինեաց զՀրեշտակապետաց պարիսպն․ եւ եկեալ ի Հայաս փոխեցաւ առ Քրիստոս։ Եւ ես ամենայնի կցորդ եղէ րստ կարողութեան․ եւ ․Ի․ ամ աշակերտեցի նմայ եւ ի ՋՀ* (1521) *թվին գաւազան առի։*

---

[9] *Ս. Լուսաւորիչ եկեղեցին (եւ վա՞նքը) ի Դերջան կը յիշուի յանուանէ* 1451*ին (Ոսկեան,* 156)։

Եւ նախ զմեծ Լուսաւորչին աղբիւրն[10] բերի քարեւկրով: Եւ զհարաւային ժամատունն չինեցի սրբաքեր եւ նաղարով (՞) : Եւ մէկ չարտախ ի բերդին գլուխն: Եւ ապա Գորո-րու սուրբ Թորոսու երկու եկեղեցին[11] : Եւ զԿոթերու սուրբ Սարգսին սալրկապն[12]: Եւ ապա Կարապետուն ժամատունն եւ երեք խուց փողնոմն[12ա]: Եւ ապա զԱւաք վա-նաց[13] հարաւային ժամատունն սրբաքեր եւ վերի Սեղանատեղն եւ .Ա. չարտախ եւ եր-կու խուց եւ քարեա ամբարն եւ երկու եզի: Եւ ապա զսուրբ Դուլթա պարխապն[14]: Եւ զսուրբ Կարապետ[15] եւ զժամատունն եւ զբո-լոր չէնքն եւ զջաղացն եւ երկու(ս) այլ. եւ զամենայն սպասք վանացն, լուցք եւ բեռ-

---

[10] «Մեծ Լուսաւորիչ» վանքը կ'ենթադրէ փոքր Լուսաւորիչ մ'ալ. այս երկուքի զանազանութիւնը կը կարօտի քննութեան: Ինճիճեան, Նոր Հայաստ. 97 կը յիշէ Լուսաղբիւր մը Ս. Թորոս վանքի «ի գլուխ լե-րին»:

[11] Հմմտ. Ոսկեան, 157:

[12] Արձանագրութիւն մը եկեղեցւոյն վրայ. «ՆՈ-ՐՈԳԵՑԱՒ ՍՈՒՐԲ ԵԿԵՂԵՑԻՍ ԹՈՒԻՆ ՋՀԴ (1525) ՁԵՌԱՄԲ ՄԱՂԱՔԻԱ ՎԱՐԴԱՊԵՏԻ. Հմմտ. Արեւելք, 1903, Թ. 5355 եւ Օրմանեան, Ազգապ., Բ., էջ 2237: Կ'ըսուի թէ Ս. Սարգիս նաեւ «Մաղաքիա վարդապետի մենաստան» նկատուած էր. Ոսկեան, 164:

[12ա] կարդա՞լ ձեղնոյն:

[13] Պղնձայգւոյ Աւագ անապատն է, «անքոյթ ի բարձրավանդակ տեղւոջ», ինչպէս կը գրէ Յակոբ Կար-նեցի. Հմմտ. Ոսկեան, 155—156:

[14] Հէօպէկ լեռան բարձունքը. Հմմտ. Ոսկեան, 159—161:

[15] Երկու Կարապետի վանք յիշուած են հոս. մին է Ս. Կարապետի կամ Ճողունի վանքը եւ միւսն հա-ւանօրէն Ս. Յովհաննունք. տե՛ս Ոսկեան, էջ 162—164:

նակիրք։ Եւ երկու կամուրջ ի Խոտուրմն[16]
Եւ զԴեւնկայ Եկեղեցին եւ զժամատունն, եւ մէկ խուց եւ չարտախ ի վերայ ի Կապոսին[17] Եւ մէկ այգի (ի) Փթաուրճ բոլոր տներովն եւ հնձանոմն[18] յիշատակ ի սուրբ Դաւիթ։

Եւ ապա գնացի ի յԸստամբաւլ առ մեծ աշխարհակալն սուլթան Սուլէմանն։ Զի Կամխա եւ Աւագ վանացն եպիսկոպոսութեան մայն ժԲԹ էր. եւ յոյժ նեղացաւ վանք եւ երկիր. եւ այլ ոչ կարէին տալ։ Վասն այն հարկեցա ի բազմաց եւ գնացի ի սուլթան Սուլէմանն ի թվին ՋՀԹ։ Եւ ի ՋՌ իջուցի զմայն եւ զարեղաից խարաճն եւ զխպանճն բարձաք ի բաց. եւ եկեղեցեաց նորոգման հրաման առաք. եւ եկաք ի յԱւաք վանք։

Եւ աշակերտք էին ինձ ի ժամու տէր Կարապետն. եւ տէր Մեսրոպն. եւ տէր Եղիան. եւ առաջին տէր Սարգիսն լի ամենայն շնորհաւք. եւ տէր Թաղէոսն։ Եւ այժմ զՍաղմոսն ասեմք դաս. եւ ապաղան Տեառն եմք ի յանձին։

---

16 Կասկածելի է «խոտուրմն» ընթերցուածս։ Այս երկու կամուրջներէն զատ շինած է Մաղաքիա եըրորդ մը, որ «մեծ» կ'որակուի։ Ունի կամուրջս այսպիսի արձանագրութիւն մը. Ի ԹՈՒԻՆ ՋՁԹ ՄԵԾ ԿԱՄՈՒՐՋՆ ԿԱՊԵՑԱՒ ՁԵՌԱՄԲ ՄԱՂԱՔԻԱ ՎԱՐԴԱՊԵՏԻ ԵՒ ՖԻՐՀԱՏ ՓԱՇԱՅԻ Ի ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆ ՍՈՒԼԹԱՆ ՍՈՒԼԷՅՄԱՆԻ, ՈՐ ԹԱԳԱՒՈՐԷՐ ՑԱԴՐԻԱՆՈՒՊՈԼԻՍ։ *Արեւելք*, 1903, թ. 5355 եւ *Օրմանեան*, էջ 2237։

17 Կասկածելի կ'երեւայ ընթերցուածս։

18 Զ. հնձայոմն։

Եւ թէպէտ հպարտացայ եւ գրեցի զբանս, սակայն դուք ներումն արարէք ամենայն սղալանաց իմոց . . . :

*** Ի Թուականին ՋՀԹ (1530) ես Մաղաքիա վարդապետս Դերջանեցի յորժամ գնացի աջողութեամբ Աստուծոյ ի յՍտամբուլ, նայ խոճա Քրիստոստուրն շատ աղնականութիւն արար ի գրունս մեծամեծաց. եւ զԿամախոյ զեպիսկոպոսութեան մայն ի ԺԲՌէն ի ՁՌ իջոյց. յիշեցէք զինքն . . . : Այլ եւ յիշեցէք զՄոճա Մուլքին . . . զմեզ կերակրեաց բազում մարդով (°) . . . եւ արծաթի խսկի մի եւ մէկ չուրջառ նուէրք ետուր . . . :

(Տէր-Աւետիսեան, Ցուցակ Նոր-Ջուղայի Ամենափրկիչ Վանաց Մատենադարանի, Թ. 26 (Աւետարան յամէ 1218) :

Բ.

Գովութիւն Գրիգոր վարդապետի Մշեցւոյ, ի Մաղաքիայ իւր աշակերտէ ասացեալ :
Ցիսուս որդու զոյն ասա :

Հայր տնկող այգեստանեաց,
Որդին մշակ է առանց վարձ,
Հոգին ջրրող 'ւ արբուցանող,
Մինչեւ պտուղըն գայ ի հաս :

Եւ ժողովեն յըշտեմարանս,
Զորն ի հնձան գումն ի կարաս,
Ով որ բարի պտուղ լինի,
Յարքայութիւնն է ժողոված :

Նոյնպէս եւ մեծ րՐաբունիս,
Քան զարեգակն փայլէ յերկրիս,
Վարուք բարի անուշահոտ,
Յորմէ եւ Տէ՛ր դու հոտոտիս:

Որպէս խոյծեալ հասեալ այգի,
Անուշահամ եւ բարելի,
Ի ձեռին Տեառն ճմլեալ գինի,
Զծարաւ հոգւոց բանից յերկրի:

Սա աշխարհաւ Տարօնեցի,
Գեղջն Ամյորդւոյն է դրացի,
Խնդիր եղեալ կենաց հացի,
Յորմէ հոգւոյն քաղցրն բարձի:

Անունն Արթուն է եւ զւարթ,
Զիմաստութիւնն է զգեցեալ զարդ,
Պայծառ փայլուն է որպէս զմարդ,
՚ւ ինքըն բերկրի յարագաւարձ:

Մականուն է Մրչեցի,
Որպէս Դաւիթ Ներգինացի,
Մեծըն Պօղոս Տարսոնացի,
Որպէս Բարսեղ Կեսարեցի:

Սընեալ ի վանքըն Գըլակայ
Սրբասընունդ եւ արեղայ,
Մինչ սահմանեալ իւր կէտըն գայ,
Ելեալ գընայ ի յԵրզընկայ:

Ի յԵկեղեաց գաւառն եկաց,
Եւ ըզմտաց զդրունքն եբաց,
Զիմաստութիւնըն ժողովեաց,
Որպէս զմեղու զծաղիկ լերանց:

Աշակերտեալ մեծ բարունւոյն,
Եւ Յոհաննէս կոչեցելոյն,
Որ էր նման մեծ Եսայոյն,
՚ւ աստուածարան առաքելոյն։

Կրթեալ յիմաստ բանից նորին,
՚ւ Յրուէթէոս առ Պօղոսին,
Եւ կամ Գրիգոր առ Յոհաննին,
Եւ Աթանաս Աղէկսանդրին։

Մտաւքն առատ ՚ւ աստուածարան,
Որպէս Գրիգոր եւ մեծն Յոհան,
Ճշմարտութեամբ է պարըսպեալ,
Եւ թշնամեացն անդծական։

Եւթնարփեան շնորհօք լցեալ,
Հոգւով սրբով առատացեալ,
Քան զառաջինս գերազանցեալ,
Յետագայիցըս լոյս տվեալ։

Իմաստասէր եւ սա կոչի,
Զինչ Պըղատոն Աթենացի,
՚ւ Արիստոտէլ Ստագիրացի,
Եւ Պորփիւրոս Փիւնիկեցի։

Իմաստութեամբ է զարդարեալ,
Խորըս գիտնոցըն սա իջեալ,
Որպէս խորէջք յատակ ծովուն,
Եւ զմարգարիտ ժողովելոյն։

Շինեաց պարիսպ բարձըր բըրգօք,
Եւ մեծամեծ անտաշ վիմօք,
Եւ խորագոյն ամուր հիմօք,
Բաշխէ պարգեւս որդւոց մարդկան։

Երկու կողմանց կառոյց խորան,
Եւ հաստատեաց անդ սուրբ սեղան,
Յորում բազմի անմահ արքայն,
Բաշխէ պարգեւս որդւոց մարդկան:

Ծննեաց սա շատ եկեղեցի,
Ժամատներ եւ տեղ դասի,
Սեղան եդիր կենաց հացի,
Յաղեցելոց եւ քաղցածի:

Սեղան դնէ կենաց հացի,
Եւ ամենայն բարեօք լիլի,
Զկերողքն առնէ ուրախալի,
Ի ներկայիս 'ւ յապագայի:

Եւ շատք կերան եւ յագեցան,
Որ ըստ օրէ նոր քաղցենան,
Եւ այլք սովեալ դիմեն եւ գան,
Առեալ պարգեւք ուրախանան:

Բազումք լեեն 'ւ ուրախանան,
Խորհուրդ առնեն թ՚ինքեանք այլ գան,
Եւ դեգերեալ տեղըն մընան,
Կենաց հացէն սոված կենան:

ԶԱստուածաշունչն ասաց յառաջ,
Զաշակերտացն ըզմիտքն երաց,
Զնրբերն ապա յայտնաբանեաց,
Զմիտըս մարդկան լուսաւորեաց:

Մըտաւքն է սուր եւ բանիբուն,
Որպէս անդունդք խորըք ծովուն,
Միտքըն ժողվէ սեռ եւ տեսակ,
Սեղան դնէ աշակերտնուն:

Սա նմանի արեգական,
Զխաւարն առնէ հալածական,
Զմիտըս մարդկան լուսաւորէ,
Կենաց բանիւն անմահական:

Նըման է սա արուսեկին,
Արեգական կարապետին,
Պայծառ փայլէ քան ըզլուսին,
Որպէս յաւուրս տասն ու հընկին:

Եւ քարոզէ յամէն դիմաց,
Թ՛ող զաշակերտըն կալ ի բաց,
Զորդիս մարդկան կոչէ ի հաց,
Յերկնից խորանըն զարդարած:

Ըզմեղուցեալսն զղջումն ածէ,
Եւ զյուսահատսըն յուսադրէ,
Յերկնից խորանըն հրաւիրէ,
Ընդ հրեշտակաց դասակարգէ:

Քան զարծըւի է սըրընթաց,
Զմըտաց դրունքն ունի ի բաց,
Զխոկումն ունի միշտ առ Աստուած,
Եւ անհասիցըն վիպասաց:

Անգին ակունք են բանք սորին,
Որպէս զոսկի արաբային,
Պայծառ փայլուն առնէ զհոգին,
Զհնազանդելոցն եւ զլսողին:

Նման է սա բուրաստանի,
Եւ զանազան պըտղով լի,
Զկերողըն առնէ ուրախալի,
Ի ներկայիս ՚ւ ապագայի:

Ի մտաց բխէ յոյժ քաղցր աղբեր,
Եւ յորդառատ իբրեւ ըզգետ,
Բազումք ըմպեն 'ւ երթան ի յետ,
Տատ ծարաւիք նոր գան ի հետ:

Նման է սա ցուրտ աղբերի,
Զտապ ծարաւեացըն բարձողի,
Ուրախ առնէ զմիտքն եւ զհոգի,
Ով այս աղբերըս պատահի:

Եւ այս աղբերս է յորդառատ,
Զի զՍուրբ Հոգին ունի արմատ,
Որ միշտ բխէ յարազուարճ,
Եւ զարբուցեալքն առնէ զուարթ:

Նոր բանք լըսեմք օր ըստ օրէ,
Որպէս զՈրդի առ ի Հօրէ,
Զոր Սուրբ Հոգին տընօրինէ,
Զտըգիտութիւն մեր փարատէ:

Ուղափառացն է ախոյան,
Եւ հաւատոյն ուղղադաւան,
Որպէս զԳրիգոր Աստուածաբան,
Եւ ըզԿիւրեղ Աղեկսանդրեան:

Է հալածիչ հերձուածողաց,
Երկաբընակ չարափառաց,
Եւ գողամիտ կեղծաւորաց,
Զօրէնըս թիւր քարոզողաց:

Սա կորուսիչ սաղայելի,
Եւ բազմութեան լեգէհոնի,
Այսոց պղծոց ամենայնի,
Խորս անդընդոցըն սուզողի:

*Հոգւոյն անբիծ եւ անարատ,*
*Մարմնով պայծառ որպէս ըզվարդ,*
*Մտօքըն սուր եւ միշտ զուարթ,*
*Եւ ըզտեսողքն առնէ ուրախ:*

*Բանականաւ խոհեմացեալ,*
*Արամտութեամբ արիացեալ,*
*Յանկականաւն ողջախոհեալ,*
*Արդարութեամբ հաւասարեալ:*

*Տիպըն պայծառ քան զհրեշտակի,*
*Որպէս զՄովսէսըն հրաշալի,*
*Եւ տեսողացն յոյժ ցանկալի,*
*Որպէս զԳրիգորըն Պարթեւի:*

*Գովութիւնըն բարձր է սորին,*
*Մտաց մարդկան որ ի ստորին,*
*Անճառ՝ւ անհաս է գովք սորին,*
*Յայտնի յատեան դատաստանին:*

*Զսա պահեսցէ աջն անեղին,*
*Որպէս երբեմն զԻսրայէլ հին,*
*Եւ կամ զՅովնան ի փոր կէտին,*
*Եւ զԴանիէլ գուբն առիւծին:*

*Զերիս մանկունսն ի մէջ հնոցին,*
*Զմեր Լուսաւորն ի վիրապին,*
*Նոյնպէս եւ զսա պահէ յուժգին,*
*Մինչ սահմանեալ յօրըն վերջին:*

*Բայց երանի է մեր աչացս,*
*Եւ յարաժամ տեսանողացս,*
*Յիմաստ սորին վայելողացս,*
*Զի բանք սորին է զարդ փառաց:*

Փառք եւ պատիւ պարգեւողին,
Երրորդութեանն երրեակ անձին,
Ի ներկայիս 'ւ ապագային,
Եւ հանդերձեալն յաւիտենին:

Ցինըն հարիւր Հայոց Թըւին,
Վեցեակ տասին երկեակ քառին (1519),
Ի մենաստան Սուրբ Յակոբին,
Զի արտաքինքն մեկնեալ պատմին:

Մաղաքիաս Դերջանեցի,
Որ յիշելոյ չեմ արժանի,
Զաւկաւ բանիկս արտադրեցի,
Զեր սրբութեանդ ընծայեցի:

Ի դաստառուն յերկար կացի,
Դառըն կենօք զկեանս անցուցի,
Հառաչելով արտասուեցի,
Զի արժանացայց կենաց հացի:

Բայց համբերեմ յայսըմ հետէ,
Մինչեւ առից կաթ մ՚ի գետէ,
Ի հոգեբուխ սուրբ աղբերէ,
Զոր յորդառատ մարդկան բաշխէ:

Աղաղակեմ առ Տէր Աստուած,
Ողորմութեան դուռն է ի բաց,
Որ չի զրկէ ի փշրանաց,
Այլ պարգեւէ մեզ հաց կենաց:

Այլ հաւատամ ես սերտ յուսով,
Ով որ դիմէ յԱստուած սիրով,
Եւ աշխատի ուղիղ ջանով,
Լըցեալ լինի ինքըն շնորհով:

Վառեալ լինի ինքըն սիրով,
Եւ անդադար սաղմոսելով,
Աւրհնէ զԱստուած միշտ գովելով,
Լցեալ լինի ինք Սուրբ Հոգւով:

Թէ սուրբ կենայ հոգւով մարմնով,
Գործըս բարիս վաստակելով,
Զգիրքս Աստուծոյ միշտ կարդալով,
Առատանայ որպէս ըղձով:

Եւ հանապազ արթուն կալով,
Սուրբ խորհըրդով միտ դնելով,
Զբանս իմաստից որոճալով,
Աղբիւրանայ միշտ բըխելով:

Զոր ասացի առնէ սիրով,
Յօժար կամօք հետեւելով,
Նա զարդարի Հոգւով Սրբով,
Քան զջահ վառի պայծառ լուսով:

Ով ծոյլ կենայ երերալով,
Զօրն եւ զգիշերըն քուն կալով,
Եւ զօրովայնն պարարելով,
Ցուրջ պիտի գայ ինքըն լալով:

Զբանս Աստուծոյ քամահելով,
Զգիրըս սրբոց պարսաւելով,
Ատեցութեամբ հեռանալով,
Հոգւո̃ն այրի անշէջ հըրով:

Զաւուրս կենաց դատարկ կալով,
Վարդապետաց պարսաւ տալով,
Զարխացեալսն աղճատելով,
Եւ զըրարան բանբասելով:

Եւ միշտ գինւով արբենալով,
Հոգւով մտօք յիմարելով,
Չար խորհրդով խաւարելով,
ԶԱստուած բընաւ մոռանալով:

Եւ զոր մահուն ոչ յիշելով,
Յիմար կուսանց նմանելով,
Բարեաց գործոց հեռանալով,
Եւ յաղօթից միշտ ծոյլ կալով:

Այլ զօրացիք դուք Աստուծով,
Եւ անդադար աղօթելով,
Զգիրս Աստուծոյ միշտ կարդալով,
Եւ ջահ վառիք անշէջ լուսով:

Որպէս մեղու միշտ ջանալով,
Եւ քան զմրրջիմ վաստակելով,
Արթուն մըտօք յար խոկալով,
Իմաստնանաս դու Աստուծով:

Ջուրն ի վերուստ միշտ կաթելով,
Ըզմի տեղի հարկանելով,
Զկարծըր վիմերըն խորելով,
Նոյնպէս եւ դու ջանայ սիրով:

Որպէս գեղինըս լծելով,
Յերկիր ակօսըս բանալով,
Ըզպնտութիւնըն կակղելով,
Բոյսըս պէս պէս արձակելով:

Նոյնպէս եւ դու ջանայ յուսով,
Զտիւ եւ զգիշեր վաստակելով,
Զգիրքս Աստուծոյ միշտ կարդալով
Զխորս իմաստիցըն բանալով:

*Ով որ գայս բանս երգէ սիրով,*
*Ուշիմ հոգւով միտ դընելով,*
*Նա զարդարի Հոգւով Սրբով,*
*Յորժամ որ գայ Տէր մեր ամպով:*

*Յորժամ որ զԿԶ տուն Ներբողեանս ասես, զԹոխաթցի Ստեփանոս էրէցս յիշես եւ ձեզ եւ ինձ Հայր մեր որ յերկինս ասէք:*

## 1531Ի ՄԱՆԿԱԺՈՂՈՎԸ ՀԱՅԿԱԿԱՆ ԳԱՒԱՌՆԵՐՈՒ ՄԷՋ ԵՒ ՄԱՂԱՔԻԱ ԴԵՐՋԱՆՑԻ

Մանկաժողովի սկզբնաւորութիւնը ոմանք կը դնեն ԺԴ. դարու առաջին կէսին սուլտան Օրխանի (1326—1350), ուրիշներ Մուրատ Ա.ի (1350—1390) օրով: Համմէր իր Օսմանեան պետութեան պատմութեան մէջ (Ա. 98) կը գրէ[1]. Գարա Խալիլ Ջէնտէրէլի, եղբայրն Օրխան սուլտանի եւ Ալաէդդին վէզիրի, որ բանակին դատաւորն էր, խորհուրդ կու տայ իր սուլտան եղբօր, որ ան նոր բանակ մը կազմակերպէ զուտ քրիստոնեայ մանուկներէ: Անոնք բռնաբար պիտի իսլամացուէին եւ մարզուէին զինուորական ծառայութեան մէջ: Պարտուածները, ըստ, յաղթողին գերիներն են. անոր կը պատկանին անոնց ինչքերն եւ կիներն եւ զաւակները, իբրեւ օրինաւոր ստացուածք: Եթէ մանուկները բռնի մահմեդականացուին եւ իբրեւ մարտիկներ պետական ծառայութեան առնուին, պիտի շահուի անոնց թէ ժամանակաւոր եւ թէ յաւիտենական փրկութիւնը: Մարգարէին

[1] Joseph von Hammer, Geschichte des Osmanischen Reiches. Pest, 1834, S. 96–98.

խօսքն է թէ ամէն նորածին կը բերէ իր հետ աշխարհ՝ միտութիւն դէպ ի խալամութիւն: Եթէ արծարծուի այդ բերումը քրիստոնեայ մանուկներէ կազմուած բանակին մէջ, դիւրին պիտի ըլլայ այնուհետեւ անոնց միջնորդութեամբ խալամութեան հրապուրել իրենց հայրենակիցներն եւ այսպէս պիտի աճի եւ ընդարձակուի անոնց բանակը: Առ այս կը խորհրդածէ Համմէր. «Այս դժոխային ծրագիրը, որ պիտի ապականէր քրիստոնեայ մանկտին եւ պիտի նպաստէր մահմեդականութեան ծաւալումին, աննախընթաց է հին եւ նոր ժամանակներու զինուորական բռնակալութեան մէջ»:

Ի սկզբան առնուեցան այն նպատակով քրիստոնեայ գերիներու մանուկները. ապա, սկսեալ ԺԶ. դարէն, մանկահաւաքի ենթարկուեցան օսմանեան պետութեան սահմաններու մէջ գտնուող քրիստոնեայ տղաք: Երկու եւ աւելի տարիներ անգամ մը մանկաժողով կ՚ըլլար պետութեան զանազան նահանգներու մէջ երբ 1 առ 10 համեմատութեամբ կը խլէին բնիկ քրիստոնեայ ծնողներէն մանչեր եւ կը յանձնուէին Կ. Պոլիս զինուորական հրահանգանոց:

«Ենի չերի», նոր զօրք անունը ստացաւ այս բանակը: Այս զինուորները ոչ ազգ, ոչ հայրենիք, ոչ հայր եւ ոչ մայր կը ճանչնային. անոնք գիտէին միայն իրենց դրօշը: Սկզբնաւորութեան 1000 էր անոնց թիւը. Մահմէտ Բ.ի (1451—1481) օրով բարձրացաւ 12,

Սուլէյմանի օրով՝ 20, Մահմէտ Դ.ի (1648—1693) օրով՝ 40 հազարի:

Դարանաղցին աւանդութենէ լսած է, թէ Մաղաքիա վարդապետ երկրորդ անգամ մ'ալ գացած ըլլայ Կ. Պոլիս եւ խափանած մանկաժողովը Դերջանի եւ Կամախի շրջանին մէջ: Կը գրէ. «Եւ այլ ասեն, թէ Տղայաժողովն, որ եղեւ ի սուլթան Սէլիմի (°) աւուրսն, նա գնաց Վարդապետն ի յՍտամբօլ, այնքան աքնութիւն արար ի դրունս արքային եւ ժուժութիւն արար, մեծ սախով խնդրեաց տեսանել զերեսս արքային, մինչ ծանուցին Թագաւորին եւ նա կոչեաց առ ինքն եւ եհարց զՎարդապետն. Զի՞նչ խնդրես . . . ասէ Վարդապետն. Եթէ զտի շնորհս առաջի քո, նա կամ է ինձ զհարցուլումի (Կարնոյ) տղայ ժողվելն ինձ օժխտ այնես եւ ի տեղի զին տղայոցն սակաւ հարկս դնես: Եւ հաճոյ թուեցաւ Թագաւորին. հրամայեաց այնպէս լինել: Որ կու գայր տղայոց ժողովն մինչ ի Սեւաստ եւ անդից դառնայր եւ ոչ գայր ի մեզ: Եւ գիտեմք որ երեք տարին անգամ մի կու գայր հարկահանն տղայժողովին, որ օղլանջի ասակ ասէին: Եւ ի ժամանակն սուլթան Մուստաֆային, որ տղայժողով եղաւ՝ ի թվին ՌՀԲ (1623), որ ամէն աշխարհք ժողովեցին, գնացին որ ի Թէոդուպօլսի փաչալըխն այլ բռնութեամբ ժողովեն. աղօթիւք վարդապետին մեծին Մաղաքիին զօրացեր էր [յ]Աւպագան եւ չեթող մտանել յեր–

*կիրն, այլ հալածական արար»* (*անդ*, *էջ* 339—341):

*Այս աւանդութիւնը հաստատ է նաեւ Երեմիա Չէլէպիի ականջը գրաւոր աղբիւրէ մը Հ. Ղ. Ինճիճեան Մանկաժողովի մասին խօսելով կը գրէ. «Յետ ժամանակաց ինչ պատուէր եղաւ քրիստոնէից հպատակաց, ի* 10 *արու մանկանց զմին տալ արքային ի զինուորութիւն. որով գեղձեալ բազում անգամ՝ մանկունս յափշտակէին ի տանէ հօր իւրեանց ի մարզահարկ: Զայս մանկաժողով յաւուրս Ա. Սուլթան Սէլիմի սահմանեալ ասէ Երեմիա Չէլէպի. որ եւ թուէ զժողովերն նոցա ըստ կարգի թուականաց: Նախ ի* 1517 *յաւուրս Ա. սուլտան Սէլիմի. Բ. ի* 1519. *Գ. ի* 1531 *յաւուրս Ա. սուլտան Սիւլէյմանի. Դ. ի* 1549. *Ե. ի* 1590 *յաւուրս Գ. սուլտան Մուրատայ. Զ. ի* 1622. *յորում ժամանակի թագաւորէր ոչ Բ. սուլտան Օսման որպէս գնէ նա ինքն, այլ սուլտան Մուստաֆա կրկին թագաւորեալ. յայնմ ժամանակի բերին ի Հայոց եւ ի Պօշնագաց Յունաց՝ վեց երամս ի Ռումէլիէ, եւ երիս երամս յԱնատօլուէ. իւրաքանչիւր երամք* 110 *մանկունք... Է. ի* 1638 *յաւուրս Դ. սուլտան Մուրատայ: Ը. ի* 1668 *յաւուրս Դ. սուլտան Մէհէմմէտի: ...Եւ որպէս պատմէ անդէն, Դերջանցի Մազաքիա վարդապետն ի* 1543 *էառ ի Ա. սուլտան Սիւլէյմանայ* խադդիշէրիփ *այսինքն Հրովարտակ, մի առնել մանկաժողով ի Բաբերդ եւ ի Դերջան, որով բարձաւ, ասէ,*

յազգէ մերմէ մանկաժողովն․ նոյնպէս եւ Յոյնք ի սուլ. Սիւլէյմանայ առեալ էին խաղ–ղիչէրիփ․ բայց որպէս ցուցանեն յետագայ դիպուածք՝ չեղեն լսելի այն հրովարտակք: Մանկունք այսպէս ժողովեալք, ի զարգա–նալն իւրեանց՝ ոչ ճանաչէին ոչ զծնօղս եւ ոչ զհայրենիս, այլ միայն զդրօշակ իւրեանց[2]»:

Նոյնը կը հաստատէ Առաքել Դաւրի–ժեցի, իր համառօտ ժամանակագրութեան մէջ․ «ՋՂԲ (1543)․ Մաղաքիա վարդապետն Դերջնցի գնաց առ սուլթան Սուլէյմանն, եւ վերացոյց զաղայ ժողովելն հրամանաւ նորին ի Դերջանայ եւ ի Բաբերդու[3]»:

Երեմիա Չէլէպի Մաղաքիայի երթն Կ․Պոլիս առ Սուլէյման Ա․ կը նշանակէ 1543ին․ ուստի երկրորդ անգամ նոյն ճանա–պարհը ըրած է ան: Այս լիով կը համապա–տասխանէ ժամանակագրութեան, այնու որ Մաղաքիա վախճանած է 1545ին: Թէպէտ չունինք ժամանակակիցի մը վկայութիւնը, բայց Գրիգոր Դարանաղցւոյ, Առաքելի եւ Երեմիայի վկայութիւնները չենք կրնար մեր–ժել:

Հայ պատմագիրներու եւ Յիշատակա–գիրներու քով առաջին անգամ կը յիշուի Մանկաժողովը 1531ին: Այս տարւոյ համար իմանալու է ինչ որ կը գրէ Զամչեան (Գ.

[2] Ինճիճեան, Օսմանեան տէրութիւն որ յԵւրո–պա, Վենետիկ 1804, էջ 63 (Աշխարհագրութիւն չո–րից մասանց աշխարհի, Ե. 2):

[3] Պատմութիւն, Վաղարշապատ 1896, էջ 582—583:

512/3) . *«Սուլտան Սուլէյման իբրեւ դարձաւ ի Կոստանդնուպոլիս, խորհրդով եպարքոսին իւրոյ Իպրահիմ փաշայի հրամայեաց ժողովել զմանկունս ի Հայոց, ի Յունաց եւ յայլոց ազգաց. եւ որք ժողովէինն՝ բռնութեամբ յափշտակեալ զնոսա ի ծնողաց իւրեանց, տանէին ի պալատն արքունի, եւ դարձուցանէին զնոսա ի կրօնս իւրեանց. եւ սաստկացաւ դառնութիւն ողբոյ եւ կոծոյ հարց եւ մարց յամենայն տեղիս. եւ գրեաց ի վերայ այսր ի նմին ժամանակի ողբական բանս ոտանաւորաց Թադէոս վարդապետ Սեբաստացի»:*

*Այս Ողբը հասած է մեզի, բայց անանուն: Ստորեւ կը ներկայացնեմ զայն ամբողջութեամբ: Ողբէս այն տպաւորութիւնը կ՚առնեմ, թէ առաջին մանկաժողովն է այս հայկական գաւառներէն: Ողբին գրութեան տարին* 1531 *ճշդիւ կը համապատասխանէ Երեմիա Չէլէպիի ժամանակագրութեան:*

*Հ. Մ. Չամչեան երկրորդ մանկաժողով մ՚ալ կը յիշէ* 1543*ին. «Յետ քանի մի ամաց դարձեալ եղեւ այսպիսի մանկաժողով. եւ որք վերակացուք էին այսր գործոյ՝ բազում աղետալի գործս գործէին ընդդէմ կամաց թագաւորին. խորտակէին զտունս եւ կողոպտէին. ուրեք ուրեք այրէին եւ զեկեղեցիս. որպէս յԵւդոկիա ետուն այրել եւ քակել զութն եկեղեցիս միանգամայն ի միում աւուր. յապրիլի* 9, *ի Թուին Հայոց ՋՂԲ* (1593). *ըստ որում աւանդի ի Տարեգրու-*

Թիւն ինչ Հայոց. եւ իբրեւ դադարէր այս աղմուկ, Մաղաքիա վարդապետ ոմն Դերջանեցի՝ այր բանիբուն՝ եւ գնաց անձամբ առ սուլտան Սիւլէյման. եւ աղերս արկեալ առաջի նորա՝ ետ խափանել զժողովումն տղայոց ի Դերջանայ եւ ի Բաբերդոյ. մանաւանդ եւ այլք ի Հայոց, եւ հաճեցուցին զԹագաւորն. եւ նա հրամայեաց մի եւս այլ նեղել զոք վասն այնր բանի. բայց յետ այսորիկ եղեւ եւ յայլ ժամանակս բազում անգամ այսպիսի տղայաժողով» (Գ. 513): Ակնարկուած Տարեգրութիւնը հաւանօրէն Երեմիա Չէլէպիին է:

Երրորդ Մանկաժողովի մը մասին խօսք կ'ընէ Յովհաննէս Այնթապցի գրիչ մը ի Սեբաստիա: Սա 1585ին կ'օրինակէ Միքայէլ Ասորւոյ Ժամանակագրութիւնը, «ի քաղաքս Սեբաստիոյ... ի մէջ դառնութեանն... զի բռնութիւնն եւ չար հրամանն Թագաւորին սաստկացեալ էր ի վերայ մեր...: Զի յայսմ ամի առաքեաց զոմն ի նախարարաց իւրոց, որ եկն ի վերայ քրիստոնէից եւ զչար սահմանն կատարելով ի յերկիրս Սեբաստիոյ միայն երեքհարիւր մանկունս ժողովեաց. եւ արձակեալ ընդ ամենայն տեղիս զնոյն առնէր ի վերայ քրիստոնէական տոհմից: Բայց ես եղկելի գրիչս յէի (°) ըստ մանկութեանն հասակիս երբեմն փախչելով կայաք, երբեմն սարսելով...» (Էջմիածին, Թ. 1868): Այս Այնթապցւոյ գրչէն է նաեւ Վիեննայի Թ. 86 (Սամուէլ Անեցւոյ Ժամանակագրու-

*թիւնը, յամէ 1585. Տաշեան, Ցուցակ, էջ 356). եւ պէտք չէ շփոթել զինքը աւելի երէց համանուն Այնթապցւոյ հետ, որ յետոյ Կիլիկիոյ կաթողիկոսական աթոռը բազմեցաւ (Բաբգէն Կաթ. Կիւլէսէրեան, Պատմութիւն Կաթողիկոսաց Կիլիկիոյ, Անթիլիաս 1939, էջ 202)։*

Ողբ 1531 տարւոյ
Սեբաստիայի մանկաժողովին վրայ։

*Այս տաղէն երկու ձեռագիր ծանօթ են ինծի. Էջմիածին, Թ. 1636, թղ. 192բ—196ա (ԺԸ. դարէ) եւ Գէորգեան Բաժին, Թ. 281, թղ. 242ա—244բ (ԺԷ°. դար)։ Այս վերջինէն է Հ. Աճառեանի օրինակութիւնը, զոր ունիմ տրամադրութեանս տակ։ Երկու ձեռագիրներն ալ անանուն են։ Ինչպէս տեսանք վերագոյն, Հ. Մ. Ջամչեան Ողբիս հեղինակ կը ճանչնար Թադէոս Սեբաստացին (տես վերը, էջ 90). յամենայն դէպս Ողբիս ողբերգակը ականատես մըն էր 1531ին Սեբաստիա կատարուած Մանկաժողովին։*

*Հրատարակութեանս մէջ ուղղած եմ ինչ ինչ գրչագրական սխալագրութիւններ, ւ գրի անկում, յ գրի աւելադրութիւն։ Այլ ընթերցուածներ նշանակուած են սարուածքին մէջ։*

## ՈՂԲ Ի ՎԵՐԱՅ ՄԱՆԿԱՆՑ ՈՐ ԳԵՐԻ ՏԱՐԱՆ Ի ՔԱՂԱՔՆ ՍՏԱՄԲՕԼ

*Անեղ բնութիւն Աստուած Հայր ամենակալ,*
*Եւ Որդին միածին ի նմանէ ծնեալ,*
*Կամաւ Հոգւոյն սրբոյ մարմին ըզգեցեալ,*
*Օրէնք եւ պատուիրանք մարդկան աւանդեալ:*

*Որքան որդիք մարդկան պահէր Աստուած սիրեն.*
*Զօրէնս եւ զպատուիրանս նորա կատարեն.*
*Ի պարգեւսն Աստուծոյ նոքա վայելեն*
*Եւ զեկեալ պատուհասն յետ դարձուցանեն:*

*Արդ այժմ ամենեքեան յօրինաց[1] ելան,*
*Քահանայք կրօնաւորք եւ աշխարհական.*
*Եւ զանազան մեղօք միշտ աղտեղացան,*
*Վասն այն Մահմետականքըն յոյժ զօրացան:*

*Յինըն հարիւր 'ւ ութսուն մեծ թըվականին*
*Որ էր յազգին մերում Հայոց տումարին.*
*Ի թագաւորութեանն պեղծ Մահմէտ ազգին,*
*Յազգէն քրիստոնէից տըղայ խնդրէին:*

*Յորժամ զայս լըսեցին յոյժ զարհուրեցան,*
*Երկիրս Հայաստանեայց յոյժ վրդովեցան,*
*Որդիք իւրեանց ծնօղացըն բաժանեցան.*
*Գնացեալ օտար երկիր եւ յոյժ հեռացան:*

*Բազումք ի յանապատ տեղիս դիմեցին,*
*Ի յայր 'ւ ի քարակերպըս ժուժկալեցին.*
*Յրտոյ եւ անձրեւոյ յոյժ համբերեցին,*
*Յանօրինաց փրկելն յուսով խնդրեցին:*

---

[1] Զ. օրինաց:

Զամէն ցընոր թողեալ եւ զայս հոգային,
Զմարմնոյ պէտք եւ զկարիք մոռացեալ էին,
Ի սուգ 'ւ ի տրտմութիւն հանապազ կային,
Իբրեւ զալէկոծեալ նաւ ի մէջ ծովին:

Ի ժամ ձըմերային ցուրտ եղանակին
Եկեալ հրամանըն չար եւ առ մեզ հասին.
Զամէն տըղայքն ի մի վայրս ըմբըռնեցին,
Բանդ եւ զընտան եդեալ զնոսա պահէին:

Եւ ի քաղաքն առեալ զնոսա տանէին,
Ծընօղքն եւ ազգականքն ի հետ երթային.
Լալով եւ արտասուով աղաղակէին,
Եւ յուսահատութեամբ ի յետ դառնային:

Յորժամ առեալ զտղայքն եւ հաւանէին,
Զհայրենական ըզգեստն յանձնէն հանէին.
Բերեալ այլ նոր հանդերձ ագուցանէին,
Հարկանելով զծնօղսն ի բաց վարէին:

Յայնժամ վայ եւ եղուկ իւրեանց ասէին,
Հող ըզգլխոյն իւրեանց առեալ ցանէին.
Ձեռք ի յերեսս արկեալ արիւն հեղէին.
Զհերս ի վերայ որդւոց իւրեանց կըտրէին:

Ողորմագին դիմօք դառն արտասուէին,
Ծընօղքն եւ ազգականքն եւ եղբարք նոցին.
Մինչ զի զամենեսեան ի յողբ շարժէին,
Զոր ոչ կարէ պատմել լեզու մարդկային:

Սեւազգեստ լինէին քուրձ ըզգենուին,
Մոխրաթաւալ անձամբ աղաղակէին.
Տարակուսեալ հոգով ի տան նըստէին,
Հանգուցեալ մեռելոցն երանի տային:

Եւ այս մեծ արտմութիւն եղեւ ծնողաց,
Զորդիս իւրեանց առեալ եւ թողլին ի բաց.
Լալով բաժանեցին ի յազգականաց,
Օտար երկիր տարան խեղճ եւ գեղերած:

Որք ըմբռնաւ ածեն յան եւ արտասուեն,
Եւ ի խորոց սրտէ իւրեանց հառաչեն.
Ի յետ դարձուցանել զնոսա ոչ կարեն,
Եւ կենդանույն նոքա իբր ըմբռնեալ են:

Ոմանք օտար երկիր գնացեալ փրկեցան,
Ոմանք բազում արծաթ կաշառ խոստացան.
Եւ են որ վասն որդւոց զՔրիստոս ուրացան,
Որրոց եւ աղքատաց բազումք մատնեցան:

Ամենախնամ աջոյն Աստուած էր ստեղծեալ,
Եւ արեամբ Միածնին էր զնոսա գնեալ.
Մարմնոյ սուրբ եւ արեան Փրկչին հաղորդեալ,
Ոչ ազատեաց զնոսա, զի էր բարկացեալ:

Զի աւազանըն սուրբ էին մկրտած.
Եւ Հօրն երկնաւորի որդի անուանուած[2]
Եւ ոմանք սարկաւագ էին կարգացած,
Վասըն չարեաց մարդկան
ոչ խնայեաց Աստուած:

Եւ զարտասուսն ասեմ տղայոց անմեղաց.
Յորժամ որոշեցին զնոսա ի ծնողաց.
Պաշարեցին զնոսա նման գազանաց,
Քրիստոնեայ 'ւ այլ ազգի չարժեցան ի լաց:

---

[2] Զ. անուած:

Յորժամ բաժանեցին զնոսա ի ծնողաց,
Անդ եղեւ աղաղակ մեծ կոծումն եւ լաց.
Որպէս որ բաժանեն[3] զգառինսն ի մաքեաց,
Եւ եղեւ մեծ աղէտ տարակուսանաց:

Առեալ զնոսա յերկրէն իւրեանց եւ հանին,
Հարկիւ եւ բռնութեամբ ի Ստամպօլ տարին,
ԶՅիսուս Քրիստոս Փրկիչն ուրանալ տուին,
Զմոլար օրէնս իւրեանց նոցա ուսուցին:

Եւ այս վասն այն երեկ վերայ մեր, եղբարք,
Զի ոչ մընաց ի մեզ բարի գործք կամ վարք.
Նախանձեցան ընդ մեզ անօրէնք եւ չարք,
Վասըն մեղաց մերոց մատնեցան արդարք:

Ոչ սուր ի թշնամեաց էր զմեզ պաշարեալ,
Ոչ սով ի յԱստուծոյ էր առ մեզ եկեալ.
Եւ ոչ խաղաղ մահուամբ յաշխարհէս ելեալ,
Յանկարծ անօրինացըն գերի մատնեալ:

Արդ մեզ ամենեցուն պարտ է զայս ողբալ,
Եւ ի խորոց սըրտէ հառաչել եւ լալ.
Մինթէ մեզ քաղցրանայ Աստուած բարերար,
Այլ ոչ մատնէ ի ձեռն ազգին անիծեալ:

Զայս ոչ էաք լըսել ի մեծամեծաց,
Եւ ոչ աստուածային գըրոց մեզ պատմած.
Ոչ ոք ի մարդկանէ աչօք էր տեսած,
Զոր վերջին ժամանակըս մեզ պատահեաց:

---

[3] Զ. զբաժանեն:

Զի թէ հայրն Աբրահամ զորդին իւր զենէր,
Զպատուէրն ի յԱստուծոյ կատարել կամէր.
Եւ կամ Յեփթայի ըզդուստրն իւր զենէր,
Եւ զուխտն ընդ Աստուծոյ եղեալ վըճարէր:

Եւ թէ երեք մանկունքն որ ի հուրն անկան,
Սքանչելեօք Միածնին նոքա փրկեցան.
Եւ կամ ի Բեթղէէմ որ կոտորեցան,
Փոխանակ Քրիստոսի նահատակեցան:

Եւ թէ սուրբ քառասունքն որ ի լիճն արկան,
Լուսափայլ պըսակացն արժանի եղան.
Եւ որք վասն Աստուծոյ նահատակեցան,
Արքայութեանն երկնից դասակարգեցան:

Զի թէ մանկունքըն մեր նահատակած էր,
Եւ կամ վասն Աստուծոյ հըրով այրած էր,
Եւ կամ նըման սըրբոցըն քարկոծած էր,
Ազգին քրիստոնէից տեղ պարծանաց էր:

---

## Է.

# ԹԱԴԷՈՍ Վ. ԿՈՂՈՆԻԱՑԻ, ԹՈԽԱԹԵՑԻ ԵՒ ԹԱԴԷՈՍ ԵՐԷՑ ՍԵԲԱՍՏԱՑԻ ՏԱՂԱՍԱՑՆԵՐ

---

## Է.

# ԹԱԴԷՈՍ Վ. ԿՈՂՈՆԻԱՑԻ ԹՈԽԱԹԵՑԻ ԵՒ ԹԱԴԷՈՍ ԵՐԷՑ ՍԵԲԱՍՏԱՑԻ ՏԱՂԱՍԱՑՆԵՐ

## 1.

### ԹԱԴԷՈՍ Վ. ԿՈՂՈՆԻԱՑԻ (ԹՈԽԱԹԵՑԻ) ԱՇԱԿԵՐՏ ՄԱՂԱՔԻԱ Վ. ԴԵՐՋԱՆԵՑԻԻՑ ՏԱՂԱՍԱՑ (ԺԶ. ԴԱ )

*Կողոնիա ուշ ժամանակի Շապին Գարահիսարն է, այսպէս կոչուած պաղլեղի հանքէն, որ կը գտնուէր քաղաքին մերձաւորութեան (հմմտ. Պոնտական ուսումնասիրութիւնք, էջ* 301 *եւ շար.)։ Քաղաքս ունեցած է ի հնուց հայ բնակչութիւն։ Այս տեղ ծնած է Թադէոս, այս պատճառով ալ կրած է իբրեւ մականուն Կողոնիացի։ Իր ծնողաց անունները ծանօթ չեն։ Ծնունդը կարելի է դնել իբր* 1500*ին։ Իր կեանքէն ունինք հետեւեալ գծերը։*

1521*ին գտնուած է Երզնկա եւ կազմած Յայսմաւուրք մը։ Երբ Մաղաքիա Վ. Դերջանեցի կը վերադառնայ հայրենիք եւ կը սկսի դասախօսել, Թադէոս կ՚աշակերտի իրեն։ Մաղաքիա կը յիշէ* 1531*ին իր աշակերտներու թուին մէջ «տէր Թադէոսը», առանց մականունի։*

1534 տարւոյն կը գրէ. «Ես Թաթէոս վարդապետս Կղնցի (կարդա՛ Կողոնիացի) ի թվ. ՋՁԳ. գնացի յԵրուսաղէմ. եւ ի Հալապ գնեցի զԱրարածոց գիրքս յիշատակ ինձ եւ իմոցն յիշողացն» (Աճառեան, Ցուց. Թաւրիզ, էջ 26բ):

1548ին «Թադէոս Վ. Կողնցի» (Կողոնիացի) կը կազմէ Աւետարան մը (գրուած 1471). «ի թվլին ՋԽէ. յորժամ Կարմիր կատակն այրեց ի յԵզնկէն մինչեւ ի Խնուզ եւ չատ գաւառ այրեցաւ» (Ձեռ. Լազարեան Ճեմարանի, Թ. 26):

1562ին Ղազար գրիչ կ՚օրինակէ յԵրզնկա Մաշտոց մը, ուր կը խնդրէ յիշել «եւ զուսուցիչն իմ զԹաթէոս րաբունի վարդապետն, զի բազում աշխատանս կրեաց ընդ իս եւ ես անմիտս ոչ կարացի ուսանել լաւ» (Կարին, Արծնեան Վարժարան, Թ. 36. Ցուց. Քօսեան, անտիպ):

Այս Կողոնիացին է, որ նուիրած է իր ուսուցչին՝ Մաղաքիա Դերջանեցւոյ «Անձինք» մը, որ ընծայական մըն է, ներկայացուած հաւանօրէն վարդապետական աստիճանի ստացումին նախօրեակին, իրր 1532ին: Անկէ վերջն է, որ Թադէոս վարդապետ ուխտագնաց կ՚ըլլայ Երուսաղէմ: Վերադարձին թէ ո՞ւր հաստատուեցաւ եւ իր դասարանը ո՞ւր բացաւ, չէ վկայուած: Ան կենդանի էր 1562ին. Ղազար Երզնկացի, իր աշակերտը, որ իբրեւ սարկաւագ ձեռնարկած էր Մաշտոցի օրինակութեան, աւարտած է զայն ի

քահանայութեան Երզնկա։ Անկէ չենք կրնար հետեւցնել, սակայն, թէ իր ուսումը առ ոտս Թադէոս րաբունւոյ նոյնպէս Երզնկա առած է։

Այս շրջանին կը յիշուի ձեռագիր Տաղարաններու մէջ Թադէոս Վ. Եւդոկիացի կամ Թոխաթեցի մըն ալ, որ երգած է զանազան տաղեր, այցելած է Երուսաղէմ եւ երգած սուրբ Տեղեաց գովքը։ Տաղարանները իր տաղերու խորագրին մէջ կ'անուանեն զինքը Թաթոս, Թադէոս Թոխաթեցի Մղտեսի, Թադէոս սարկաւագ, մահտեսի, նաեւ Թադէոս վարդապետ։ Հ. Մ. Պոտուրեան, որ առաջին անգամ քննութեան առաւ տաղասացս եւ հրատարակեց անոր 8 անտիպ տաղերը, նկատի առնելով, որ այդ տաղերը կը տեսնուին արդէն 1604ին գրուած տաղարանի մէջ, կը դրէ անոր ժամանակի մասին. «կրնամ վստահութեամբ ըսել, թէ Թոխաթեցի Թադէոսը ապրած է ԺԶ. դարու կէսէն վերջ, 1550ի առեններ ծնած. եւ կա՛մ այն է՝ որ մտերիմ ընկերն եղած է Ստեփանոս Թոխաթեցի Տաղասացին՝ եւ կամ ուսուցիչը» (ԲԶՄ. 273)։ Բայց չի բերեր որ եւ է վկայութիւն այսպիսի եզրակացութեան յանգելու համար։

Ինձ անծանօթ է ԺԶ. դարուն ծաղկած Թադէոս Վ. Թոխաթեցի։ Այս անունով միակ վարդապետը, որ կը յիշուի այս դարուն՝ Թադէոս Վ. Կողոնիացին է։ Կայ Տարօնի Գլակայ վանքը Թադէոս եպիսկոպոս մը, գովուած իբրեւ առաջնորդ վանքին, բայց

*չէ վկայուած, թէ ան դատաստանց վարդապետ եղած ըլլայ:*

*Պարզ զուգադիպութեան արդիւնք պէտք է համարել, որ Կողոնիացի եւ Թոխաթեցի Թադէոսները թէ վարդապետ են, թէ տաղասաց եւ թէ Երուսաղէմի այցելու: Թոխաթեցի վարդապետ բացի տաղերէ որ եւ է հետք ձգած չէ պատմութեան մէջ եւ ոչ ալ ԺԶ· դարու յիշատակագիրները խօսք ըրած իր մասին, գոնէ որքան ինձ ծանօթ է: Այս պատճառով կը միտիմ նոյնացնել երկու Թադէոսները այն մտածութեամբ թէ ան «Կողոնիացի» մականուանած է ինքզինքը ծննդեան քաղաքին անունով, իսկ ուրիշներ կոչած են զինքը Թոխաթեցի, Թոխաթ գործած ըլլալուն համար, յամենայն դէպս 1534էն առաջ: Տաղերուն մէջ ան անուանած է ինքզինքը «Թաթոս». մէկ անգամ նաեւ «Զայս* բանս Թոխաթցի *Թաթոսն ասել է». բայց ուրիշ ձեռագիրներ այդ տողը կը կարդան. «Զայս* բանիերս որ լսեցիք, *Թաթոսն ասել է»:*

*Ուրիշ տաղի մը մէջ Թադէոս ներկայացուած է «սարկաւագ» աստիճանի մէջ, ասկէ Յ. Քիւրտեան անուանած է «Թադէոս սարկաւագ Թոխաթեցի», որպէս թէ ան բոլոր տաղերը սարկաւագութեան տարիներուն երգած ըլլայ: Կան նոյն տաղին այլ ձեռագիրներ ալ, որոնք այս «սարկաւագ» յորջորջումը բոլորովին անտեսած են:*

*Թադէոս ունի թէ գրաբար եւ թէ ռամկախառն հայերէնով տաղեր եւ գանձեր: Թէ*

գրաբար հայերէնով երգերէն մին կամ միւսը հնագոյն Թաղէսի՞ մը վերագրելու է, չեմ կարող վճռել:

Ռամկախառն լեզուով գրուած տաղերը թէ ըստ բովանդակութեան եւ թէ ըստ ոճի մէկ տաղասաց կ՚ենթադրեն:

Խնդրական կը մնան այն երկու անանուն տաղերը, զորոնք Հ. Մ. Զամչեան Թաղէոս Վ. Սեբաստացւոյ կը վերագրէ: Բայց Թաղէոս անուն Սեբաստացի տաղասացը լոկ երէց էր եւ ոչ վարդապետ եւ վախճանած է 1542ին, ուստի 1551էն 9 տարի յառաջ, երբ գրուած է «Դաւիթ Թագաւորին որդի Սողոմոն» սկզբնաւորութեամբ ողբը: Այս Սեբաստացի Թաղէոս երէցի վրայ պիտի խօսիմ առանձին գլխով: Ինձ կը թուի որ թէ՛ այս Ողբը եւ թէ 1531ին գրուած «Անեղ բնութիւն» սկսուածքով Ողբը Թաղէոս Վ. Կողոնիացւոյ պէտք է վերագրել:

Հ. Մ. Պոտուրեան ձեռնարկած էր հրատարակել Թաղէոս Թոխաթեցւոյ իրեն ծանօթ 10 հայերէն եւ 20 թուրքերէն երգերը: Առաջին 8 տաղերը տուաւ Բազմավէպի մէջ վերապահելով ձեռագրական տարբերակները առանձին հրատարակութեան, որ լոյս չտեսաւ:

Թաղէոս Թոխաթեցւոյ մասին գրած են.

1. Հ. Մ. Պոտուրեան, Միջնադարեան տաղասաց Թաթոս Թոխաթեցի: Բազմավէպ 1910, էջ 207—208, 273—282:

2. Հ. Ն. Ակինեան, Թաթոս Թոխաթեցի Հանդ. Ամս. 1910, էջ 284—285:

3. Յ. Քիւրտեան, Միջնադարեան հայ տաղասաց Թաթոս սարկաւագ Թոխաթեցի: Հայրենիք ամսագիր, 1935, Թ. 11, էջ 74—82:

Ստորեւ պիտի տամ Թադէոս տաղասացի ինծի ծանօթ գրուածքներու ցանկ մը, ջանք տանելով նշանակել մէն մի տաղի ձեռագիրներն եւ տպագրութիւնը, դիւրացնելու համար Տաղասացիս տաղերու ամբողջական հրատարակութիւնը:

Հ. Մ. Պոտուրեան ունեցած է իր տրամադրութեան տակ Վիեննայի ԺԵ (յամէ 1640), ԺԶ (1563 եւ 1604 տարիներէ), Ստեփաննոս Թոխաթեցւոյ 1606ին գրուած, Պարտիզակի եւ Մոսողեան Տաղարանները: Վերջինս տեսած եմ եւ ես ի Վիեննա եւ 1924ին Երեւան տարած եւ յանձնած Երուանդ Շահազիզին, որ Նոր-Նախիջեւանէ ուղարկած էր զայն Նորայր Բիւզանդացւոյ՝ օգտուելու համար: Յ. Քիւրտեան կ'օգտուի իր սեփհական, 1678ին գրուած Տաղարանէն: Այն տաղերը, որոնք մատչելի եղած են ինծի, նշանակած եմ թուով եւ թղթով:

Համառօտութիւնք.

Ա.ձ. Տղ. եւ Ա.ձ. Գնձ. = Այսպէս կ'անուանեմ այն Հաւաքածոյքը, զոր կազմած է Հ. Աճառեան, արտագրելով Էջմիածնի եւ Թաւրիզի ձեռագիր Տաղարաններէ եւ Գանձարաններէ եւ ինձ նուիրած:

Անտ. = Անտոնեան Հայց Ձեռագիրք. այժմ ի Զմմառ:

ԲԶՄ = Բազմավէպ:

Բեռլին = Բեռլինի Պետական Մատենադարանի հայերէն ձեռագիրք:

Բրիտ = Լոնտոն, British Museum ի հայերէն ձեռագիրք, ըստ Ցուցակին C. F. Conybeare ի:

Երեւան = Պետական Թանգարանի ձեռագիրք. այժմ Մատենադարանի մէջ:

Զմմառ = Զմմառի Հայոց Վանքի ձեռագիրք, ըստ դասաւորութեան Ն. Վ. Բէշիշեանի: Ձեռագիրները ուսումնասիրած եմ անձամբ եւ ինչ ինչ օրինակած:

Էջմ. = Էջմիածնի Ձեռագրատուն. այժմ Երեւան, Մատենադարան:

Հայրենիք = Հ. ամսագիր. Պոստոն:

Ձ. Կ. = Ձեռագիր Տաղարան Կերյա քաղաքի Հայոց Եկեղեցւոյ (Ժէ. դարու առաջին կէսին գրուած). այժմ արտագրուած է Վիեննայի Թ. 797:

Մոսող. = Մոսողեան Տաղարան, այժմ Երեւան, Մատենադարան:

Շաւարշ. = Շաւարշ Վ. Սահակեանի (ի Թոխաթ) 1—3 Տաղարանները, որոնց ցուցակագրութիւնը ուղարկած էր ինձ 1913ին:

Վիեննա = Վիեննայի Մխիթարեան Մատենադարանի ձեռագիրք:

Քիւրտեան 1678 = Յ. Քիւրտեանի Տաղարան, գրուած 1678ին:

*Կը հետեւիմ տաղերու այրուբենական կարգին։*

1․ Անձինք ի Կողոնեցի Թադէոս վարդապետէ առ իմաստուն վարդապետն իւր Մաղաքիա Դերջանեցին։

*Այրէն մինչեւ ի քէն գդըրեանքն ունեալ*
*ես.*
*Բաներս ես ո՞ւմ ասեմ, երբ դու քաջ*
*գիտես...*

վջ․ *Բանզի այրէն եկի, քեզ նըման դու ես։*

= *Զմմառ*, 328, *թղ.* 45*ա*—46*բ* (*Ժէ*)։ *Անտ.* 124, *թղ.* 16*ա*—17*ա*։

*Այս տաղը պիտի հրատարակեմ վարը ամբողջութեամբ։*

2․ Թաթոսի ասացեալ։

*Աստուած աներ եւ աննըման,*
*Երկրպագեմք Երրորդութեան.*
*Դու զօրաւոր ես եւ միայն,*
*Որ ամէն բան է քեզ յէեան...*

վջ․ *Թաթոսն ասաց զայս բանս յիւրմէ,*
*Նա մեղաւորս եւ անպիտան...:*

= *Զմմառ*, 172, *թղ.* 68*ա*—69*բ* (*Ժէ*) *Մոսով*, *էջ* 57—59։ *Քիւրտեան*, 1678։

*Հրտ. ԲԶՄ.* 1910, *էջ* 274—275։ *Հայրենիք*, 1935, *Թ.* 11, *էջ* 76։

3․ Տաղ հոգւոյ Թաթոսի ասացեալ։

*Ես յուսով հաւատով առ քեզ յուսանամ,*
*Ազախին եմ արեամբ գընած քո ծառան.*

վջ. *Թաթոս, քեզ ճար արա, այս կեանքս*
*օթեւան.*

*Ոնց որ չէ դոչեր փողըն Գաբրիէլեան:*

= *էջմ.* 1639, *թղ.* 153*բ* (*Ժէ*): *Տաւարչ*, 1, *էջ* 164—166: *Տ.* 3, *էջ* 254—256:

*Հրտ. ԲԶՄ.* 1910, *էջ* 275:

4. Աւետիս Ծննդեան:

*Երուսաղէմ քաղաք մի կայ, աւետիս.*
*Մեզ թողութիւն ի հոն լինայ, աւետիս..*

վջ. *Թաթոսն ասաց դայսքան բաներս աւե-*
*տիս.*

*Աչօք տեսեր զԳողգոթան, աւետիս:*

= *Մսոող*, *էջ* 261—264: *Ֆիւրտեան*, 1678 (*սկիզբը պակաս*):

*Հրտ. Հայրենիք*, 1935, *Թ.* 11, *էջ* 78:

*Հմմտ. ԲԶՄ.* 1910, *էջ* 208 *ծն. եւ* 274:

5. Մեղեդի Ծննդեան:

*Թաղաւոր փառաց խոնարհեալ ի հայրա-*
*կան ծոցոյ*

վջ. *Սըրբասաց ձայնիւն աղաղակեն առ*
*Քրիստոս Աստուած. Փառք քեզ:*

*Տողերու սկզբնագրերը կը կազմեն.* Թա-
դէոս:

*Հրտ. ԲԶՄ.* 1875, *էջ* 351: 1910, *էջ* 274:

*Զեմ գիտեր, թէ ի՞նչ ձեռագրէ առնուած է այս Մեղեդին: Այլուր չեմ պատահած անոր:*

6. Գանձ Մեծահրաշին:

*Թագըդ ահաւոր, տէր ու զօրաւոր,*
*Հօր քո միաւոր, որ եաղ երկնաւոր···*
վջ. *Բամք սուրբ հանդիսի, նոր նորոգեացի*
*Հայոց աշխարհի:*

*Տնակապ գրերը կը յօդեն.* Թաթէոսի է խնդրեաց Գրիգոր:

= *Թաւրիզ*, 43, *թղ.* 274*ա* = *Ա.Ճ. Գանձ. թղ.* 389:

*Ձեռագիրը իրր* 1550*էն է:*

*Ո՞վ է այս տեղ Գրիգոր, որուն խնդրանքով Թադէոս կը գրէ այս Գանձը: Խլաթեցին կարող չէ ըլլալ, որովհետեւ ԺԵ. դարու Գանձարանները չունին այս Գանձը:*

7. Տաղ Թադէոսի ասացեալ:

*Թէ կ՚ուզես որ հոգւոյդ ճար դու անես,*
*ԶԱստուծոյ սէրն ի քո սըրտէդ չը հանես···*

վջ. *Թադէոս, թէ դու զայս բաներս երգեր ես*
*Ամէն բանի վերայ շատ աշխատեր ես,*
*Կ՚ուզես որ դու քեզի յիշատակ չինես,*
*Որ տեղ որ բան ասես, ՚ւ ազօրմիս լըսես:*

= *Ճաւարշ*, 3, *էջ* 280—283:
*Հրտ. ԲԶՄ.* 1910, *էջ* 275—276:

8. Ի վկայն Միրաք († 1486):

*Ինն հարիւր թուին երեսուն եւ հինգ ամին···*

= *Երեւան*, 373, *թղ.* 88*ա*:

*Տաղէս հանուած քաղուածքս ինձ չհասաւ։ Միրաք Թաւրիզեցւոյ վկայաբանութիւնը հրատարակուած է Հայոց Նոր Վկաները. Վաղարշապատ 1903, էջ 322—328։ Հրատարակիչները՝ Յ. Մանանդեան եւ Հ. Աճառեան անծանօթ մնացած են տաղիս, որ հաւանօրէն նահատակութենէն շատ վերջը երգուած պէտք է ըլլայ, եթէ հեղինակը տաղասաց եւ ոչ այլ համանուն մ'եղած է։*

9. Տաղ ողբալ ի Թաթէոս վարդապետէ Եւդոկիացւոյ (ի Ս. Յովհաննէս Մկրտիչ Տարօնոյ)։

*Իսկ եւ տատրակդ գառն Աստուծոյ վկայեալ,*
*Մատամբ ցուցեր հաստատանէ մեզ յայտնեալ*
*Նա խոնարհեալ ի Յորդանան քեզ դիմեալ յառաջեալ...*
վջ. *Զայս երգել ձեզ առ ի լինիլ հրճութիւն, հրճութիւն։*

*Տուներու սկզբնագիրները կը կազմեն.* ի Թադէոսէ։

== *Աճ. Տղ. Թղ. 203ա։*

10. Տաղ ազնիւ Թաթոսի ասացեալ վասն խաչի։

*Խաչն եղիցի մեզ պահապան,*
*Յայժմ հետէ մինչ ի վախճան...*
վջ. *Թաթոսն ասաց զայս բաներս,*
*Նա Քրիստոսի անպէտ ծառայն...։*

= Զմմառ, 178, թղ. 88ա—89ա: Վիեննա, 671, թղ. 67ա—68բ: 663, 66ա: Մոսող, էջ 252—254:

Հրա. Հայրենիք, 1935, Թ. 11, էջ 81—82:

11. Տաղ Թաթուլի ասացեալ:

*Կայթեա սուրբ կաթուղիկէ եկեղեցի*
*եւ պարէ.*
*Զմանկունըս քո ժողովէ, ի յօրհնութիւնս*
*հրաւիրէ...:*

*Վերջաւորութիւնը ծանօթ չէ ինձ:*

= Երեւ. 110, թղ. 22ա (Ցուց., էջ 283):

*Ուրիշ ձեռագիրներ տաղիս հեղինակը կը ճանչնան Մարտիրոս վարդապետ. այսպէս Էջմ. 1639, թղ. 209ա—211ա (ԺԷ), որ կը խորագրէ. «Տաղ Եկեղեցւոյ խիստ ազնիւ ի Մարտիրոս վարդապետէ ասացեալ»: Վիեննայի Թ. 157, թղ. 17ա: 577, թղ. 67ա: 401, 108ա (վերջին 5 տուները կրճատած): Թաւրիզի Թ. 43, թղ. 339բ—340բ = Ա.ճ. Գանձարան, թղ. 460 (խորագիրն՝ «տաղ Ծաղակաթի», «տաղ Աշխարհամատրան Եկեղեցւոյ»): Վերջին տունը ունին.*

*Մարտիրոս բարունակեան երգեալ է,*
*Յականց վանեաց գովեալ է...:*

*Այս Մարտիրոս Վ. բնիկ Պոլեցի է, բնակութեամբ Բաղիշեցի. ունինք իրմէ պատուական Յիշատակագրութիւն մը, գրած*

*1463ին ի Բաղէշ, իբրեւ ականատես Տարօնի Յովհաննէս եպիսկոպոսի վկայութեան (Փիրղալէմեան, Նօտարք, էջ 213): Ունի մեղեդի մը եւ երկու գանձ:*

*Այս տաղին երգիչ ուզած է ըլլալ նաեւ Զաքարիա անուն գրիչ մը. վերջին տան երկու տողերը չրջելով.*

*Զաքարիաս գոյս երգէ,*
*Հարսինդ աւետարանէ...:*

*Ինչպէս ունի Քիւրտեան Տաղարան 1678: Թէ ի՞նչպէս տայս Թադէոսի ընծայուած է, չգիտեմ: Պէտք է աչքի առաջ ունենալ Բրիտ. 110:*

12. Տաղ ազնիւ Թաթուէ ասացեալ:

*Հայր Աստուած գըթած եւ ողորմած...*

*= Ծաւարչ, 3, էջ 222—225:*

*Տաղս այլուստ անծանօթ է: Իսկ Ծաւարչ վարդապետի Տաղարանը անհետացած 1915ի դէպքերուն:*

13. Տաղ ի վերայ սուրբ Երուսաղեմայ Թաթոսի ասացեալ:

*Հա՛յ մտաք յամխան մարտին,*
*Ծառերն ամենայն ծաղկին...*

վջ. *Թամթոսն երետ գոհութին,*
*Զրաներս ասաց տնօրէնին.*
*Աչօքն է տեսեր գաեղին,*
*Լոյսն ելնէ Հայոց գատկին:*

= *Էջմիածին*, 2394, *թղ*. 170*ա* (*ԺԷ*)։ *Երեւան*, 383, *թղ*. 156*բ* (1611)։ *Կոստանեանցի Տաղարան* 1617*էն*։

*Հրտ*. *Արարատ*, 1910, *էջ* 381։ *ԲԶՄ*. 1910, *էջ* 279—280։ *Հմմտ*. *Կոստանեանց*, *Նոր ժողովածոյք*, *Գ*., *էջ Զ*։ *ԲԶՄ*. 1862, *էջ* 67 = *Յուշիկք*, *Ա*., *էջ* 184. *միայն առաջին տունը*։

14. Տաղ ասացեալ ի յԱդամայ մինչեւ ի Քրիստոս[1] (*այլք*՝ «Տաղ սրբոց Հայրապետացն[2]». *ուրիշներ*՝ «Ոտանաւոր եւ տաղ ի Թոխաթցի մղտեսի[ց]ի Թաթուէն ասացեալ վասն տնօրէնութեան Քրիստոսի»[3])։

*Հազար կենդանակերպ Աստուած*
*ստեղծել է.*
*Զամէնն Ադամայ հնազանդ արել է*...։
վջ. *Զայս բաներս որ լսեցիք, Թաթոսն*
*սսել է*...
*ոմանք*՝ *Զայս բանս Թոխաթցի Թաթոսն*
*ասել է*[5]...։

= *Էջմ*. 1639, 176*ա* (*ԺԷ*)։ 2394, 6*ա* (*ԺԷ*)[5], *Երեւան*, 395, 74*բ* (1620)[2]։ 649, 92*ա*[5]։ *Աճ*. *Տղ*. 204*ա*[1]։ *Անտ*. 136, 362*բ*—365*ա* (1633)[1]։

*Հրտ*. *ԲԶՄ*. 1910, *էջ* 276—279[4, 5]։

15. Տաղ հոգւոյ Թաթոսի ասացեալ։

*Հոգին մարմնոյն ասաց, թէ Այլ ճար*
*չունիմք.*
*Մեք սուրբ զԱստուածածինն բարեխօս*
*խնդրեմք*։

*Մարմինն հողույն ասաց. ԶԱստուած*
*աղաչեմք.*
*Քրիստոս աստուածորդին մեզ հաշտեցը-*
*նեմք...*
Վջ. *Թաթոսն ի վրայ հողուն մէկ բան մի*
*ասաց.*
*Ով որ զհողին զըրկէ, պիղծ է, անի-*
*ծած...:*

= *Երեւան*, 383, *Թղ.* 244*ա*: 395, *Թղ.* 123*ա*: *Մոռոզ.* *էջ* 41—48: *Վիեննա*, 797, *Թղ.* 263*ա*—265*բ* = *Ջ. Կ.* 390*ա*: 1002 *Թղ.* 8*ա* (1654): *Ծաւարչ*, 3, *էջ* 195—203: *Քիւր-տեան Տղ.* 1678: *Անտ.* 124, *Թղ.* 25*բ*:

*Հրտ. Հայրենիք* 1935, *Թ.* 11, *էջ* 79—81: *Վերնագիրը ոմանք ունին՝ «Տաղ վասն հոգեշահի ասացեալ ի Թաթէոս սար-կաւագէ»:*

16. Ողբ ազնիւ Թաթոսի:

*Յորժամ Գաբրիէլ գոչէ*
*եւ յառնեն մեռեալքն ի հողոյ,*
*Կէսքն լուսափայլ յառնեն*
*աստեղաց նըման գունըզգուն...*
(Վջ. *Գէմ քան ըղթարթել ական՝*
*մահն ի մօտ է Ադամորդւոյն:*)
= *Երեւան*, 383, *Թղ.* 234*ա* (1611):

*Այս տաղը ձեռագիրներու մէջ անանուն կը տեսնուի: Պոտուրեան հրատարակած է զայն Առաքել Սիւնեցւոյ տաղերու շարքին. Առաքել Սիւնեցի եւ իր քերթուածները. Վենետիկ* 1914, *էջ* 258—262: *Տպուած է նաեւ*

*Ա. Կանայեանցէ, Ցուցակ ձեռագրաց Ներսիսեան Վարժարանի, Թիֆլիս* 1893, *էջ* 60—61 *իբրեւ Տաղ Դատաստանի, եւ Ա. Զօպանեանէ, Անահիտ* 1902, *էջ* 27: *Առաջին անգամ այստեղ երեւան կու գայ տաղիս հեղինակի անունը «Թաթոս»:*

17. Տաղ հոգւոյ Թաթոսի (ի Թոխաթցի մհտեցի Թաթոսէ):

*Յորժամ յարեւելից ի դատաստան գաս,*
*Երեւիս արդարոց, նոցա պըսակ տաս…*
կջ. *Թաթէոս ասէ՛ զմեղքն եւ գործէ՛*
*գրարին…*

= *Էջմ.* 1639, 154*բ* (*վերջէն պակաս*): *Աձ. Տաղ.* 207*ա* = *Գեւ.* 281, 60*բ*: *Ծաւարչ*, 3, *էջ* 203—207: *Մոսոզ*, *էջ* 170—172: *Քիւրտեան Տղ.* 1678: *Բրիտ.* 110, 32*ա*:

*Հրտ. ԲԶՄ.* 1910, *էջ* 280: *Հայրենիք*, 1935, *Թ.* 11, *էջ* 76—77:

18. Այցելութիւն սուրբ Տեղեաց:

*Սուրբ Յարութիւն պարծանք է եկեղեց–*
*ւոյ.*
*Եւ հրաշալի Ծընունդ մէջ Բեղխահէմայ.*
*Երթանք ի սուրբ Սիոն վասն աղօթելոյ.*
*Ընեմք ի Վերնատունն սուրբ խորհըր–*
*դոյ…*
կջ. *Թաթոս, յէ՞ր ես պարապ դու զօրն ի*
*լալոյ.*
*Միթէ չե՞ս տեսնէն անտէն գընալոյ:*

= *Երեւան*, 383, *Թղ.* 158 (1611, *առանց խորագրի*):

19. Թաթոսի ասացեալ։

*Տէր արարիչ արարածոց,*
*դասուց անթիւ ես 'ւ անհամար.*
*Զհողն ի ջրոյն բաժանեցեր,*
*եւ ի վերայ ջուրցըն նըստար...*

վջ. *Գերի Թաթոս մըտօք յիմար,*
*մեղօք դարձեր ես կունահքար։*
*Ընդ ամէնը 10 տող։*

= *Հրտ. ԲԶՄ.* 1910, *էջ* 281։

*Այս տաղը Վիեննայի Թ.* 344, *թղ.* 38։ 671, *թղ.* 15։ *Ճաւարչ*, 1, *էջ* 162—164 *ունին Թորոս Տարօնացւոյ անուամբ, ինչպէս ուշադիր ըրած եմ Հանդ. Ամս.* 1910, *էջ* 285։

20. Այլ տաղ Թաթոսէ։

*Քրիստոս որդի Աստուծոյ,*
*Փրկեա զհոգիս ի հրրոյ...*

վջ. *Թաթոսըն լայ ողբալի,*
*Վերայ մեղացն որ ունի։*

*Էջմ.* 2394, *թղ.* 64*ա*։ *Երեւան*, 383, *թղ.* 258։ 395, *թղ.* 176*բ*։

*Հրտ. ԲԶՄ.* 1910, *էջ* 281—282։

Թուրքերէն տաղեր։

*Հ. Մ. Պոտուրեան կը հաւաստէր թէ իրեն ծանօթ են Թադէոսի գրչէն 20 թուրքերէն տաղեր, զորոնք մտադիր էր հրատարակել հանդերձ հայերէն թարգմանութեամբ։*

*Ես տեսած եմ միայն հետեւեալները:*

1· *Իլլահի արգանի ջրան*
*պէնի տխտարուայ դարչու···*
վջ· *Թամթօուրն տիլակի հախտան···:*

= *Էջմիածին*, 2394, *թղ*· 159*ա*: *Երե-ւան*, 383, *թղ*· 109*ա*:

2· *Յաճայիպ հօրայիմ տէր Իսան*

*կէլ թափառուճ գըլ սինեայի···:*

= *Երեւան*, 383, *թղ*· 107*բ*:

3· *Ճասս Թամթուսի է ասացեալ:*

*Յեսայ քի նուր խտի նուրտան, աւետիս· Թուն ալտի Մարիամտան, աւետիս···:*

= *Վիեննա*, 797, 273*բ*—274*ա*: *Բրիտ*· 105, *թղ*· 170*ա* (1597):

4· *Տօղտուղուայ ինանմակին չունքի տօղան*
*օլսի տուր···:*

= *Երեւան*, 383, 108*ա*:

5· *Պատմութիւն տնօրէնութեան Քրիստոսի:*

*Տօրթ քիթապուն պու նիաթի*
*դուցսի մուպարաք տէտուր···*
վջ· *Թամթօս տէտի պու սօզի···:*

= *Երեւան*, 383, *թղ*· 109*բ*: *Ջմմառ*, 404, 101—103*բ* (1642):

## ԱՆՁԻՆՔ

Ի Կողոնեցի Թադէոս վարդապետէ
առ իմաստուն վարդապետն իւր Մաղաքիա Դերջանեցի:

*Այրէն մինչեւ ի քէն գղըրեանքն ուսեալ ես.*
*Բաներս ո՞ւմ ասեմ երբ դու քաջ գիտես.*
*Գըրեմ, մեծ Րաբունի, զիմ պանդատըս քեզ.*
*Դու ես խոր Վիպասան, այլ ո՞ւր երթամ ես:*
*Եղէ ես քան զձընձղուկ միայն ի տանիս.*
*Զերդ մէն կաքաւ շըջիմ չիւար ի լերինս.*
*Էթէ օտար եմ ես, պարտ է որ ժողովես.*
*Ընդ բանս իմաստութեան զհիւանդս կերակրես:*
*Թիւս կիզաւ, քան զարծուի տկար անկայ ես.*
*Ժամանեա զիս յաղբիւրդ, որ նոր նորոգես.*
*Ի յեղջերու նըման կուսի ըմբռնես.*
*Լըւա զջուրն ի թինից, զծարաւս արբուցես:*
*Խոր ես իմաստութեամբ, համեղ աղբիւր ես.*
*Ծարաւ եմ քան զեղջիւր, զիս ընդէ՞ր զըրկես.*
*Կընդրուկ, զըմուռ, հիրիկ եւ կինամոն ես,*
*Հասար ի յիմ շըրթունս, զխորհուրդըս յայտնես:*
*Ձագասէր հաւալսան հաւուն նըման ես,*

*Խորագիրն* A *ունի. ի Թադէոս վարդապետէ առ վարդապետն իւր ասացեալ.* B *Անձինք... վարդապետ Մաղաքիայ Դերջանեցին:*

7 AB *եթէ:*

11 A *ի յեղջերոյ... ըմբռնիս.* AB *կուսի:* — 13—16 B չունի *Խ. Ծ. Կ. Հ.* տողերը: — 14 իմացիր՝ *զեղջերու:*

15 A *հրիկ:*

17—18 AB *ալասան.* այս *երկու տողերը նկատի ունին Վարդան Արեւելցւոյ Սաղմոսաց Մեկնութիւնը,*

Դամպար ախթիւ արեամբըդ գլխ յարուցես.
Ճըչեմ որպէս ծիծառն, զի նուաղեցայ ես.
Մարգարէր սուրբ բըժիշկ, գունկդ ինձ խո-
նարհես:
Յերկրատաան ականց վախաս կարմեալ ես.
Նըչան առ իս արա, զէմ դաւանակ ես.
Ծինես զաւնդ ի մայրեաց, սուրբ խոնաւ-
հաւ ես.
Որպէս զորդիս այրեաց անյարկ մընամ ես:
Ջրքնաղ պայծառ գունով քանզփրամարդ ես.
Պանտըխտեցայ ի քէն՝ կամ քան զատարակ
ես.
Ջեռմեռանդ վառեցաւ սուրբ սէրդ իմ
սըրտիս.
Ուահ ձաւապայթեալ խաւար խորհըրդիս:
Սիրով ձաձանչացաւ լոյսդ ի յիմ հոգիս.
Վարդագոյն բորբոքեալ կամի կիզուլ զիս.
Տենչմամբ հայցեմ ի քէն եռակի մեծ ես.
Բարունոյ նըման՝ զարդէոքս ժողովես:
Յօդով հիւթ իմաստիւք ձոխ պերճացեալ ես.
Իիւսեա զանձրեւ քո յիս, առչորեցայ ես.
Փութով չառ խընդրեցի ի սուրբ զըրեանքն
ես.
Քանզի այրէն եկի, քեզ նըման զու ես:

ուր կ'բառի. «Աւեն գհատարան որդեակէր, մինչ չեր-
թայ ի բունոյն բերել որս. եւ ի ներքեյ ձագուցն՝ սպա-
նանէ կայով. եւ ապա հանէ արիւն ի յանջացն, եւ
տանու ջուր ի բերանն, եւ ոռոկէ, յետ երեք աւուր,
եւ կենդանանան» (ՆՀԲ):
20 A ըժիշկն. A խոնարհեց:
29 A ձանձացաւ:
32 A բարունոս:
34 A սխաղ B սխալեա:

## 2.

## ԹԱԴԷՈՍ ԵՐԷՑ ՍԵԲԱՍՏԱՑԻ ՏԱՂԱՍԱՑԻ

### (ԺԶ. ԴԱՐ)

*Հ· Մ· Չամչեան, Պատմութիւն Հայոց, Գ·, էջ* 512—513 *կը գրէ· «Սուլտան Սիւլէյման իբրեւ դարձաւ ի Կոստանդնուպօլիս, խորհրդով եպարքոսին իւրոյ Իպրահիմ փաշայի հրամայեաց ժողովել զմանկունս ի Հայոց, ի Յունաց եւ յայլոց ազգաց, եւ որք ժողովէինն՝ բռնութեամբ յափշտակեալ զնոսա ի ծնողաց իւրեանց, տանէին ի պալատն արքունի, եւ դարձուցանէին զնոսա ի կրօնս իւրեանց· եւ սաստկացաւ դառնութիւն ողբոյ եւ կոծոյ հարց եւ մարց յամենայն տեղիս· եւ գրեաց ի վերայ այսր ի նմին ժամանակի ողբական բանս ոտանաւորաց Թադէոս վարդապետ Սեբաստացի»:*

*Այս «ողբական բանք ոտանաւորաց» առանց տարակուսի, ինչպէս Ողբին բովանդակուէն կը զգացուի, այն Ողբն է, որ անանուն կը գտնուի Տաղարաններու մէջ այսպիսի խորագրով եւ սկզբնաւորութեամբ·*

1· Ողբ ի վերայ մանկանց որ գերի տարան ի քաղաքն Ստամպօլ:

*Անեղ բնութիւն Աստուած հայր ամենակալ··*

= *էջմ·* 1636, *թղ·* 192*բ*—196*ա* (*ԺԸ*): *Գեւ·* 281, *թղ·* 242*ա*—244*բ* = *Ա.ճ· Տաղարան, թղ·* 28*ա*:

*Հրտ· Հանդ· Ամս·* 1952, *էջ* 592—595 *եւ տստ, էջ* 90—97:

*Զամչեան այս Ողբին հեղինակը կ'անուանէ «Թադէոս Վ. Սեբաստացի»։ Այսպիսի անձնաւորութիւն ծանօթ չէ մեզի 1531էն յառաջ եւ ետքը ի Սեբաստիա, երբ եւ ուր գրուած է այդ Ողբը։ Բայց անուանի էր այս շրջանին ի Սեբաստիա Թադէոս երէց եւ դպիր։*

*Նոյն Զամչեան կը գրէ թէ 1550ին «Շահ Թահմազ... զօրաժողով եղեալ՝ եկն էառ զբազում տեղիս ի տէրութենէն Օսմանցւոց, ընդ Արարատեան աշխարհն՝ եհաս մինչեւ ի Բարձր Հայք. եւ ասպատակ սփռեալ աւերեաց սրով եւ հրով զերկիրն Կարնոյ, եւս եւ զԲասեն, զԴերջան, զՍպեր, զԲաբերդ, եւ զԿեղի՝ մինչեւ ցԾղնկոյ. եւ ի գերութիւն վարեաց զբազումս ի Հայոց, շրջեալ յաշխարհս մերում աւելի քան զտարի մի, այս ինքն է՝ յամի Տեառն. 1550. եւ 1551. մինչեւ ի լրումն հազարերորդ թուականին Հայոց։* Յորոյ վերայ ցաւագին ողբայ Թադէոս վարդապետ Սեբաստացի՝ *աղետալի նկարագրելով զաւեր աշխարհիս մերոյ՝ որում եղեւ ականատես. զորոյ զբանն քաղեալ դիցուք աստ: «Ի լրանալ, ասէ, հազարամեան թուականիս մերոյ՝ շարժեցաւ ի վերայ աշխարհիս Հայոց ազգ Ղզլպաշից՝ մանրել եւ մաշել զմնացորդս արամեանց...»։ Յայս վայր են բանք Թադէոսի Սեբաստացւոյ (Գ., էջ 513—515)։*

*Այս ամփոփոյքէն յայտնի կը տեսնուի, որ Զամչեան իր ձեռքի տակ ունի հետեւեալ գրութիւնը.*

2. Տաղ վասն շարժման Կարմիր գրխոյն.

*Դաւիթ արքային որդին Սողոմոն*
*զայս մեզ քարոզէ.*
*Թէ զով որ Աստուած սիրէ,*
*հանապազ ըզնա խրատէ:*
*Յորժամ հազար ամ լըցաւ,*
*թըւական Հայոց տումարին* (1551),
*Ազգ մի Ղըզըլպաշ ասեն,*
*շարժեցաւ նըման վիշապին...:*

*Ընդ ամէնը* 365 *տող. հասած մեզի ա–նանուն:*

= *Կերլա, թղ.* 133*ա*—137*բ* = *Վիեննա*, 797, *թղ.* 88*ա*—91*ա*: *Երեւան*, 383, *թղ.* 220*ա*: 649, *թղ.* 80*բ*: *Անտ.* 124, *թղ.* 37*ա*—41*ա*: *Ա.Ճ. Տաղ. թղ.* 52*ա*:

*Հրտ. Հայաստանում, Բ., էջ* 593—595 (*քաղուածաբար*): *Յ. Քիւրտեան, Հայաստանեայց Եկեղեցի*, 1942, *էջ* 410. 1943, *էջ* 186—187:

*Ուստի նաեւ այս Ողբին հեղինակը, ըստ Զամչեանի, Թադէոս Վ. Սեբաստացին է:*

*Զամչեանի ազդեցութեան տակ գտնուած է Սոմալեան, որ իր* Quadro*ին մէջ կը գրէ. Ստեփաննոս Սալմաստեցի կաթողիկոսին ժամանակակից է «Թադէոս Սեբաստացի, որ թողուցած է մեզի ռամկօրէն լեզուով*

*Ողբ մը իր աղետալից ժամանակի տխուր անցքերու մասին, եւ մէկ քանի տաղեր զանազան բովանդակութեամբ, որոնք տուն մը ռամկօրէն հայերէն եւ տուն մը թուրքերէն յօրինուած են»* (Quadro, *էջ* 146 = Neumann, Versuch, 229)։ *Ակնարկուած են Թադէոսի «Դաւիթ արքայի որդին» Ողբը եւ հայերէն*(°)–*թուրքերէն տաղերը*։

*Այսպէս նաեւ Հ. Ղ. Ալիշան, Յուշիկք, Բ., էջ* 125 *«Թադէոս Սեբաստացին կը դասէ ԺԶ. դարուն ծաղկած տաղասացներու թուին մէջ։ Ալիշանին կը հետեւի Տրդատ եպիսկոպոս Պալեան, Բիւրակն*, 1900, *էջ* 597, *որուն համաձայն «Թադէոս Սեբաստացի, հայ աշուղ մը, որ ապրած է եւ ծաղկած ԺԶ. դարուն մէջ, երգած է զանազան խաղեր, երգեր ու տաղեր։ Իր երգերէն առ ձեռն պատրաստ չունինք մենք»*։

*Ալիշան չի յիշեր ոչ Թադէոս Թոխաթեցւոյ եւ ոչ ալ Համանուն Կողոնիացւոյ գոյութիւնը. ուսկից կը տեսնուի, որ ան «Թաթոսը» նոյնացուցած է Սեբաստացւոյ հետ, ինչպէս իրմէ յառաջ Սոմալեան*։

*Մեզի ծանօթ է ի Սեբաստիա Թադէոս երէց կամ քահանայ մը, որ հեղինակն է հետեւեալ երկու տաղերու*։

3. Անխորագիր։

*Այլ ես նուաստ հոգւով տըկար,*
*Եւ անպիտան փըծուն յիմար...*

վջ· Ես Թադէոս հոգւով չիւար,
Ձձեզ կ'աղաչեմ հարք եւ եղբարք·
Թող, թէ չեղաւ բանս ի յարմար,
Մէկ Հայր մեղայ մ'ասէք ի չար:

= Բերլին, Թ· 100, Թղ· 314ա (1548):

4· Այլ բան ի Թաթոս Երիցուէ:

Բարբառելով առ ձեզ գոչեմք,
Բարախմամբ ըզսիրտըս պատառեմք...

վջ· Յայտնի եղեւ սիրտն ի լըման,
Յաւարտ թխտիս զոր գրեցան·
Սեբաստիա տեսուտ ցանկան,
Խօճայ Թամար ազնուական·
Ունի բազում քեզ պատասխան,
Բայց այս չափովըս գըրեցան...:

Տնակապ գրերը կը յօդեն. Բանք Թաթոսէ:

= Բերլին, Թ· 100, Թղ· 314ա—բ:

Ո՞վ է այս Թաթոս երէց: Յովասափ Սեբաստացի իր ծնողները կ'անուանէ «տէր Թաթէոս եւ Ճահփաշա» եւ «տէր Թաթէոս գրիչ եւ երիցկին Ճահփաշա» (Վիեննա, 172, Թղ· 13ա· Ցուցակ, էջ 488): 1548ին ի մի հաւաքած է Յովասափ իր տաղասացութիւնները· այս հատորին մէջ գետեղած է նաեւ վերոյիշեալ երկու տաղերը: Նոյն տեղ արձանագրած է «Թաթէոս քահանայի» յիշատակը· որ ոչ այլ ոք է, բայց եթէ իր տէր հայրը: Կը ներկայացնեմ այդ հատուածը·

«Այսմ աւուր յիշատակ է Թադէոս քահանային:

Սա ի Սեբաստիոյ էր. եւ ի տղայութենէ սնեալ էր ի վանորայս սրբութեամբ. եւ էր խոնարհ սրտիւ եւ հնազանդ. հեզ հոգով եւ մարմնով, խնամող աղքատաց եւ ուսուցանող անձանձիր: Եւ էր հմուտ ամենայն գրոց Հին եւ Նոր Կտակարանաց: Մինչ զի յամենայն աւուր պարապէր գրոց եւ քարոզէր ժողովրդեան զաստուածային բանն՝ առեալ զժողովուրդն առանձնանայր: Եւ արուեստիւ գրագիր. զոր բազում գիրքս աստուածայինս գրեաց աշխատութեամբ:

Եւ ի ժամ վախճանին հարցաք թէ է՞ր պատարագ ոչ առնէիր (Զ. –էին), որպէս զայլ քահանայսն: Եւ նա պատմեաց, թէ այս քառասուն ամ է, որ կարգաւոր եմ. եւ երկու [ամ] կամ երեք պատարագ մատուցի: Խիստ ժիր եւ յամենայն կիրակէի եւ ի շաբաթու: Յաւուր միում կազմեցի զնշխարսն եւ ասացաք զսաղմոսն. եւ զեռ եւս ոչ ժողովեցան ժողովուրդք. սակաւ մի ննջեցի: Եւ տեսի ի տեսլեան, զի մեծ եւ անհուն գետ մի յընթացս. եւ կամուրջ մի կայր ի վերայ ջրոյն, բարձր անչափ. միայն հետք: Եւ տեսի զիս ի վերայ կամրջին եւ երթայի մինչեւ ի ծայր եւ դառնայի. եւ ոչ եղանէր ի ցամաք, այլ կտուր էր կարմունջն. կար բարձրագոյն տեղ եւ ||| (3 գիր անընթեռնլի). զի երթայր ի կէս գետոյն վերայ. եւ այլ ոչ կայր. եւ զարհուրեցայ. եթէ անկանիմ ի գետս ան-

*հուն, ո՞վ է որ փրկէ զիս: Եւ հայեցայ ի մէջ գետոյն, յայն կոյսն որ կուր էր. եւ տեսի ահագին հնոց ի վառման, եւ եռանէր բոցն սաստիկ եւ աճապարէր բոցն առ ի յայրել զկարմունջսն. եւ սասանէի ես: Եւ ահ մեծ անկաւ ի վերայ իմ եւ դողումն ի յանհուն գետոյն եւ ի հրոյն: Եւ գողայր կարմունջն. եւ ես ընդ նմա սարսէի: Եւ ահագին տեսլենէս զա(րթե)այ. եւ իմացայ որ անհուն գետն բազմութիւնք աշխարհիս է. եւ հուրն սրբութիւնն: Եւ ո՞վ է որ անահ մերձենայ ի նա: Եւ այլ ոչ կամեցայ անարժանիս պատարագել:*

*Եւ պատուէր եդ՝ ոչ առնել զինքն քահանայաթաղ, այլ որպէս աշխարհի յոռի մարդ: Եւ ապա աւանդեաց զհոգին իւր առ Աստուած յունիսի ԺԴ. թվին ՋՂԱ. ի փառս Քրիստոսի Աստուծոյ մերոյ» (Բեռլին, 100, թղ. 253բ):*

*Այս համառօտ կենսագրութիւնը կ՚երեւայ թէ նաեւ ոտանաւոր գրել փորձած է: Նոյն ձեռագրին մէջ թղ. 253ա կը կարդանք կարմրագիր.*

*«Եւ գժամանակն իւր կենաց*
*Ի վանորայս էր նա սնած.*
*Խոնարհ կացուն եւ ընդունած,*
*Հայէր ի վարս առաքինեաց:*
*Էր քարտուղիչ ի յարւեստաց,*
*Եւ քաղցրախօս հետ աղքատաց,*
*Յարւեստէ ի ծաղկողաց,*
*Յօրինիչ ոսկւոյ եւ յաճախարդաց:*

*Բազում լինէր պատճառ բարեաց:*
*Հրամանք ի վերուստ ժամանեաց,*
*Եւ զնա փոխեաց աստի կենաց.*
*Եւ մեք եղաք խիստ դեքերաց,*
*Որպէս զոչխարս ենք մոլորած…»:*

*Յովասափ* 1548*ին գրած իր մէկ տաղին կցած է տողերս* (*Բեռլին*, 100, *թղ.* 307*ա*):

*Եւ ծնողաց իմոց վարժողի գըրխս,*
*Թադէոս քահանայ յիշատակ լիցի:*

*Թադէոս երէց ունեցած է երեք զաւակ. Յովասափ, Գրիգոր* († 1548) *եւ Անդրէաս* (*անդ*, *թղ.* 306*ա*, 307*ա*):

*Ունինք իր գրչէն հետեւեալ Յիշատակարանները.*

ա. 1507. *Կ'աւարտի Մաշտոցի մը օրինակութիւնը «ի քաղաքս Սեբաստիա, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին եւ սուրբ Լուսաւորչին. ի թվին Հայոց ՋԾԶ. ի սեպտեմբերի ամսոյ ԻԱ. գրեցաւ ձեռամբ անարժեանի եւ անիմաստ վատթար գրչի սուտանուն Թաթոսի.*

*Որ ձեւ ունիմ քահանայի*
*Եւ ի գործոյն եմ յոյժ հեռի.*
*Մեղօք լցեալ ազգի ազգի,*
*Բարեաց թափուր եւ եղկելի…:*

*Կարին, Արծնեան Վարժարան, Թ.* 46 (*Յուց. Հ. Յ. Քոսեանի*):

Բ. 1517 կ'օրինակէ նոյնպէս Մաշտոց. «Գրեցաւ... ձեռամբ նուաստ եւ ներդեւեալ դպրոյ մեղապարտ Թադէոս երիցու ի քաղաքի (քերուած, իմացիր Սեբաստիա), ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի եւ սուրբ Լուսաւորչին, ի թուականիս Հայոց ՋԿԶ...»: Ստացողն է Յովհաննէս աւագերէց Տիվրիկցի Տարեխենց: Յիշատակարանին կցած է գրիչը ոտանաւոր մը, որ այսպէս կը սկսի.

Աւագերէցն հոգելի,
Տէր Յովհաննէս Տիւրիկեցի
Որդի ունէր խիստ ցանկալի...

Ճանիկեան, Հնութիւնք Ակնայ, էջ 85:

Գ. 1528. «Աստանաւր յանդ ելեալ կատարեցաւ Ոսկի Փորիկս ի քաղաքս Սեբաստիոյ, ընդ հովանեաւ ամենաւրհնեալ սուրբ Աստուածածնին եւ սուրբ Լուսաւորչին, ձեռամբ նուաստ Թադէոս իրիցոյ ի թվին ՋՀԷ» (Նիկոսիա, Թ. 46):

Այս Սեբաստացի գրիչն Թադէոս երէց, որ վախճանած է 1542ին, կարող էր թերեւս 1531ին ողբերգել Մանկաժողովը, բայց չէր կրնար ողբալ 1551ի աղէտները:

Կը մնայ միայն ենթադրել թէ Զամչեան եթէ իր ձեռքի տակ ունեցած Տաղարանի մէջ իրօք կարդացած է այդ երկու Ողբերու հեղինակի անունը «Թադէոս Վ. Սեբաստացի», հարկ է զայն նոյնացնել Թադէոս Վ. Կողոնիացւոյ — Թոխաթեցւոյ հետ: Երկու տա-

ղերն ալ նկատի ունին քաղաքական անցուդարձեր. անոնց նկարագրութիւնը ազգային տեսակէտով կարող էր նկատուիլ գանգատ տիրող պետութեան դէմ եւ այսպէս վտանգի ենթարկել ողբերգողը: Այս պատճառով պիտի զգուշանար հեղինակը իր անունը ստորագրել այդ տաղերու տակ իր կենդանութեան: Իր մահէն ետքը երկրորդ մը կարող էր սխալիլ Հեղինակի մականունին մասին. մանաւանդ երբ տեսնէր, թէ Հեղինակը ականատես էր 1531 դէպքերուն, որոնք տեղի ունեցած էին Սեբաստիա: 1548—1551 տարիներու կռիւներուն ժամանակակից էր Կողոնիացի Թադէոս վարդապետը:

Կը յիշեմ այստեղ նոյն դարէն Վարպետ Թադէոս Երզնկացին ալ. իրմէ է յիշատակագրութիւնս. «Դարձեալ ի թվին Հայոց ՋԾԲ (1503) վերստին եւ նորոգել զուրբ Աւետարանս Սատաթիաթուն թառն պր. Շահինշային . . . : Նորոգեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ Թադէոս Վարպետին Եզնկացոյն» (Երեւան, Պետ. Թանգարան, Թ. 99):

Զ.

# ՍԱՂԱՂԱՅ ԵՐԷՑ ՈՍՏԱՆՑԻ

## ՏԱՂԱՍԱՑ (1450)

Սաղաղայ ԺԵ.—ԺԷ. դարուն մասնաւորապէս Վասպուրականի շրջանին մէջ գործածուած անձնանուն է, ծագած արաբ. sadaqa «ողորմութիւն» բառէն (Աճառեան, Հայերէն անձնանունների Բառարան, Դ., 338) համազօր մը Աստուածատուր անունին:

Այսպէս կոչուած է նաեւ Ոստանցի երէց տաղասացը, ինչպէս կը տեսնուի իր ստորագրութենէն «Սիրով սիրելի Որդին» տաղին տուներու սկզբնագիր տառերու մէջ, որոնք կը յօդեն «Սաղաղին է այս բանս»: Իր երէց ըլլալը կը վկայեն տաղերուն վերնագիրները՝ «Ոստանցի Սաղաղայ երիցուն»:

Սաղաղայ ապրած եւ ծաղկած է ԺԵ. դարու երկրորդ եւ երրորդ քառորդին: Երուսաղէմի Թ. 1193, որ կը պարունակէ Սաղաղայի երկու տաղերը, գրուած է 1476ին: Այս տարին հաստատուն կռուան մ'է մեզի տաղասացին գործունէութիւնը այս թուականէն յառաջ ենթադրելու:

Դժբախտաբար սակաւ են մեր տեղեկութիւնները իր կենսագրութեան մասին: Ծնած

ըլլալու է իրր 1425/55ին։ Ստեփանոս դպիր 1453ին օրինակած է, յայտնի չէ ո՞ւր, Աւետարան մը, Խաչատուրի համար. այս Խաչատուրի կինն է Արուս խաթուն եւ որդիք՝ Սաղաղա եւ Յովհաննէս, եւ դստերք Հայ խաթուն եւ Հալիմ խաթուն (Լալայեանց, Ցուցակ Վասպուրականի, էջ 419)։ Չեմ կրնար հաստատել թէ հոս տաղասաց Սաղաղայի՞ մասին է խօսքը։ Յամենայն դէպս իրեն կը հայի հետեւեալ յիշատակարանը. Գրիգոր դպիր Սուլտան Մէլիք տիկնոջ համար կը գրէ Աւետարան մը Աղթամար, զոր ստացողը կը նուիրէ Ոստանի Ս. Ստեփանոս Նախավկայի եկեղեցւոյն. այս առթիւ յիշել կը խնդրուի «զպատուական եւ զընտրեալ քահանայքն Ոստան քաղաքին, զպասաւորք սուրբ Ստեփանոս Նախավկային՝ զմեծ փիլիսոփայքն (երգեցողները) զՍտեփանոս Սաղաղէն եւ զորդի նորին զԱտոմ, զՍտեփանոս Համիթենցն եւ զԱտոմ որդի նորին, զՍտեփանոս եւ զՄարտիրոս, զԱւետիս եւ զԱտոմ եւ զԹաթէոս, որ բազում աշխատութեամբ սպասաւորեն սուրբ եկեղեցւոյս»։ Այս ձեռագիրը 1525ին գերի կ՚իյնայ Էգտինչէր բռնաւորին ձեռքը եւ կը փրկանաւորէ «ուսթայ Ատոմ» եւ միւսանգամ կը նուիրէ Ս. Ստեփանոս եկեղեցւոյ։ Այս տարւոյն եկեղեցւոյն քահանաներն են. տէր Ատոմ Համիթենցն, եւ միւս տէր Ատոմն (Սաղաղե՞նցն), Կարապետ եւ այլք (Լալայեանց, անդ, էջ 415—417),

*Այստեղ ուշադրութեան արժանի է, որ Սադաղայ երէց փիլիսոփայ երկանուն կը ներկայացուի Ստեփանոս–Սադաղայ. եւ որդին է Ատոմ. կը յիշուին նաեւ Ստեփանոս Համիթենց եւ նորին որդի Ատոմ: Այս վերջինը կը յիշուի 1525ին տակաւին կենդանի. նոյնպէս «միւս տէր Ատոմ», որ հաւանօրէն Սադաղայի որդին է: Ասոնք առ նուազն 75 տարեկան հասակի մէջ ըլլալու էին, ուստի ծնած 1450ին մօտաւորապէս: Կրնանք ասկէ հետեւցնել, թէ 1452ին Սադաղայ երէց ըլլալու էր իբր 25ամեայ մը: Ան մնաց մինչեւ իր մահը Ոստան, իբրեւ պաշտօնեայ Ս. Ստեփանոս եկեղեցւոյ, ունենալով իրեն յաջորդ իր որդին Ատոմ երէց:*

*Սադաղայի գրական աշխատանքներէն ծանօթ են մեզի Մեղեդի մը եւ Տաղ մը:*

## 1. ՄԵՂԵԴԻ ԾՆՆԴԵԱՆ

Մեղեդիս այս է յօրդայ.
Որ սա ելեալ է յՈստանեայ.
Երգող սորա տէր Սադաղայ,
Շնորհաց երէց եւ քահանայ:

*Հրաշալի խորհուրդ այսօր*
*մեզ երեւի,*
*Ստեղծողն առ ստեղծուածըն*
*խոնարհի.*
*Աստուած մարդ, մարդ եւ Աստուած*
*նոր խառընի.*
*Աւետիս որդւոց մարդկան,*
*մեզ պարգեւի:*

Երեւանի Թ. 519 ունի միայն այս չորս տողերը խազագրուած: Հ. Բ. Սարգիսեան երկիցս կը նշանակէ իբրեւ վերջին տող՝

Դասք հրեշտակաց եւ մարդկային
զՏէրն օրհնէին:

Այս չի համապատասխաներ առաջին չորս տողերու չափին: Հաւանօրէն յորդորակ տաղի մը վերջաւորութիւնն ըլլալու է յառաջ բերուածը:

Խորագիրը Երեւանի Թ. 519 ունի. «Մեղեդի յաւրգայ ի յՌստանեցի Սաղաղայ իրիցու: Վենետիկի Թ. 304, Թղ. 47ա. «Ծննդեան մեղեդի ի յՌստանեցի Սաղաղայ երիցու»:

Կափան Երուսաղէմի Թ. 1193 ունի.

Այս մեղեդոյս կ՚ասեն յորղայ.
Սայ ելեալ է յՌստանոյ...:

Ձեռագիրք. Երուսաղէմ, Ցուցակ Խաչիկեանի, Թ. 1193, Թղ. 93բ (1476): Վենետիկ, Թ. 304, Թղ. 47ա եւ 240բ (յամէ 1846, Ցուց., էջ 1142 եւ 1155): Երեւան, Պետ. Թանգ. 519 (1521): Զմմառ, Անտոնեանց Թ. 100, Թղ. 192բ (անանուն):

Ի մասին «յօրղայ»ի կը գրէ Հ. Աճառեան. «Ինձ թուում է թէ եղանակի անուն է, իբր թրք. yorγa «արագ գնացք ձիու» (Հայոց անձնանունների Բառարան, Դ., էջ 338):

## 2. ՏԱՂ ԾՆՆԴԵԱՆ ՈՍՏԱՆՑԻ ԵՐԻՑՈՒ

*Սիրով սիրելի Որդին*
*իջեալ յերկիր ի սորին.*
*ի կուսէն զգեցաւ մարմին,*
*ծընաւ ի Բեդղահէմին:*
*Ահեղ սքանչելիք լինին.*
*մոգքն յԱրեւելից եկին,*
*առաջնորդէր լոյս աստղին,*
*եկեալ տեսին զծնունդ կուսին:*
*Դողալով չայրըն մըտին,*
*մանուկ խանձարրոք տեսին,*
*Աստուած խաչեալ ի փայտին,*
*՚ւ արքայ նըստեալ յաթոռին:*
*Ահա որ տեսին ՚ւ ելին,*
*նըստեալ խորհուրդ առնէին.*
*եւ դարձեալ կըրկին մըտին,*
*ճըշմարիտ հաւատացին:*
*Ղալամ եւ քարտէս առին,*
*զինչ որ տեսին զայն գըրեցին.*
*գընծայս Աստուծոյ տըւին,*
*՚ւ աշխարհն իւրեանց գընացին:*
*Իսկ հովիւքն որ անդ էին,*
*ծընծղայս եւ փողս հընչեցին*

ԽՈՐԱԳԻՐ. Թ. 1193. *Սաղաղայ երիցու յՈստա— նայ տաղ: Անտ. Ի յոստանցի երիցու: Բերլ. Տաղ Ծննդեան ի յոստանցէ իրիցու: Տուներու սկզբնա— տառերը կը կապեն.* ՍԱԴԱՂԻՆ Է ԱՅՍ ԲԱՆՍ:

6 A *մողն.* H *մոգք:*
12—13 H չունի *՚ւ:*
16 H *հաւատային:*
20 H չունի *՚ւ:*
21 A *անտ:*
22 A *ձընձղայս:* A *փող:*

*Աստուծոյ փառըս տային,*
*հաշտութիւն քարոզէին։*
*Նըստեալ հայր Յովսէփ յայրին,*
*զարհուրեալ հրաշիւք Կուսին,*
*ըզՍողոմէ բերեալ Նըմին,*
*զմայրն Եւայ ետես յայրին։*
*Եկայք տեսէք հրաշազան,*
*ստեղծողն Ադամայ Նըման,*
*եկեալ Ադամայ փոխան*
*մաքառի ընդ սատանայն։*
*Ահա աւուրք ութ անցան,*
*թլփատել եկ Զաքարիայն․*
*ըզանունն Յիսուս եդին,*
*փրկիչ եղեւ Ադամայն։*
*Յորժամ քառասունքն եղան,*
*Կուսին առեալ ըզտըղայն,*
*տաճարին եկն յանդիման,*
*զոր եւ դրունք ինքնին բացան։*
*Սիմէոն կապեալ ծերն այն,*
*ի գիրկս առեալ ըզտըղայն,*
*Տէր արձակեա՛ ըզծառայն,*
*ստեղծողն օրհնեալ յաւիտեան։*
*Բանին հաւատաց ծերըն այն,*
*Աստուած դաւանեաց ըզտըղայն,*
*քաղաքըն դըղըրդեցան,*
*ջահիւք ընդ առաջ ելան։*

22/23 ընդ մէջ H կը կրկնէ 18րորդ տողը։
25 H *հայրն*։
27 H *սողոմ*։
30, 45 A *ստեղծաւղն*։
39 H *եկին*։
43 H *տէրն*։ AH *արձակեաց*։

*Առեալ Յովսեփայ զընծայն,*
*Կուսին ծառայէր Աննայն,*
*եւ փութով ի յետ դարձան,*
*յԵգիպտոս փախըստական:*
*Նշան հրաշից անդ եղան,*
*ձեռագործն յառիծ նըման,*
*յորժամ որ տեսին զարքայն,*
*անկեալ եւ խորտակեցան:*
*Սուրբ Կոյս խորան սըրբութեան,*
*որ ծընար զՔրիստոս մեսիայն,*
*լեր բարեխօս անխափան,*
*պահել ըզմեզ անսասան:*

Ձեռագիրք· *Երուսաղէմ*, *Թ*. 1193, *Թղ*. 82*բ* (1476): *Զմմառ*, *Անտոնեանց Թ*. 100, *Թղ*. 189*ա*—190*բ* (*ԺԶ*.): *Բեռլին*, *Թ*. 67, 177*ա*—178*բ* (1703): *Վենետիկ*, *Գանձարան Ա*. (°), *էջ* 138:

*Հրատարակուած՝ Տեւկանց*, *Հայերգ*, *էջ* 4—6:

*Մենք բնագիր առած ենք Անտոնեանց Թ*. 100 *եւ համեմատած Տեւկանցի օրինակին հետ*:

*Սաղաղայ երէց հետեւած է հոս Գիրք մանկութեան Քրիստոսի անվաւերականին* (*հմմտ*. *Անկանոն գիրք Նոր Կտակարանաց*, *Վենետիկ* 1898, *էջ* 41—42, 49—50, 60—65):

49 H *ըզտըղայն*:
54 H *ձեռագործքն յառած ն*.:
55 H *նոր արքայն*:
57—60 H չունի:

## 3. ՊՈՌԵՑԻ ՍԱԴԱՂԻ ԱՍԱՑԵԱԼ

*Երեւանի Մատենադարանի Թ. 5306 ձեռագրին մէջ գտնուած է Ֆրիկի «Ի վերայ եղբայրասպանին» տաղի («Օրհնեալ անուն արարողին» սկզբնաւորութեամբ) մէկ փոփոխակը, որուն առաջին տունը անընթեռնելի է: Վերնագիր կը կրէ «Պոռեցի Սադաղի ասացեալ»: Այս փոփոխակը հրատարակուած է 1936ին Երեւանի «Գրական թերթի» մէջ (հմմտ. Ֆրիկ. բանաստեղծութիւններ, Երեւան 1941, էջ 262, ծան. 36): Ինձ անմատչելի է այդ հրատարակութիւնը. անծանօթ է այլուստ նաեւ Պոռեցի Սադաղայ: Նոյն տաղին երկրորդ փոփոխակ մ՚ալ ունինք Աշըղ Քոչակ Վանեցւոյ անունով եւ «Ա՛յ սիրելիք, ականջ դըրէք...» սկզբնաւորութեամբ, զոր գտած է Տիրայր արքեպիսկոպոս Վենետիկի Թ. 1823 ձեռագրին մէջ եւ հրատարակած Ֆրիկ–Դիւան, էջ 551—554: Թէ այս երկու փոփոխակները իրարու հետ ի՞նչ համեմատութիւն ունին, կարող չեմ ըսել:*

*Ձեմ կարծեր թէ Պոռեցի Սադաղայ որեւէ աղերս ունենայ Ոստանցի Սադաղայի հետ:*

## Է.

## ԹԱՐՄԵՂ Վ. ԱՒԱՆԵՑԻ, ԿՈՉՈՒԱԾ ՎԱՐԱԳԵՑԻ

(1591—1608)

---

## Է.

# ԲԱՐՍԵՂ Վ. ԱՒԱՆԵՑԻ՝ ԿՈՉՈՒԱԾ ՎԱՐԱԳԵՑԻ

(1591—1608)

*Բարսեղ ծնած է Վանայ ծովի Աւան գիւղը. ասկէ կոչուած Աւանցի։ Իր ծնողներն՝ Ստեփաննոս եւ Խաթուն Բէկիջան. կը յիշուի եղբայրն՝ հիւսն Գրիգոր։ Իր քեռիներն են՝ Կարապետ Ջամալ Արարքեցի, բարունապետ փիլիսոփայ, որմէ ուսած է Մանրուսմունքը, եւ տէր Յովհաննէս քարտուղարն, որ պէտք է եղած ըլլայ իր գրչութեան արուեստի ուսուցիչը։ Կ՚ուսանի Վարագայ վանքին մէջ. ասկէ Վարագեցի յորջորջանքը։ Կը ստանայ վարդապետական իշխանութիւնը եւ կ՚ուսուցանէ Վարագի մէջ. իր աշակերտներն են տէր Զաքարէ (ապա պատրիարք), տէր Յովհաննէս, տէր Ներսէս, Ղազար սարկաւագ։ Կը գովուի իր ձայնը։ Զբաղած է նաեւ գրչութեամբ։ Փիրղալէմեան կը գրէ. «Բարսեղը վախճանուել է 1615 թուին Ամրտոլու վանքում»։ Բայց այս տարուոյն Ամիրտոլի մէջ վախճանողն է Բարսեղ Բաղիշեցի։*

*Ունիմ իր մասին Յիշատակարաններս.*

1. *Աւետարան, գրուած ի Վարագ, Բարսեղ աբեղայի ձեռքով. «Եւ գրեցաւ սա ի թուաբերութեանս Հայոց Ռ եւ Խ* (1591), *ի*

հայրապետութեան տեառն Մելքիսեդի եւ մերոյ աթոռակալութեան առաջնորդի սուրբ ուխտիս Վարագայ Ստեփաննոսի եւ Կարապետ բարունապետ քաջ եւ արի փիլիսոփայի, մականուն Ջամալ վարդապետի, ի մայրաքաղաքս վանօրէիցս ի Վարագ, ընդ հովանեաւ սուրբ Նշանիս, ձեռամբ անարժան եւ ստուտանուն Բարսեղ աբեղայի անարհեստ գրչի... զոտացող սուրբ Աւետարանիս զպարոն Հայրապետն... եւ զիս զանարժան գծող զԲարսեղ եւ զծնողքն (իմ) զՍտեփաննոսն եւ զՊէկիջանն եւ զհոգեւոր հայրն եւ զքեռին իմ զԿարապետ բարունապետ փիլիսոփայն մականուն Ջամալն... այլ եւ զաշակերտս մեր ...Զաքարէն, զտէր Յոհաննէսն, զտէր Ներսէսն, զՂազար սարկաւագն, զոնտես Կակոսն, որ աշխատեցան ի կոկել թղթին, եւ զտէր Փիլիպպոս վարդապետ որ կազմեաց զսուրբ Աւետարանս... (չարունակութիւնը՝ 1581—1584 տարուայ քաղաքական-պատերազմական անցքերու նկարագրութիւնը)։

Աւանդ գիւղը Խուլուչ կոչուած բոլորգիր Աւետարան. Գ. Ազանեան, Դիւան Հայոց պատմութեան, Ժ., էջ 33—38։ Նոյնը աւելի կամ պակաս կրճատումով՝ Սմբատեանց, Երնջակ, էջ 261—263։

2. Վենետիկ, Դ. Մանրուսմունք. «Ի թվիս ՌԽԳ (1594) ստացող տասիս Բարսեղ Վարագեցի, զսակաւ Տէր ողորմեսցէ գրեցի» (Պատուրեան)։

3. *Շարակնոց, ունի մանր յիշատակագրութիւններ. զորոնք յառաջ կը բերեմ.*

*«Զստացաւղ սորա զտէր Ներսէս վարպետն զաշակերտն մեր եւ զԲարսեղ Աւանցին գծողն յիշեցէք ... թվ. ՌԽԵ* = (1596 : *էջ* 759. *հմմտ. նաեւ էջ* 613) :

*«Յիշեցէք առ Քրիստոս զԲարսեղ գծող Վարագեցին. թվ. ՌԽԵ* (*էջ* 941. *հմմտ. նաեւ էջ* 78 *եւն*) :

*«Աւաղ զհարազատ եղբայրն իմ զհիւս Գրիգորն, որ հիւանդ եկեալ Աւանուց եւ փոխեցաւ ի Քրիստոս տղա հասակաւ ի դուռն սուրբ Նշանին Վարագայ. եւ երեր դառն սուգ. տրտում եւ տրխուր դիմաւք ցաւաւք եւ լալոտ աչաւք գրէի զՇարական սուրբ Աստուածածնին. թվ. ՌԽԴին: Աւաղ ափսոս զվարպետն հիւանդ...* (*էջ* 573, 139) :

*«ԶԶաքարիայ. Մատթէոս. Ներսէս»* :

*Բարսեղ երբեմն Վարագեցի եւ երբեմն Աւանեցի կը կոչէ ինք զինքը:*

= Paris, Bibliotheque de l'Ecole Spéciale des langues orientales vivantes, acquisitions No. 1028: Fr. Macler, Notices de manuscrits arméniens vus dans quelques Bibliotheques de l'Europe Centrale. Paris 1913, p. 151—153 = JA 1913, p. 651—666.

4. *Աւետիս քահանայ Մոկացի կ'օրինակէ Ոսկեփորիկ մը* 1602*ին Վարագի վանքին մէջ «ի յառաջնորդութեան սուրբ ուխտին Վարա–*

գայ տէր Ստեփանոս արքեպիսկոպոսին եւ ի դասաւորութիւն (ա՛յսպէս) տէր Բարսեղ վարդապետին, որ զկէս գրոցս գրեր էր· զքաղցրաձայն երաժիշտն, զրանաւոր ծիծեռն. Աստուած զինքն անսայթաքելի պահեսցէ ի պարծանս մեր: Եւ զիս զանարժանի տէր Աւետիս Մոկացի, որ զկէս գրոցս գրեցի եւ աւարտեցի ի քաղաքս Վան...: (Յիշեցէք) եւ զՅոհաննէս եպիսկոպոսն Վարագեցի որ զօրինակն շնորհեաց... եւ զԲարսեղ զծող Վարագեցին, որ զԺԴ տետր ճառքս գրեցի ըստ կարի իմում. եւ Աստուած ողորմի ասացէք ինձ եւ ծնողաց իմոց Ստեփանոսին եւ Խաթուն Բէկիջանին. եւ քեռուն իմոյ Կարապետ րաբունապետ փիլիսոփային, մականուն Ջամալ Արարքեցուն եւ միւս քեռուն տէր Յոհաննէս քարտուղարին... եւ տէր Ստեփանոս զառաջնորդ սուրբ ուխտիս Վարագայ եւ զտէր Ստեփանոս Ղաւղաջի մահդասին...:

Կաչառ երբեք ինձ սէր.
  Թէ մեղրով խառնեա ու կեր.
Ապա զիմ բաժինն բեր,
  դու առողջ լեր:
Ես գրագիր ու մեղրակեր.
  յաչաց լուսոյ եմ պակասեր.
Ապսպրանք ինչ եմ ասեր,
  Թէ հետ լուսոյն բեր:
Դու գըրգըրմած փուստ ալեւոր,
  որ ի յուժէ ես պակասեր.

՚ւ յաչաց լուսոյ չի մնացեր,
եկեղեցպան ես դու կացեր.
Ղաւղէն քեզնէ չի պակասեր,
զքեզ ի գիրս եմ յիշատակեր.
Ջան բէգահ ինձ սեր բեր,
որ ես ուտեմ զքեզ օրհնեմ:
Դու գնա սեւ սեւ ըուինդ կեր:

Գրեցաւ ի ՌԾԱ (1602) Թուականին Հայոց ի վրդովման ժամանակիս, որ այլազգիքն կու կոտորեն զմիմեանս . . .»:

— Դիւան Հայոց պատմութեան, Ժ., էջ Լ—ԼԱ:

5. Աւետարանի մը մէջ, որուն «վերջին» ստացիչն կ՚ըլլայ Ամիրխան, Բարսեղ նոր Յիշատակարան կը գրէ: «Դարձեալ յիշեցէք . . . եւ զտէր Ներսէս Վարագեցի կրօնաւոր որ կազմեաց զսուրբ Աւետարանս ի դուռն Աշտարակու սուրբ Աստուածածնին ի Թուականին Ռ եւ Ծէին (1608) ի հայրապետութեան տէր Մովսէսին . . .: Դարձեալ Աստուածողորմի ասացէք . . . Բարսեղ Վարագեցուն որ զյիշատակս գրեցի ի դառն ժամանակիս, որ Կարմիր գտակ շահ Ապասն տիրեաց բովանդակ Քրստոնեայ եւ եղեւ սով սաստիկ ի Վան եւ յՈստան, ի ծովու բոլորն առ հասարակ: Բ. եկաւ ի վերայ Վանայ եւ բազում մարդիկք մեռան ի սրոյ, ի սովոյ: Եւ միւսանգամ կամի գալ ի վերայ Վանայ. եւ ես փախեայ ի դուռն Աշտարակու սուրբ Աստուա-

ծածնին։ Զապագային Աստուած լաւ գիտէ։ Օրհնեալ է Աստուած . . . ։

— Լալայեանց, Ցուցակ Վասպուրականի, Թ. 111 (Աւետարան), էջ 255—256։

6. Փիրղալէմեան կը յիշէ Վանի Ս. Սահակ եկեղեցւոյ Յայսմաւուրքը, զոր գրած է Բարսեղ։ Դժբախտաբար յառաջ չէ բերուած Յիշատակարանը, ոչ ալ գրութեան տարին. բայց կ՚ըսուի թէ Յիշատակարանին վերջը գետեղուած են տողերս.

Վա՜յ ինձ հազար բերան
գի Աստուած բարկացաւ մեր մեղաց.
Եւ զվաստակն ժանգն առեց.
որ գրիւ մի ցորեն ցանեցինք,
Նա երեք կապիճ եղաւ։
Վա՜յ ինձ ասեմ ի յիմ մեղաց,
Զի վշտացայ ի յայլազգեաց.
զամիսն ի լեառն եղէ բնակած։

— Յայսմաւուրք, Դիւան, Ժ., էջ Լ։

Վիեննայի Թ. 663 տաղարանի մէջ Թղ. 12ա—բ, Առաքել Վ. Բաղիշեցւոյ «Ականջ դրէք բանիս որ պատուական է» տաղին վերջը կը կարդամ տողերս.

«Մեղօք լցեալ Բարսեղըն Վարագեցի,
Որ զայս քանի տաղերըս շարագրեցի,
Ով ոք առէ բերանիմ ինձ ողորմի,
Երկնից արքայութեանըն ժառանգ լիցի։
Ականջ դըրէք գըրոյս, ձեզ գանձատ ունի,

*Գրագըրի կերակուրն որ փըշրուկ լինի,*
*Ափսոս զադուր աչերս լուսոյ կը պակսի.*
*Մեղք ու մատղամէն ի վանից վըզին»:*

*Կը յաջորդէ Գր. Աղթամարցւոյ «Գարունն երեկ, պիւլպիւրն յայգին...»:*

Գրութիւնք:

*Հ. Ղ. Ալիշան, Հայապատում, Ա., էջ 129 կը յիշատակէ Վարագեցի Բարսեղ վարդապետ գրած է ԺԶ. դարու վերջերը, Շահից եւ Սուլտանաց հակառակամարտութիւնը»: Իր աղբիւրն է առանց տարակուսի Փիրղալէմեան, որ իր հաւաքած Մանր Մատենագիրներու թուրին մէջ ներս առած է «Բարսեղ Վ. Վարագեցի. Պատմում է 1581—1591, Պարսից եւ Օսմանցւոց պատերազմների մասին. զԱռումն Թաւրիզոյ յՕսման փաշայէն...». Հմմտ. Յ. Թօփճեան, Ցուցակ ձեռագրաց Դաղեան Խաչիկ վարդապետի. Վաղարշապատ 1898, Բ., էջ 58ա: Եւ Գիւտ քահանայ Աղանեան հրատարակած է Դիւան Հայոց պատմութեան, Ժ., էջ 33—38 «Բարսեղ Վարագեցու Յիշատակարան»: Որ ուրիշ բան չէ, բայց եթէ Աւանց գիւղի Խուլուչ կոչուած բոլորգիր Աւետարանին յիշատակարանը, ուր կը պատմուի 1581—1584 տարիներու պատերազմները: Այսպիսի Յիշատակագիրներ չեն կրնար իբրեւ մատենագիր նկատի առնուիլ:*

---

# Ը.

## ՍՏԵՓԱ՛ՆՈՍ ՁԻՔ. ՋՈՒՂԱՅԵՑԻ

### ԳՐԻՉ ՆԿԱՐԻՉ ԵՒ ՏԱՂԱՍԱՑ ՔԱՀԱՆԱՅ

(1603—1637)

---

## Ը.

# ՍՏԵՓԱՆՈՍ ՁԻՔ ՋՈՒՂԱՅԵՑԻ

## ԳՐԻՉ ՆԿԱՐԻՉ ԵՒ ՏԱՂԱՍԱՑ ՔԱՀԱՆԱՅ

## (1603–1637)

1. *Ստեփանոս ծննդեամբ Հին-Ջուղայեցի է, մականուամբ կոչուած Ձիք: Իր ծնողներն են Ստեփանոս եւ Ծնո(ր)հաւոր: Ընտրած էր եկեղեցական վիճակը իբրեւ ամուսնացեալ քահանայ: Կնոջ անունն էր Աննա: Կը յիշուին իր դաւակներէն Բարսեղ վարդապետ եւ Յակոբ դրիչ: Վերջինէս ունինք հետեւեալ Յիշատակարաններս.*

ա. *Աւետարան, գրուած Վենետիկ 1659ին. «Զբազմամեղ Յակոբ դրիչս եւ զհայրն իմ զտէր Ստեփաննոս քահանայ որ մականուամբ կոչի Ձիք եւ զմայրն իմ զԱննայն յիշեցէք մխով ողորմայիւ եւ դուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ Աստուծոյ: Գրեցաւ ի Վէնէտիք. Թվ. ՌՃԸ*[1]»:

բ. *Ժամագիրք, ձեռագիր Մխիթարեան Մատենադարանի ի Վենետիկ, գրուած 1398ին. ունի յիշատակագրութիւնս. «Ի Թվ.*

---

[1] *Պարիս, Ազգային Մատենադարան, թ.* 12. Բանասէր 1900, *էջ* 147—148:

ՌՃԹ (1660)․ Յակոբ որդի տէր Ստեփաննոսի, ի Վէնէտիք[2]»։

գ․ Նոյն քաղաքին մէջ 1661ին օրինակած է Աւետարան մը, որ ունի Յիշատակարաններս[3]․ «Բազմամեղ Յակոբ գծողս եւ զհայրն իմ զՋիք տէր Ստեփաննոս քահանայն եւ զեղբայրն իմ զԲարսեղ վարդապետն եւ զմայրն իմ զԱննային» յիշեսջիք․ «գրեցաւ ի Վէնէտիք․ Թվին ՌՃԺ․ յունիս ԺԹ»։ Դարձեալ՝ «Թվին ՌՃԺ․ գրեցաւ ի Վէնէտիք, ձեռամբ անարժան Յակոբի որդւոյ Ջիք տէր Ստեփաննոսի քահանայի Ջուղայեցւոյ, ի դուռն սուրբ Մարկոս Աւետարանչին»։

դ․ Զմմառ, Անտոնեան Հայրց Թ․ 95 Աւետարանին մէջ կայ յիշատակագրութիւնս․ «Ես Ջիք Ստեփաննոսի որդի [տէր Առաքելի որդի][4] տէր Յակոբս եկի գեղս հետ Աղաքանդր վարդապետին Թվին ՌՃԽԶ (1697) սեպտեմբերի Բ, փոքր Թուական ՁԲ, Նադար ԻԶ օրն Եշաբթի․ վերջ»։

2․ Հին Ջուղայի բնակչութիւնը 1605ին Շահ Աբասի հրամանով տեղահան եղաւ եւ փոխադրուեցաւ Սպահան եւ հիմնարկեց հոն, գետի միւս ափին Նոր Ջուղան։ Տեղա-

---

[2] Հ․ Մ․ Պոտուրեան, Յիշատակարանք․ յամն 1660 (անտիպ)։

[3] Աւետարան Ս․ Լուսաւորիչ Եկեղեցւոյ ի Կ․ Պոլիս․ հմմտ․ Բաբգէն Վ․ Կիւլէսէրեան, Կոլոտ Յովհաննէս պատրիարք․ Վիեննա 1904, էջ 120—121։

[4] Հաւանօրէն «տէր Առաքել» Յակոբի հօրեղբայրը՝ ձեռնադրիչն եղած է․ Ջիք Ստեփաննոսի որդին առաջին անգամ հոս ինքզինքը «տէր Յակոբ» կը ներկայացնէ։

հանուողներու թուին մէջ էր Ստեփանոս քահանայ: Այս առիթով երգեց իր ծանօթ Ողբն. «Ափսոս քեզ Հայոց խեղճուկ ժողովուրդ»: Զետեղուելով Սպահան-Նոր Ջուղայ, գրեց այստեղ 1608ին խոջայ Վէլիջանի խնդրանքով Աւետարան մը: Յիշատակարանին կարեւոր մասերն են. «Եւ արդ ես յետինս ի կարգաւորաց եւ անպիտանս... զՍտեփաննոս սուտանուն քահանայ որ անուամբ միայն եմ եւ ոչ գործով, շնորհին Տեառն սկսայ եւ ողորմութեամբ նորին կատարեցի զսուրբ Աւետարանս ի Ցօշ քաղաքն, որ Թարգմանի Ասպահան, որ էտես Դանիէլ զտեսիլն Թագաւորացն Պարսից...: Եւ արդ աւարտեցաւ զսուրբ Աւետարանս ի մեծ Թվականիս Հայոց ՌԾԷ. զոր չէ արժան կրկնել անուն տեղոյս այսորիկ, ի վարդապետութեան <որ ի> մերումս միջի արի եւ քաջ րաբունապետ Սիմէոն վարդապետի... որ բարոզելով զբանն Աստուծոյ մխիթարէ զպգաւոր եւ զտրտմեալ սիրտս ամենայն քրիստոնէից ի յանօրինաց աշխարհս. եւ Աստուած զինքն մխիթարեսցէ: Ի հայրապետութեան տեառն Մելքիսէթ կաթողիկոսի եւ Դաւթի ամենայն Հայոց. եւ ի յառաջնորդութեան մերոյ վիճակիս Մեսրոպ արհեպ-ի. եւ ի Թագաւորութեանն իմաստուն Շահ Աբասին՝ Կարմիր գլխոյ...: Դարձեալ... Աստուած ողորմի ասացէք անարժան Մեսրոպիս, որ ծաղկեցի դեղեցիկ դեղով, ոսկով

եւ լագուարտով եւ ագգի ագգի գունով յիշատակ բարի . . . [5]» :

Յաջորդ տարին ալ օրինակած է ուրիշ Աւետարան մը, այս անգամ խոջայ Տէրիջանի խնդրանքով: Կ՚ըսուի. «Եւ արդ ես յետինս ի կարգաւորաց . . . Ստեփաննոս սուտանուն քահանայ . . . կատարեցի զսուրբ Աւետարանս ի Թվականիս Հայոց ՌՃԸ. ամի. ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի. ի հայրապետութեան տեառն Մելքիսէթ կաթողիկոսի ամենայն Հայոց. եւ ի յառաջնորդութիւն մերոյ գեաւղիս Ջուղայոյ Մեսրոփ արհիեպիսկոպոսի. եւ ի թագաւորութեան Շահ Աբասին. <որ> ՌՃԲ. թուին եկեալ բազում զօրօք ի վերայ թագաւորանիստ քաղաքին Դավրէժոյ՝ առնուլ զվրէժ արեան հաւր իւրոյ. եւ ի սպառ կոտորեաց զազգն Աւսմանայ ճարտար եւ հնարագործութեամբ իւրով: Եւ անցեալ ընդ Երասխն ի գաւառն Արարատեան ի վերայ բերդին յԱրեւանայ եւ կոտորեաց զնոսա եւ աւար էհար զամենայն երկիր: ՌՃԳ. ամին սուք հասուց ի վերայ Հայաստանեաց. զոր քակեաց եւ աւերեաց զամենայն տունս եւ բնակութիւնս. զորս փակեալ եւ թափեալ ի յամրոցս եւ ի ծերպս վիմաց՝ զոմանս գտեալ կոտորեալ, զոմանս

[5] Ձեռագիր Բաղդադի Աւքանդեան Ընկերութեան Մատենադարանի (հմմտ. Հանդէս Ամսօրեայ. 1889, էջ 269), որ յետոյ անցած է Լոնտոն, Բրիտանական Թանգարան, Conybeare, Catalogue, թ. 24. էջ 43—44. հմմտ. նաեւ Բազմավէպ 1923. էջ 136—138:

դերի վարեալ եւ տատաքեալ ի Ծաւչ քաղաքն Ասպահան· որ ետես Դանիէլ անապատին··: բնակեցոյց զմեզ ի հարաւակոյս կողմ գետոյն Զանդարոյ, որ է աղի· եւ շինեցաք տունս եւ բնակութիւնս եւ յեկեղեցիս յաղագս աղօթից· եւ անուանեցաք զանուն գեօղին Ջաջողայ եւ ոչ Ջուղայ: Զի թէպէտ Թագաւորին սիրտն քաղցր է ի վերայ քրիստոնէից· սակայն բնակիչք քաղաքին չարք՝ հակառակ, հայոյիչ է օրինաց մերոց··· զի նիւթք երկրին չար է, ջերմուտ եւ ցաւային· ամենայքն ցաւալից մարմնով···»: Կ՚րսուի թէ խոջայ Տէրիջան «ետ գրել զտէրունեան Աւետարանս առատ տրիւք եւ զարդարեաց մեծածախ ընչիւք»: Արդեամբք ալ ճոխ է ձեռագիրը բազմազոյն եւ ոսկեզարդ նկարներով[6]:

3· Իբր 1610ին պատահած ըլլալու է այն միջադէպը, զոր կը պատմէ Զաքարիա Սարկաւագ· Շահ Աբաս «յաւուր միում ելեալ արտաքոյ քաղաքին յանդաստանս՝ ամենայն հարճիւն եւ զբօսնոյր: Երէց մի այրի ի Ջուղայոյ, որում անէին Զիք տէր Ստեփաննոս· սա ելանէր երբեմն երբեմն արտաքս ի քաղաքէն, շրջէր սաղմոսելով միայն: Յաւուր միում եւս գնացեալ երէցն՝ եւ շրջէր· եւ տեսանէր ի հեռաստանէ զբանակ մի, զի մեղմով զայրին: Եւ իբրեւ հուպ եղեւ սակաւ

[6] Conybeare-Baronian, Catalogue of the armenian Manuscripts in the Bodlian Library, Oxford 1918, No. 53, p. 107—111.

մի եւ ետես զբազմութիւն կանանց. եւ ապա ծանեաւ լինել Շահին. եւ ահ եւ դողումն կալաւ զերէցն. եւ հաստատեաց ի սրտի խորում զմահ իւր: ...ճարկ դաղարողոնն ի վերայ գլխոյն եւ անկեալ յերկիր եւ դողայր: Եւ ահա եկեալ Շահն կանամբ՝ կանգնեցաւ եւ վրայ նորա եւ ասէ. Ով ես: Եւ նա ոչ կարաց խօսիլ: Ասէ դարձեալ Շահն. Հա՞յ ես թէ Թուրք, ե՛լ: Եւ ասէ հայ եմ եւ երէց. երկնչիմ ի սպանելոյ, վասն որոյ ոչ յառնեմ: Ասէ Շահն. Մի երկնչիր, զի ոչ լինի քեզ վնաս: Եւ ապա ելեալ երէցն դողալով եւ ի վրայ ծնկացն գնաց եւ համբուրեաց զոտս Շահին: Ասէ Շահն. Ասա զի՞նչ առնես: Ասէ երէցն. Այրի եմ. շրջիմ աղօթելով վասն կենաց եւ արեւշատութեան Շահին: ...Եւ շատ խօսեցաւ ընդ նմա Շահն եւ հարցանէր եւ լսէր. Եւ իմացաւ զխելօք լինելն իրիցուն: ...Եւ յաւուր միում առաջի Ջուղայու խօճանոցն յիշեաց Շահն զխելօքութիւն իրիցուն. իսկ խօճայքն ճշմարտեցին, թէ յիրաւի այդպէս է որպէս հրամանքդ ասացեր [7]»:

4. Թերեւս այս փորձանքը բարեւանցնելու համար ուխտած ըլլայ Ստեփանոս ուխտագնացութիւն մը կատարել Երուսաղէմ: Ցամենայն դէպս նա նման ուխտագնացութիւն մը կատարած է: Մեկնած է Ջուղայէն հաւանօրէն 1619ին: Ճանապարհը կ՚ընթանար Հալէպի վրայէն: Ժամանակ մը

7 Զաքարիա Սարկաւագ, Ա. էջ 37—39:

դադար առած է այս քաղաքը: «Ի հալալ ընչից» հոգալու համար իր ճանապարհի ծախքերը, օրինակած է Ս. Քառասունք Եկեղեցւոյ հովանւոյն տակ Աւետարան մը նկարազարդ, որ մինչեւ այսօր մնացած է նոյն Եկեղեցւոյ Գանձարանին մէջ: Ձեռագրիս մէջ ունինք իր գրչէն յիշատակարաններս.

Ստեփաննոս Ջուղայեցի
Տուն աւետ(ե)աց մտաւ ածի.
Երուսաղէմ յաւժարեցի:
Փութով Պարսից երկրէն ելի.
Աստ Բերիա քաղաքս հասի.
Նստեալ փութով զայս ծաղկեցի.
Ոսկով պայծառ զարդարեցի.
Սակաւ պաշար ճամփիս առի:
Եւ զձեզ հայցեմ արտասուալի.
Բարունապետք հանդիպողի.
Եւ ցնորիս տուք ողորմի (Թղ. 4ա):

Տողերու սկզբնատառք կը կազմեն՝ Ստեփանոս Երե(ց):

«Զմեղապարտս եւ անարժան տրուփ եւ անպիտան Ստեփան(ոս) գրող եւ ծաղկող սորա յիշեսջիք. եւ դուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ» (Թղ. 196բ).

Սա է կարք մարգարէին
եւ Ղեւտական քահանային.
Տեսաւ վերայ Քոբար գետի,
Եզեկի Բուզա որդին.
Եւ էր տեսիլ աստուածային
Աթոռ կազմեալք քառակերպին:

փառաւորեալ կերպ ունէին,
Տուն եւ աթոռ աստուածային․
Այլ խուրաքանչիւր հանդէպ գնային,
Եւ յետ ընդդէմ ոչ դառնային․
Նա այս խորհուրդ ապագային,
Որ չորս յառաջըս բաժանին,
Որ հակառակ միմեանց չխաւսին,
Այլ որոշմամբ միաւորին։
Սա մի բնութեամբն բաժանին,
Որպէս Մարկոս ընդ Մատթէին․
Նոյնպէս Յոհան ընդ Ղուկային․
Բայց մի խորհուրդ միաբանին։
Այլ առանձին յինքեանք խաւսին,
Այլ մի ումեք ոչ իմացին։
Ղեւտականին միայն տեսին,
Որ էր սա վէմ աստուածային․
Այլ հոգեւորն իմ Յիսուսին,
ոչ կարծրանիւթն Իսրայէլին։
Շատ է աղբիւրն հասեալ վիմին,
երկոտասան ջուր կենդանին․
Եւ քառակոյս կողմ աշխարհին,
լուսաւորին բանիւ սորին։
Բախճական ծաղկեալ ամին,
Եւ եւթն սիւն արմաւենին․
Եւ աշակերտք սրբոյ գնդին․
Որք ընդ(հ)անուր քարոզեցին։
Յերկրէ յերկինս մեզ ուղղեցին
եւ զայս ստացաւղ (դատարկ)ին
ի տրուտ գրչիս տուք ողորմին․
Տեառնէ առնէք փոխարէնին
(Թղ․ 251բ)։

*Սկզբնակապ գրերը կը հիւսեն «Ստեփանոս Նաղաշ Երէյ(ց)ի։*

*Ձեռագիրս նկարազարդուած է բազմագոյն եւ ոսկենկար։ Կան նկարներ, խորաններ, կիսախորաններ, ծաղկագրեր եւ լուսանցազարդեր։ Գրիչը միաժամանակ մանրանկարիչ է։ Արտաւազդ Սիրաղան[8] գրչութեան տարին նշանակած է «1660ական թուականը» (էջ 45ա), չգիտեմ ի՞նչ հիմամբ։ Գրիչը Ստեփանոս, որ կը սիրէ չափաւոր արտայայտուիլ, առանց տարակուսի նոյն է Զիք Ստեփանոս քահանայի հետ։ Տեսանք, թէ նա 1608ին եւ 1609ին գրած էր երկու Աւետարան, որոնց նկարազարդումը կատարած էր Մեսրոպ Հիզանցի մասնակցութեամբ իր որդւոյն Գրիգորիսի։ Կ՚երեւայ թէ 1608—1618 տարիներուն Ստեփանոս յիշեալ վարպետ նկարչին քով ուսած է նկարչութեան արուեստը։ Ստեփանոս Զիք ինք զինքը «Նաղաշ» կ՚անուանէ նաեւ 1637ին։ Աւետարանս գրած ըլլալու է առ կանուխ 1619ին, վասն զի յաջորդ տարին կը գտնենք զինքը Երուսաղէմ։*

*Վենետիկի Մխիթ. Մատենադարանի ԺԵ. Տօնացոյցը գրուած է Հայոց ՌԿԹ*

---

*[8] Արտաւազդ արքեպ. Սիւրմէեան, Ցուցակ Հայ. ձեռագրաց Հալէպի Ս. Քառասուն Մանկունք Եկեղեցւոյ եւ Մասնաւորաց. Երուսաղէմ 1935. էջ* 42—46։

(1620) *թուին Երուսաղէմ, տեղւոյն Գրիգոր Եպիսկոպոսի (Պարոն Տէրի) օրով, «ձեռամբ Ստեփաննոս երէցի որդւոյ Ստեփաննոսի եւ Շնաւհաւորի»․ Ստեփաննոսի իրիցկնոջ անունը փոխանակ Աննայի յիշուած է Մուսաթ*[9]*: Տեսանք մերադոյն Զաքարիա Սարկաւագի վկայութեամբ, թէ Ստեփաննոս այրիացած էր: Կարելի՞ է մտածել, թէ նա երկրորդ անգամ ամուսնացած ըլլայ:*

1622*ին օրինակած է Գրիգոր Տաթեւացւոյ Հարցմանց Գիրքը: Գրութեան տեղը չէ յիշատակուած. Կ'ենթադրեմ թէ Երուսաղէմ ըլլալու է: Ունի ընդարձակ ոտանաւոր Յիշատակարան մը (Էջմիածին,* 797, *Թղ.* 358*բ)․ «Յիշատակարան գրոցս սուրբ Հարցմանցս բանի ժ հատորի, արարեալ Զիք Ըստեփաննոսէ Ջուղայեցի քահանայէ:*

*Փառք ամենադաւր տէրութեան,*
*Երեքանձնեայ աստուածութեան...*
*Ազգիս Հայոց մեծ Թիւական,*
 *որմէ անցեալ կրկին շրջան,*
*Այլ եւ է թիւ աւելի լրման,*
 *գրեցաւ գիրքս այս պատուական.*
*...Այլ եւ սակաւ բանս այս անբան,*
 *Զիք ըՍտեփաննէ շարադրեցան.*
*Որ քահանայ անուամբ միայն*
 *կոչի ի մէջ ոամիկ մարդկան...*

---

[9] *Հ. Մ. Պոտուրեան, Յիշատակարանք:*

1623ին օրինակած է իր չորրորդ Աւետարանը. գրութեան տեղը դարձեալ անծանօթ[10]։ Կ'ենթադրեմ Երուսաղէմ։

Հոս օրինակած է 1625ին Երուսաղէմի Ս. Յակոբայ վանքին Թ. 1483 Հաւաքածոյ ձեռագիրը, ուր կը գրէ. «Տեսի զայս գիրքս ի սուրբ քաղաքն Երուսաղէմ. եւ ցանկացայ եւ սկսայ եւ աւարտեցի զսա ի վայելումն անձին իմոյ ...ողորմի ասէք ինձ անարժանի Ստեփաննոսի եւ իմ ծնողացն՝ հօրն Փանոսին եւ մօրն Ծնահաւորին... ամէն։ Գրեցաւ գիրքս ի սուրբ քաղաքս Երուսաղէմ, ի դուռն Ս. Յակոբ Առաքելոյն, ի յաթոռն Հայոց ազգիս. ի հայրապետութեան սուրբ Աթոռոյս տէր Գրիգոր սրբազան արհի եւ պանծալի արքեպիսկոպոսին... գրեցաւ գիրքս ի թվականիս Հայոց ի ՌՀԴ (1625), ի դառն եւ ի նեղ ժամանակիս[11]»։

5. Ստեփանոս կ'երեւայ թէ 1635ի վերջերը մեկնած է Երուսաղէմէն Գահիրէ. եւ ինքն է հաւանօրէն հետեւեալ տողերու հեղինակը.

«Պատմութիւն ծածկագրին։ Ծանուցումն լիցի ձեզ ընթերցողացդ... ես մեղաւոր դաշտ(եցի) Ստեփանոս գրիչս կայի ի քաղաքն յԵգիպտոս... ՌՁՁ... փետր. 2... ժողովեալ էաք ի ժամատեղն ի սուրբ Սար-

---

[10] Երուսաղէմի Թ. 1751 Աւետարանը, գրուած 1632ին Հայրապետ երէցէն, ունի, անշուշտ սրբա-գրութեամբ, Ստեփանոսի Յիշատակարանը 1623էն։

[11] Մ. Եպ. Աղաւնունի, Միաբանք եւ այցելուք Հայ Երուսաղէմի, Երուսաղէմ 1929, էջ 481։

գիս եկեղեցին քահանայիւք եւ ժողովրդօք եւ անձամբ հարցաքննութիւն մեծաւ խաղաղութեամբ վասն լինելոյ ծառազատկին... յայնժամ Ջուղայեցի ումն խօճայ Ղազար կոչեցեալ պատասխանեաց թէ... ունիմ առ իս մագաղաթ գիրք մի որ եղեալ է ի խազինայէն յլէթոմ (Հեթում) թագաւորին»: Յառաջ բերուած տեղիքներէն կ'երեւայ թէ ձեռագիրը Մատթ. Ուռհայեցւոյ ժամանակագրութիւնն է: Ի յաջորդս կը պատմուի ծառազատկի շուրջ՝ Երուսաղէմ Հայոց եւ Յունաց մէջ յուզուած խնդիրք, ինչպէս Երուսաղէմէն նոր հասած թղթերը կը նկարագրեն[12]:

Ստեփանոս Եգիպտոսէն անցած է Սուրիք, Ամթայ վրայէն վերադառնալու Ն. Ջուղայ: Հոս յԱմիթ կը պատահի ՌՁԶ թուին տեղւոյն առաջնորդ Յովհ. Ուրհայեցւոյ, որ սիրով կ'ընդունի զինքը եւ կը նուիրէ իրեն Թովմայ Արծրունւոյ պատմագիրքն եւ երկու փիլոն[13]:

Ամդէն կը հասնի Վան, ուր նոյն 1636 տարւոյն «Կարապետ երէց, ի Վան քաղաքի, սուրբ Հրեշտակապետին» կը շարունակէր

---

[12] Էջմ. 701 թղ. 61ա—83բ, վերջը թերի, օրինակուած 1700ին:

[13] Հ. Մ. Պոտուրեան, Յիշատակարանք, յամի 1637 կը գրէ. «Թովմաս Արծրունի. ո՞ւր: Ստեփանոս երէց Ջուղայեցի որդի Ստեփանոսի, ի թվ. ՌՁԶ. Երուսաղէմ ուխտի գնաց եւ դարձին Ամիթ կու գայ. կը հանդիպի Յովհ. Ուրհայեցւոյն, որ զինք սիրով կ'ընդունի եւ զպատմագիրքս բ. փիլոնաւ իրեն կը նուիրէ»:

Թացուեցի տէր Աւետիսի ի Լիմ սկսած եւ մահուամբ (1636) ընդհատած Աւետարանի ընդօրինակութիւնը, ի խնդրոյ Շատախցի Ստեփանոս վարդապետի: Կարապետի օրինակած այս Աւետարանը «այլ եւ ծաղկեցաւ ձեռամբ Ջուղայեցի տէր Ստեփանոս քահանայի»: Ստեփանոս վարդապետ «Աստուածողորմի» կը մաղթէ այս օրինակութեան համար «այլ եւ վարպետացն տէր Աւետիսին, տէր Ստեփանոս գեղեցկարան ծաղկողին, որ զանազան գունով եւ ոսկիազարդ վայելչութեամբ եւ լազվարդով գեղեցկացոյց»: Իսկ Կարապետ գրիչ կ'աւելցնէ (հաւանօրէն իր մասին) «յիշեսջիք... եւ զհոգեւոր հայրն իմ զհեզահոգի եւ մաքրամիտ տէր Ստեփանոս քաջ քարտուղարն, որ բազում երախտիք ունի ի վերայ մեղաւորիս. միթէ ամենազօրն Քրիստոս զխոր երկնից արքայութիւն պարգեւեսցէ իւր հոգւոյն. ամէն[14]: Կը յիշուի ուրիշ Աւետարան մ'ալ «գրեալ ի քաղաքն Վան, ի դուռն Տիրամօր սուրբ Աստուածածնի եւ Գաբրիէլ սուրբ հրեշտակապետին, ի թուին Հայոց ՌՁԶ (1637) ձեռամբ Ստեփանոսի[15]»: Հաւանօրէն Ստեփանոս Ջիքն է սա. դժբախտաբար Սրուանձտեանց յիշատակարանը ամբողջութեամբ չէ աւանդած: Նոյն 1637 տարւոյն Ստեփանոս այցելած է նաեւ Խառակոնիս գիւղը. Նոյն

14 Լալայեանց, Ցուցակ հայ. ձեռագրաց Վասպուրականի. Ա. էջ 289—290:
15 Սրուանձտեանց, Թորոս Աղբար, Բ. 416:

*տեղ պահուած Աւետարանի մը մէջ արձանագրած է ինքնագիր. «... ի թուին Հայոց ՌՂԶ. եւ ես Ստեփաննոս Ջուղայեցի Նաղաշ էրէցս հանգուցեալ Խաչատուրին ...[16]»:*

*Այս տեղ կը կորսնցնենք Ստեփանոսի հետքերը պատմութեան մէջ:*

## ՍՏԵՓԱՆՈՍ ՋԻՒԹ ՏԱՂԱՍԱՑ

6. *Այն յիշատակարանները, զորոնք ներկայացուցինք վերագոյն, կ'ընծայէին զինքը գրիչ, նկարիչ-նաղաշ եւ յիշատակագիր: Իր Յիշատակարաններէն ոմանք յատուկ իմաստով յիշատակարանի սահմանէն դուրս ելած՝ գրեցած եւ տաղի նկարագիր: Այսպէս Հին Կտակարանի եւ Նոր Կտակարանի կցած Յիշատակարանները ոտանաւոր չափով, նոյնպէս Շարակնոցի եւ Գրիգոր Տաթեւացւոյ Հարցմանց Գրքի Յիշատակարանները, որոնք բովանդակութեամբ գրական եւ բացատրական տաղեր են, օգտաւէտ եւ շահագրգիռ: Ասոնք հաճելի երեւցած են ժամանակակիցներու, տեսակ մը գրական նորութիւններ, եւ ոչ միայն վերարտադրուած են նոյն գրքերու օրինակութեանց ժամանակ, այլ եւ անոնցմէ երբեմն առնուած են Հաւաքածոյքներու մէջ. այսպէս Անտոնեանց Թ. 74 Հաւաքածոյքի մէջ, արդէն 1639ին: Ինձ կը թուի թէ այս երեքին համադրողը եղած է նոյն ինքն Ստեփանոս Ջիք, ինչպէս խորագիրները կը ներշնչեն կարծել: Արտագրող-*

[16] Տէվկանց, Հայերգ, էջ ժԲ:

ների չափ անդամ սկզբնագրին թուականը փոփոխած են յարմարցնելով իրենց ժամանակին : Այս պատճառով ալ դժուարին կ'ըլլայ մեր հանել սկզբնագրին ճիշդ թուականը : Սակայն՝ պիտի թուեմ այս Յիշատակարաններէն երեքը, ցոյց տալով միանգամայն ձեռագիրները, որ պահուած են անոնք, որքան այս հնարաւոր եղած է ինձ յայտնաբերել :

1· Յիշատակարան Աստուածաշունչ Գրոց արարեալ նորն Ստեփաննոս Երէց որդի Ստեփաննոսի ի խնդրոյ պարոն Մէլիք աղային որդւոյ խօջայ Սափարին :

Այսպէս խորագրած է Անտ· 74· եւ է Հին եւ Նոր Կտակարաններու գրքերու որքանութիւնն եւ անոնց բովանդակութիւնը : Ընդ ամէնը 400 տող : Գրութեան տարին է «քսան յոբելեան այլ ինն տասն աւել ի յման» (ՌՂ 1641), այսպէս Լալայեանց Թ· 3 : Եղմ· 428 եւ 1672 կը կարդան· «եւթնտասն», այն է ՌՀ (1621) :

Սկիզբն եւ վերջաւորութիւնն է .

Ի թուականիս մեր հայկազեան
Որ է անցեալ քսան յոբելեան,
Այլ եօթնտասան աւել ի յման
Գրեցաւ ջանչս աստուածական :

՚Ստ առաքելոց սրբոց կոչման
Որք հաւաքեալ ի մի եղան,
ԶՀին եւ Նորան Կտակարան,
Զոր աստ չարեմ յարմարական :

*Յառաջ բակկիդրն՝ Բարխաթուայն,*
*Գործք վեցօրեայ արարչութեան.*
*Ի Կիրակէ օր տէրունեան,*
*Մինչ ի շաբաթ օր հանգստեան...*

*վ. Իսկ ես նուաստ անձն անարժան,*
*Զիք Ստեփաննոս մեղաց աման.*
*Զարեօք լցեալ, բարուց ունայն.*
*Եւ որ ի կա՞ն քան զամենայն*
*Այսքան դրոց աստուածական,*
*Զոր շարեցի անբանական,*
*Զձեզ աղաչեմ, որք հանդիպիք,*
*Զմեղադրել իմ լրութեան:*
*Զի ես տկար եւ սխալական,*
*Զեռնարկեցի յօժարական.*
*Գրեցի զկրկին սուրբ կտակարան.*
*Ոտամբ չափեալ 'ստ Հոմերական:*

=*Զեռ. Երուսաղէմ Թ.* 428: 1672: *Զմմառ, Անտ.* 74, *Թղ.* 78*բ* (1639): *Ն. Լալայեան, Ցուց. Վասպուր. Թ.* 3 (*Աստուածաշունչ յամէ* 1649):

*Հրտ. Լալայեանց, ցուց. Վասպուր. էջ* 18—24:

2. Յիշատակարան Աւետարանի եւ Մեկնութիւն ժ խորանացն:

*Ստեփանոս* 1623*ին օրինակած է Աւետարան մը, որուն մէջ զետեղած է ոտանաւոր չափով Զորս Աւետարանիչներու նկարագիրն եւ* 10 *խորաններու խորհրդական բացատրութիւնը:*

*Ազգիս Հայոց թըւականին,*
*կրկին քառ(ե)ակ 'ւ երկ հարիւրին,*
*Եւթանասուն երկու ամին*
*գրեցաւ գանձս աստուածային:*

*Աւետարան խորհրդով լին,*
*Գրչուխք չորրորդ զոր կարգեցին...*
*Դարձեալ խորհուրդ կայ աստ խորին,*
*Զոր ցուցանէ մեծն Եւսեբին,*
*Համաբարբառ գոյգ խորանին,*
*Գեղեցկապէս կարգեալ ի մին...*
վ․ *Արդ ես նուաստ անձն եղկելի,*
*Ջիք Ստեփանոս մեղաց գերի,*
*Անուն ունիմ քահանայի,*
*Բայց գործով եմ յոյժ ապտեղի...*

=*Ձեռ․ Երուսաղէմ, Թ․* 258: 830, 280*ա* (1677): 1343: 1672: *Զմմառ, Անտ․* 74, 74*ա* (1639): *Հալէպ․ Բ․* 37, *էջ* 94—110: *Հրտ․ Արտաւազդ արքեպ․ Սիւրմէեան, Ցուցակ Հայ․ ձեռագրաց Հալէպի․ Բ․ էջ* 116—118:

*Անտ․* 74 *կը խորագրէ․ «Յիշատակարան Աւետարանի, արարեալ յողնամեղ Ստեփաննոս իրիցէ Ջուղայեցւոյ որդի Ստեփաննոսի»:*

3․ Ի տէր Ստեփանոսէ գիտնական քահանայէ ասացեալ ոտանաւորս յաղագս Շարակնաց թէ յումմէ՞ են երգեալ:

*Որք ըղձորանս Հոգւոյն սրբին,*
*ըղճարտականն ոգեալ գրեցին...*

Վ․ Արդ ես նըստած անձն եղկելիս,
Զիք Ստեփաննոս մեղաց գերի
Որդի գոլով Ստեփաննոսի
եւ գաւառաւ Ջուղայեցի․
Անուն ունիմ քահանայի,
բայց գործով եմ յոյժ աղտեղի…
Երիս երրեակ եւ եղակի,
այսքան հարիւր թըւին հայի,
Նոյնքան եօթնից Ե աւելի
սակաւ բանի(կ)ս այս յարմարի․
Ի մուտն ամսին ապրիլի
որ Ղազարու շաբաթ կոչի,
Եւ շամշ ամսին կրկին վեցի
եղեւ գըրաւ գոյն այս բանի:
Ով դու եղբայր իմ ցանկալի,
Պօղոս պըւէտ քաջ եւ արի,
Ընկալ սիրով անգըժելի
ի գանձ բըղձոյտ ըստ յումայի…

Վերջին տունը՝ ՈՍՆԹԻՍ ՋՈՆԵՐ ՍՏԵ-ՓԷՑ (=Զիք Ստեփաննոս երէց):

Ոտանաւորիս գրութեան թուականն է 3×3+1×100+10×7+5=ՌՀԵ (1626): Ճըշդիւ այս տարւոյն Ղազարի շաբաթը կ'իյնայ ապրիլ 1=12 շամս: Բայց զարմանալի է, որ այն կը գտնուի Էջմ․ 1424 (յամէ 1620) եւ Երուսաղէմի 1666 (յամէ 1624) ձեռագիրներու մէջ: Պէտք է քննել ի մերձուստ յիշեալ ձեռագիրները, յատկապէս թէ ձեռագիրներո՞ւ գրչէն օրինակուած է այս, թէ յետնաբար աւելցուած:

Ոստանաւորիս խնդրոյը «Պօղոս պըլէտ քաջ եւ արի», կարող է ըլլալ Պօղոս Վ. Տիւ-րիկեցի, որ տաղասաց էր:

Գրուածքս կը գտնուի նաեւ արձակ, եւ անանուն, Էջմ. 271, 7ա—8ա (ԺԷ): Վիեննա Մխիթ. 334, 345բ: 515, 100ա (ԺԷ): Աստանց տարակուսի Ստեփանոսի այս տաղը պար-զապէս այդ արձակին տաղաչափեալ խմբա-գրութիւնն է լոկ, մանր փոփոխութիւն-ներով:

Ձեռ. Էջմ. 1424, 247ա—249բ (1620): 1593, 601ա (ԺԸ.): Երուսաղէմ, Թ. 1666 (1624): 1672: Զմմառ, Անտ. 74, 87բ (1639) [17]: Վիեննա, Մխիթ. 346. 3ա (1690. Ցուց. էջ 799). վերջին տունն եւ յիշատա-կարանը կը պակսի:

Հրտ. N. Ter-Mikaelian, Das armenische Hymnarium. Studien zu seiner geschichtli-chen Entwicklung. Leipzig 1905, էջ 74—78:

4. Ողբ Ջուղայեցւոց:

*Ափսոս քեզ Հայոց խեղճիկ ժողովուրդ*
*Ցիրուցան եղաք անմեղ անխորհուրդ: —*
*Գերի գնաման աք դէպի խորասան* (var.
*Ասպահան*)
*Քաղցած ու ծարաւ, ակըռ թշուառական:*

Հրտ. ԲԶՄ. 1847, էջ 95: Ալիշան Քնար Հայկական. էջ 134: Arm. Pop. Songs.

[17] Յորագիր կը կրէ. «Նորին Ստեփաննոս երի-ցու արարեալ յիշատակարան Շարակնոցի»:

Քառդ. 13—14: Առաքելեան Հ., Պարսկաստանի Հայերը. Ա. (Վիեննա 1911) 66—67:

Առաջին հրատարակիչն կը գրէ. «Աս երգին շարադրողն է Ստեփան վարդապետ Նախավկային վանքէն. պարոն Գալուստ <Տիրմազանեան> ալ նոյն վանքին մէջ գտեր է տոր օրինակը: Նախավկայի վանքը հին Ջուղայի Տամբ անունով գեղին քովն է, կ'ըսէ, եւ երգին շարադրողը՝ Ջուղայեցւոց Ասպահան քշուելուն ժամանակակից ու ինքն ալ Ջուղայեցի կ'երեւայ՝ գուրգուածքէն: Երգին նիւթն է ողբ Հայոց Պարսկաստան քշուելուն վրայ՝ 1605ին. Պարսից Շահաբաս թագաւորին հրամանաւը: Լեզուն գաւառաբարբառ է»:

Ինծի ծանօթ չէ «Ստեփանոս վարդապետ Նախավկայի վանքէն»: Եթէ Ստեփանոս մըն է տաղասացը, ընիկ Ջուղայեցի, շատ հաւանական է, որ ան նոյն ըլլայ Ջուղայեցի Ստեփանոս քահանայի հետ: Ջիք Ստեփանոսի կեանքի վերջին տարիները ծանօթ չեն: Անկարելի չէ, որ նա ծերութիւնն անցուցած ըլլայ Նախավկայի վանքը: Ծանօթ է համանուն երգիչ մ'ալ Վարագեցի յորջորջումով, այս դարու սկիզբը, նոյնպէս տաղասաց: Որ եւ է ձեռագրի մէջ չեմ պատահած տաղիս: Թէութեամբ միայն կը վերագրեմ զայն Ստեփանոս Ջիք Ջուղայեցւոյ:

Թ.

## Հ. ՅԱԿՈԲ ԲՈՒՋԱՅԵԱՆ

### ՎԻՊԱՍԱՆՈՒԹԻՒՆ ՄԱՐՏԻՆ ՕՍՄԱՆՑԻՈՑ ԸՆԴ ԱԼԱՄԱՆԱՑ (1716)

# Հ. ՅԱԿՈԲ ԲՈՒՂԱՅԵԱՆ

## ՎԻՊԱՍԱՆՈՒԹԻՒՆ ՄԱՐՏԻՆ ՕՍՄԱՆՑԻՈՑ ԸՆԴ ԱԼԱՄԱՆԱՑ (1716)

*Հ. Յ. Բուղայեան երիտասարդական հասակի մէջ էր, երբ խնդրեց Մխիթար աբբահօրմէ ընդունիլ զինքը աշակերտ* (1703 *ի Նիկեպոլիս Կորնթոսի) ։ Ան հմուտ էր յունարէնի. եւ մեծապէս նպաստեց Աբբահօր Մեթոնի վանքին հիմնարկութեան ժամանակ ։* 1714*ին ձեռնադրուեցաւ քահանայ ։* 1715*ին, երբ օսմանեան բանակը կը յառաջանար դէպի Մորէա, հարկադրուեցաւ Մխիթար իր աշակերտները փոխադրել Վենետիկ, իսկ վանքին պահապան թողուց իր միաբաններէն եօթը հոգի, որոնց թուին մէջ Հ. Յ. Բուղայեանը ։ Մեթոն գրաւուեցաւ եւ Մխիթարեանք գերի վարուեցան. ապա փրկանաւորուեցան Կ. Պոլիս ։ Հ. Յ. Բուղայեան Վենետիկ հասաւ* 1716, *մարտ* 17*ին ։*

*Յետագային ուղարկուեցաւ ան արեւելք, շրջեցաւ հայաբնակ քաղաքներ ։ Վախճանեցաւ* 1737, *հոկտ.* 8*ին ի Բելգրատ (Մխիթարեան Յոբելեան. Մխիթար. Վենետիկ* 1901, *էջ* 216) ։

*Բուղայեան այս վիպասանութիւնը գրած է ականջալուր ականատեսներէ ։ Գրի առած*

է ինչպէս լսած է: Կը պատմէ յոգնակի առաջին դէմքով. այդ դէմքերն են ականատեսները Օսմանեան բանակէն:

Պատերազմը տեղի ունեցած է 1716, օգոստոս 13ին ի Պետերվարդայն: Պատերազմի պատմութիւնը մանրամասնօրէն նկարագրած է Josef von Hammer, Geschichte des Osmanischen Reiches, Հատոր Դ. (Պեստ 1886) 141—150:

Վիպասանութիւնս հետաքրքրական է այնու որ կը ներկայացնէ Թուրքական բանակի անցուդարձերը:

Հ. Ց. Բուզայեան պատմած է ոտանաւոր չափով հայերէն եւ Թուրքերէն, դէմ դիմաց գետեղած: Ես կը հրատարակեմ այս տեղ միայն հայերէն բնագիրը, պահուած Վիեննայի Թ. 160 (Թղ. 259բ—271ա) Տաղարանին մէջ:

ՏԱՂԱՋԱՓԱԿԱՆ ՎԻՊԱՍԱՆՈՒԹԻՒՆ ՄԱՐՏԻ ՕՍՄԱՆՑԻՈՑ ԸՆԴ ԱԼԱՄԱՆԱՑ, ՈՐ ԵՂԵՒ ՅԱՄԻ ՏԵԱՌՆ 1716։ ՇԱՐԱԴՐԵԱԼ Ի ԲՈՒԶԱՑԵԱՆ Հ․ ՅԱԿՈԲ ՎԱՐԴԱՊԵՏԷ։

Հազար հարիւր քսաներորդ մեր թուին
այո՛հ, այո՛հ,
Նոյեմբերի իններորդըն օր հաչուին.
Հատաւ վճիռ տալ պատերազմ դէմ Նէմցին,
այո՛հ, այո՛հ,
Վասն այնորիկ անկաւ բանակ մեր յուղին։

Ի յէտրէնէ հանդխացաք խմբովին.
Բայց արտասուք յաչաց մերոց թորէին.
Քանզի Նէմցէն էր մեզ ոսոխ չարագին,
Նա ըզմայր մեր յուէտ լացոյց դառնագին։

Հարիւր քսան եւ հինգ հազար հետեւոք,
Երեսն եւ հինգ հազար էին ձիաւորք.
Եօթըն եւ տասն հազար մարդիկք զօրաւորք,
Իսկ Պօնացի քսանհազար ուժաւորք։

Թուեա եւ տես որքան եղաք մեք համակ,
Ի երկերիւր հազարէն պակաս մէն երբեակ,
Այլ համօրէն խըմբեալ ամբոխք մի բանակ,
Իբրու չորեք հարիւր հազար բովանդակ։

Յունաստանէն էին զօրքըն բնաւոր,
Տըմըրչվարէն, ի Պօնայէն ձիաւոր.
Հարիւր իննսուն 'ւ երեք ըռումբ զօրաւոր,
Քսան եւ մի հաւան թօփու գլխաւոր։

Անթիւ էին բաշ եւ բրինք եւ փեստաք,
Ղումպարայից եւ կիւլլէից հրադէն հատք.
Անհուն էր մեր գինուց կահուց զումարտակ,
Եւ անհամար անրանք եւ կովք եւ քուռակք:

Եւ գանձ բարձաք քառասուն եւ հինգ մեք ուղ-
տուք,
Բաւն եւ չորս տէֆտէրխանէ ի ծածուկ.
Ցէտիրնէյէ յուղի անկաք վաղվաղուկ,
Երեւեալ մեզ բանակըն մեր չնորհուկ:

Այլ փաշայ Պօնայեցի մեզ հասեալ,
Վէզրին մերոյ մեծաւ շըքով աւետեալ.
Նէմցէն, ասէր, դեռ չէ ի մարտ յարուցեալ,
Յանկարծ հասցուք ի Վարատին մերձեցեալ:

Եավարինու դուքսն ծանօթ մեզ էր լեալ,
Ուստի թղթով վէզրին խոսյն աւետեալ,
Երեսնեւհինգ հազար Նէմցէ կայ գինեալ,
Քսանեւհինգ հազար հեծեալ բացօթեալ:

Ոչ հաւատաց վէզիրն բանից իշխանին,
Կրկնեաց դարձեալ յըղել լրտես Նէմցէին.
Ցորոց գտոյգ նոր լուր բերին վէզիրին,
Եթէ վաթսուն հազար են զօրք Նէմցէին:

Ամէն Մաճառք հնազանդ հլու մեզ էին,
Եւ վասն մեր սուր հանէին դէմ Նէմցին:
Յայս յոյս հասաք մեք Պելրղատ քաղաքին.
Վեզիրն մեր վիշապ եղեւ մոլեգին:

---

[1] Թուականը խանգարուած է. «մեր Թուին» (Թուրքերէնը «Միւլիմ սէնէմիզ»). Օսմանեան 1120 կը համապատասխանէ փրկչական 1708ին:

ԸզՄասայ գետ հրաման արար կամրջել,
Տիւ եւ գիշեր աշխատեցոյց ի շինել.
Բիւրուք հիւսամբք յերկս գիշերս եւ յանգել.
Ի Վարատին քաղաքն գրոհիւ մօտ դիմել:

Լուր յղեցաք տալ զփակկանս քաղաքին,
«Ջիոյն հարցնել» պատասխանեաց մէջիրին.
Մեք կամեցաք բառնալ զշինուած կամրջին,
Բայց ոչ եղեւ այս բան հաճոյ ամբոխին:

Հաւատադրուժ մէջիրն նենգիչ է Տաճկաց,
Զմեր շինած կամուրջն եղծել հրամայեաց:
Մըսրայ բանակն այսըմ իրի միջնորդեաց,
Զրոյց տայր թէ ջանիւ մզիցին գունդք զօրաց:

Արդ հուսկ յետոյ մնացաք ի հող Նէմցէի,
Այլ քրոմիջին եմուտ զօրացն ի միջի,
Յապուշ հարան ամանք վերայ կամրջի,
Իսկ այլք յերկրայս անկան զգործոց մէջիրի:

Ասեմք կամուրջ ատէն հարկիւ մեզ պիտի,
Զի չէ մարտիս ստուգութիւն յիրաւի:
Այլ կուրացաք դատաստանաւ տէրունի,
Եւ Մօսայի վրէժ ի մէնջ պահանջի:

Զինչ եւ իցէ՝ յատս յերանց մեք իջաք,
Յերեսս դաշտաց անդրէն պատնէշ կառու-
ցաք.
Յայնժամ անուր քսան 'ւ երեք էին պահք,
Զնէմցէն հասեալ երեք հազրօք անդ տեսաք.

*Հրեշտակ եհաս. Զի՞նչ ինչ խնդրէք յայս վայրի,*
*Բանս խօսեցաք կծուս, յորոց սիրտ ճմլի·*
*Դիմի հարաք երեք հազար Նէմցէի.*
*Եւ գերեցաք զիշխան[2] նոցա ի ձորի:*

*Վաղ հասուցաք ձիով վէզրին առաջի,*
*Եղ նա նորա անուր շղթայ ի վզի·*
*Իսկ մնացորդք արկին հրդեհ յայն վայրի·*
*Ըզբիւրս ի մէնջ տապաստ արկին ի դաշտի:*

*Յերեքհազրէն երեսնեւհինգ այր կալաք·*
*Ի վրանէ վէզրին եկին մեզ հրամանք,*
*Բերցին, ասաց, գերիքն առ իս բովանդակ·*
*Եւ լինիցին ընդ տառն[3] վրանաւ գլխահատք:*

*Ասէ վէզիրն չարել աչաց առաջի·*
*Զի ծառայի եմ յոյժ արեան Նէմցէի.*
*Դարձեալ ժրացաք վերայ երեք հազարի,*
*Եւ հասուցաք մօտ Վարատին քաղաքի:*

*Մութ գիշերոյ եհաս, լոյս ոչ երեւէր·*
*Այն օր բոլոր այսու կերպիւ անցանէր:*
*Ի վէզիրէն յայնժամ հրաման ելանէր.*
*Զկամուրջ գետոյն յանկարծ պատել մեզ ասէր:*

---

[2] Graf Breuner (Hammer, 145).

[3] *Թուրքերէնն ունի «լէյլէկ չատըր», ուստի «տարեղ»:*

Վաղվաղ Հասին չայխայ նաւերն Սամայէն[4].
Առաք գկամուրջս չայխա[5] նաւուք նոցանէն.
Զոր ըղգացեալ Նէմցէն՝ հուր արկ կամրջէն,
Յայնժամ դիմի հարաք նոցա ցամաքէն:

Զխաւորօք գրանակն յերկուս ճեղքեցաք.
Ընդ չայխայ նաւս գնոսա կռուիլ մեք տեսաք.
Ճիֆիր յերին վերայ ըղթօփս կառուցաք,
Ի կամրջէն անցնիլ ումեք ոչ թողաք:

Յանկարծ տեսաք սեաւ ամպ յետոյ կող-
մանէն.
Եկին հասին ձիաւոր զօրք Պուտիմէն.
Ինչ ոչ հաշուեալ անցին հրոյն ի միջէն,
Ամենեքեան անցին ի մէջ գիշերին:

Օգոստոսի հինգ էր յայնժամ օր ամսի.
Ծայրակարմիր արեւն ծագեաց լուսարփի.
Որպիսի՛ օր եղեւ այն օր ցաւալի,
Դատաստանի մինչ գի օրն էր ի պատուի:

Մէջ գիշերոյն կանգնեաց պատնէշ երկաթի,
Շինեաց մարտկոց անդէն ի կողմն Հարաւի.
Բանք մեր մրճից բաղում ձայնէն չիմանի,
Ատ գալ յանկարծ Նէմցէն էր գերթ վիշապի:

Եւճէնիոսն եհաս Պուտիմէ անուի,
Եւ հարկանէր զթմբուկն ձայնիւ ողբալի,
Զհնարից վէգրին էին Նէմցէք կառաղի,
Զի այլ էր նախ նոցա եղեալն ի մտի:

---

[4] Չ. սայայէն:
[5] Չ. չայխաղ. իմացիր «չայխայ», չայդալարը-
մրդ:

Ի հինգերորդ աւուր լուսնի այդուց լեալ.
Նէմցէն հրացան գինուք հեռուստ շողշողեալ.
Ի վաղորդայն այգուն ի մեզ հուր արկեալ,
Ձերթ գետ ի ձորս արիւնն մեր կարկաջեալ:

Հետեւակաց հանդէպ հեծեալք անդ կառեալ,
Ոչ փիղ կռուոյ եւ ոչ առիւծ ինչ օգտեալ:
Եւ ձեռնիւն յոյժ խստագոյն նայեցեալ,
Գլխոց վերջւոր եղեալ եւ գրաւ ագուցեալ:

Ի միում ձեռին խիշտ, ի միւսում հրացան.
Եւ ձի նորա մոլի ի հուռոյ արեան,
Մարշալ իշխանն ի յաջմէ կողման,
Իսկ Զըմլըհեռ[6] իշխանն ի ձախմէ կողման:

Հրացէն ի գօրս թափել երբեք ոչ լռէր,
Բազում բազայ ի ձախ կուսէ անկանէր.
Բայց զաջակողմն Նէմցին հարաք կարեւմէր.
Վաղվաղ վէգիրն առ արքայն մեր թուղթ
գրէր:

Զօրաց Նէմցին բուռն է մէջն քան զեվձէնին.
Ուստի զպատնէշս առին յոյժ առաւօտին.
Փեռէր վէզիրն գփունջս մօրուաց լալագին.
Փոխիմ, ասէր, յաստի կենացս ցաւագին:

Կորիցեն զանձք, պաշտօնատարք ընդ նմին.
Տէֆտէրխանայք միայն աստի ապրիցին.
Թղթակերպ գոյն գգեցաւ չըքնաղ դէմք
վէզրին,
Որպէս արարն այլոց Մօսայ յաշխարհին:

[6] Զըմլըհեռ, Թուրք. Զըլմըհեռ. աղաւաղուած անուն մը:

Զնդժոյգ ձին իւր խնդրէր ի մէջ ձիանց,
Զի փախիցէ գոնէ Նէմցէին ձեռաց.
Իշխանք վէզիրին լային ի ներքոյ վրան,
Յուսակցէին յանձինս յայն օր զմիմեանց:

Անդ կարկաչմունք արեանց, արեգական
լաց,
Գոչումն լերանց եւ ձայնք ձիոց խնջմանց.
Ծածկիւր երես հողոյն մարմնով դիականց,
Զերեւէին երկինք ի դիզեալ փոշեաց:

Աւուր ժամն էր իբրու հասեալ երեկոյ.
Եկն Մարշալ սուրբ դրօշակին ի ներքոյ.
Ընդ Քիւրթ փաշին երկուքն եկին սուր սրոյ.
Գերեալ առին ըզդրօշակ մեր հուսկ յետոյ:

Զվաթսուն դրօշակ թուղօք յինքեանս ձգեցին.
Զամէն փաշայս իբրու կոյր 'ւ որբ արարին.
Գընդաց գընդաց զկաթսայս առեալ տիրեցին.
Քանդեալ եղծին զվաշտըն Հաճի Պէքտաշին:

Արդ զՕսմանցին ընաջինջ ի սպառ արարին.
Զրանակն առեալ առ դուքս զօրաց հասուցին.
ԶԵգիպտացի զօրսըն գընդով ձեռն արկին,
Եւ զՊօսնացին ընդ սուր, ընդ հուր ան-
ցուցին:

Այլ զինապանք յանտառս մտեալ խուսեցին.
Անդ ծարաւի եւ անօթի մահ առին.
Ըսպահիք մեր ներքոյ թօփի մնացին.
Առ երկիւղի սպիտակ դրօշակ ամբարձին:

Ստիպէր Նէմցէն իջնել ի ձիոյն ի գետին.
Եւ ակնարկէր զտէգսըն ձըգել առ ոտին.
Եհաս անդուստ յանկարծ հրացան ի վէզրին.
Վէրս ընկալաւ ի թիկունս իւր վերջ ժամին:

Հեծաւ ի ձի նժոյգ թաշկէն ի ձեռին,
Էջ միայնակ յափն գետոյ Սավային,
Ոչ ոք էր անդ ի ծառայիցն ընդ նմին,
Ոչ առաջնորդ անցից գետոյ Սավային:

Ըղխուճապեալս ետես յեզր Սավային,
Իբրու որրոց լեալ յարտասուաց աչք նորին.
Բողոք բառնայ զդեղ դնել ի վիրին.
Ոչ ոք է որ կայ ի սպասու վէզիրին:

Ի հողս անկեալ անցնիլ ընդ գետն կողկողին,
Ջանձինս յուսով զերծուցանել նկրտին.
Բազումք կորեան քան ի մարտին ի գետին.
Քան հազար եղաք անցեալքն ընդ վէզրին:

Առաւել էր քան զամ Պէչին այս տարին.
Մոռացոյց իսկ օր մեր եւ զօր Սէնթէին.
Քանզի գնացաք ոչ իրաւամբք յայն ամին,
Անգրթաբար սպանաք զգերիսըն Նոցին:

Առ յԱստուծոյ վրճարս առաք ընդ նորին,
Զնըմին նման զոր արարաք ի Մօռային.
Առաք կարգաւ ըզմեր բաժին յայս ամին,
Դու արարեր, Տէր, զիրաւունս մեր անձին:

Ժ.

# ԵՐԶՆԿԱՑԻ ՅՈՎՀԱՆՆԷՍ ԻՇԽԱՆԻ

## ԵՐԳՍ Ի ԾՆՆՈՒՆԴՆ ՔՐԻՍՏՈՍԻ

---

## ԵՐԳ ԱՍԱՑԵԱԼ ՏԵԱՌՆՈՐԴԻՈՅ ՄԵԾԻ ԻՇԽԱՆԻՆ ՅՈՀԱՆՆԻՍԻ

### Ի ԾՆՆԴԵԱՆ ԽՈՐՀՈՒՐԴՍ ՈՐԴԻՈՅՆ ԱՍՏՈՒԾՈՅ

Տնաւրինի անեղանելի Բանն թանձրացեալ
ի մարմնի.
Էակիցն Հաւր անժամանակ,
փառակից Հոգւոյն.
Բաբունեաց ստեղծիչն ի կուսէն
ծնանիւր տեսանի.
Սահմանի անսահմանն ի մարմնի ծընեալն
ի կուսէն:
Աստուած յերկնից եւ մարդ նշմարիտ
շրջել յերկրի ժառանգ տըւաւ հեթանոսաց.
Բաբունեաց պետ անսահման ծոցածին,
ծընունդըն Հաւր.
Գերագոյն փառակից Հոգւոյն
եւ Աստուած բոլորից տէր Յիսուս:
Իմաստութիւն Հաւր եւ լոյս անճառելի,
լուսաւորեա'[1] զխաւարեալքս մեղաւք:
Սարսափելի պաղատանաւք մաղթանս
մատուցանեմք
նորոգել զհոգիս մեր ի քեզ:

---

[1] Զ. լուսաւորեայ:

*Երզնկայի Սարգիս արքեպիսկոպոսի որդին էր Յովհաննէս, Երզնկայի «մեծ իշխանը»:*

*Հայր եւ որդի կը յիշուին առաջին անգամ* 1266*ին. Էջմիածնի Թ.* 823 *ճառընտիրը կ'օրինակուի «յարհեպիսկոպոսութեան տեառն Սարգսի մարհասիայի մեծի, ի քրիստոսապսակ իշխանին մերոյ պարոն Յովհաննէսի տեառն ծառայի ի յԵկեղեաց գաւառն Երզնկայ»: Երուսաղէմի Թ.* 1925 *Աստուածաշունչը գրուած է* 1269*ին «հրամանաւ եւ արդեամբք տեառն Սարգսի սրբասէր եւ արհիական եպիսկոպոսի եւ նորին հարազատ որդւոյ աստուածասէր եւ քրիստոսապսակ իշխանին պարոն Յոհաննէսի, ի վարժումն անձին իւրոյ եւ ի պէտս սրբոյ եկեղեցւոյ»: Լանջախաչի մը արձանագրութիւնն է «... ողորմութիւն քո տեսցէ գծառայ քո Յոհ. որդի տեառն Սարգսի Թվ. ՉԺԹ» (Թորոս Աղբար, Բ.,* 294*):* 1272*ին Աւետարան մը կ'աւարտի յԵրզնկա «ի հայրապետութեան տէր Սարգսի, յիշխանութեան որդւոյ նորա պարոն Յոհաննիսի. որ է ի ժամանակս սոցա խաղաղութիւն քրիստոնէից» (Հանդ. Ամս.* 1924*, էջ* 514*):*

*Հայր եւ որդի կը նահատակուին դաւաճանութեամբ* 1276*, մարտ* 30*ին (ըստ Ապու՛լ Ֆարաջի. հմմտ. Քիւրտեան, Երիզա, էջ* 129—135*):*

*Յովհաննէսի որդիներէն կը յիշուին Ներսէս եւ Գրիգորիս (Քիւրտեան, անդ, էջ 135) :*

*Պր. Յովհաննէս գրասէր եւ գրագէտ էր : Իր գրագիտութեան վկայ է գողտրիկ Երգս, զոր ընծայած է իր արհիապատիւ Հօրը, ինչպէս ցոյց կու տան Երգին առաջակայ սկզբնագրերը* ՏԷՐ ՍԱՐԳԻՍ. *ուստի հեղինակը ոչ թէ տէր Սարգիսն է, ինչպէս համարած են Ֆինկ-Գեանջեցեան, այլ տեառնորդի Յովհաննէս*[1] :

*Երգս պահուած է Տիւպինգենի համալսարանի հայերէն ձեռագրաց Թ. 61, Թղ. 272ա—բ (Ցուցակ, էջ 94) խազագրուած :*

*Շնորհակալութիւնս կը յայտնեմ Պր. Էմմանուէլ Սեւրուգեանի, որ հաճեցաւ հոգալ ինձ նոյն ձեռագրի երկու էջերու լուսանկարը :*

[1] F. N. Finck und L. Gjandschezian, Verzeihnis der armenischen Handschriften der Kgl. Universitätsbibliothek zu Tübingen, 1907. S. 94.

# ԺԱ.

# ՅՈՎՀԱՆՆԷՍ Վ. ՍԵԲԱՍՏԱՑԻ

## ԿԵԱՆՔՆ ՈՒ ԳՐԱԿԱՆ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԻՒՆԸ

1. Ղրիմի գաղթականութիւնը նոր աճում ունեցաւ ԺԴ. դարու երկրորդ քառորդին. հասան այնտեղ Հայաստանէն փախստականները նոր կարաւաններ: Քաղաքական անցքերն անտանելի ըրած էին կեանքն երկրին մէջ: Թաթարներու մեծ պետութիւնը կազմալուծման վրայ էր. «ամէն ծայր եւ անկիւն»[1] մէկ նոր իշխող. քաղաքային կռիւները, որոնք զայրացած էին, նաեւ Հայաբնակ գաւառներու մէջ կը գործէին նախճիրներ: Յիշատակագիր մը, որ 1338ին Երզընկա կ՚աւարտէր Աւետարանի մը օրինակութիւնը, կը յայտնէր թէ «Վասն դառնութեան ժամանակիս ի հինգ տեղիս փախեցեալ եղաք ի գրել սորա... զի ի դառն եւ ի նեղ ժամանակի գրեցաւ. զի յայսմ ամի (ն)որ Տամուրտաշ յայտնեցաւ եւ եկն ի վերայ աստուածապահ քաղաքիս Երզնկայիս եւ ժողովեց զամենայն շուրջակայիցս ըզքուրթ եւ զթաթար եւ պաշարեաց զքաղաքս եւ նստաւ ի վերայ սորա ամիսս Դ. եւ ի դառն նեղութիւն հասոյց. բայց քաղաքին

---

[1] A. Müller, Der Islam im Morgen- und Abendland, II, 255—256:

*ոչինչ կարաց վնասել. զի Աստուծոյ զաւրութիւնն պահէր զնա: Ապա զերկիրս խիստ դառ(ն)․․․․ (դառնութեամբ) ի սուր սուսերի մաշեց եւ զոմանց զինչ եւ զստացուածս յափշտակեց. եւ ոմանք փախեան (եւ) ի ձիւն եւ ի սառն մեռան, զի ձմերային էր ժամանակն. զի որ ի տան բնակէր՝ ի ձեռս նոցա մատնէր, եւ որ փախչէր ի ցրտոյ տոչորէր: Եւ յետին չունչն հասաւ երկիրս այս. եւ իմ լսէի եւ տեսանէի զայս եւ բազում տրտմութենէն ոչ կարէի գրել զգիրս»*[2]:

*Նոյնպէս Գրիգորիս քահանայ կ'օրինակէ Ճառընտիր մը* 1341*ին Երզնկա «ի դառն եւ ի յանհանգիստ ժամանակիս․․․․ զի վասն ծովացեալ մեղաց մերոց զաւրացեալ են ազգն Նետողաց ի վերայ քրիստոնէից եւ ի սուր սուսերի մաշեն եւ յաւար հարկանեն եւ ի գերութիւն վարեն զբազում զաւառս. եւ բազում եւ անիրաւ հարկապահանջութեամբ դատեն զամենեսեան. եւ այլ բազում չարիս լինի ի ժամանակիս մերում, զոր ոչ է կար մեր մի ըստ միոջէ պատմել կամ ընդ գրով արկանել: Իսկ մեք ոչ ունելով հանգիստ՝ այսր անդր շրջելով եւ փախստական լինելով էաք որպէս գառինս ի մէջ գայլոց»*[3]:

*Աւետիս քահանայ նոյն տարույն կ'օրինակէ Շարակնոց մը «ի ժամանակս անբարի աւուրցս, զոր յարեաւ ազգ Նետողաց ի վե-*

[2] *Ձեռ. Երեւան, Պետ. Թանգ.* 102:

[3] *Ձեռ. Վենետիկ Մխիթարեանց Մատ. Թ.* 207. *Սարգիսեան, Ցուցակ, Բ.* 174—176:

րայ մխմեանց եւ զբազում գաւառս եւ զքա-ղաքս եւ զամենայն աշխարհս արեւելից մին-չեւ ի մուտս արեւոյ ի գերութիւն վարեցին եւ զքահանայս եւ զկրաւնաւորս ոմանս սրա-խողխող արարին եւ զոմանս կողոպտեցին»[4]:

Կռիւները կը շարունակուէին նոյն սաստկութեամբ դեռ 1343ին, երբ Ներսէս սարկաւագ կ'օրինակէր Ճարակնոց մը յԵր-զնկա․ «ի դառն ժամանակի էաք․ որ երեկ Սուլայման ղանն ու գնաց ի Ցարաթնին[5] վերայ ի Սեբաստիոյ, նայ Աստուծով յաղ-թեց Ցարաթնան ու փախստեայ արար զնո-սայ»[6]:

Այս ընդհարմանց եւ ապստամբութիւն-ներու հետեւութեամբ «քանդեալ եւ աւե-րեալ եղեւ աշխարհս ամենայն առ հասարակ յարիւնարբու ազգէն նետողաց․ եւ եղեւ անապատ ի մարդոյ եւ յանասնոց․ եւ տա-րածեցաւ սով... եւ բազում առաքելաշէն եկեղեցիք դրունքն փակեցան․ եւ աղաւթք եւ սուրբ պատարագք խափանեցան եւ ըն-պայք եւ սուրբ աւետարանք գերի վարեցան» ինչպէս կը գրէ յիշատակագիր մը 1347ին[7] յետսահայեաց ակնարկով մը:

---

[4] Պարիս, Ազգ․ Մատ․ Թ․ 67, 122ա:

[5] Արթենա ամիրայի մասին է խօսքը, որ կը տիրապետէր Փոքր Ասիա․ Միւլլէր, անդ 226:

[6] Ձեռ․ Վիեննայի Մխիթ․ Մատ․ Թ․ 173, 231ա․ Տաշեան՝ Ցուցակ, 489:

[7] Ձեռ․ Բրիտ․ Միւսէոնի, Conybeare, A Catalogue, Nr. 6, էջ 8:

2· Այս փախի տարիներուն, հաւանօրէն 1343ին, երբ Սեբաստիա փոխադրուած էր կռուադաշտը, Յովհաննէսի հայրը՝ Պարոնշահ դուրս ելաւ հայրենի տունէն, Սեբաստիայէն, փնտռելու համար օտարութեան մէջ իր դերդաստանին համար խաղաղ անկիւն մը։ Այս շրջանին համբաւ հանած էր Ղրիմեան թերակղզին, իբրեւ անդորր նաւահանգիստ, ուր կը հոսէին գաղթականներու խումբեր բոլոր հարուածուած գաւառներէն։

Նաւը բերաւ հասցուց Ղրիմ նաեւ Պարոնշահի դերդաստանը, որուն անդամներէն կը յիշուին ամուսինը՝ Տիկին, ուստերք՝ Տ· Յովհաննէս կուսակրօն քահանայն, իմաստուն վաճառական պարոն Յակոբ եւ դրամարտիկ Ղազարոս, դուստրներ, որոնցմէ մին ամուսնացած էր պարոն Աւագի հետ[8]։ Պարոնշահ հաստատուեցաւ ի Սուրխաթ։ Հաւանօրէն ինքն ալ, ինչպէս իր որդին Յակոբ, կը պարապէր վաճառականութեամբ։

3· Յովհաննէս ծնած է Սեբաստիա· յի–

[8] Աւետիս Նազարեանց կը գրէ 1362ին «Յիշեսջիք զվերոյգրեալ տէր Յոհաննէս եւ զծնաւղսն ըստ մարմնոյ զպարոն Պարոնշահն եւ զՏիկին զփոխեցեալսն առ Քրիստոս եւ զպատուելի եղբարսն իր՝ զիմաստուն վաճառականն զպարոն Յակոբն եւ զՂազարոս դրամարտիկ եւ զպարոն Աւագն փեսայացեալն նոցին· նաեւ զքոյրն եւ զամենայն արեան մերձաւորսն»։ Երեւան Ձեռ· 24, էջ 271բ· Խաչիկեան, Յիշատակարաններ ԺԴ· դարու, էջ 456։ Հմմտ· եւ Զարբհանալեան՝ Մատենադարան Թարգմ· Նախնեաց, էջ 389։

շատակագիր մը Մարկոս կաֆացի կ'անուանէ զինքը «բնական Սեբաստացի»: Ի թվաբերութեանս Հայոց ութհարերորդի տասներորդի իններորդի (1370), ի կաթողիկոսութեանն տեառն մերոյ Մեսրոպայ, եւ այսմ նահանգի գիտաւորութեանն աթոռակալի Յովհաննէս աբեղայի կորովամտի, յոյժ հմուտ աստուածաշունչ մատենից, բնական սեբաստացի, ձեռամբ նուաստ Մարկոսի փցուն գրչի, ի մայրաքաղաքի, որ Կաֆայ անուն յորջորջի»[9]: Անշուշտ իր ծննդավայրին մէջ առած է նաեւ կրթութիւնը: Որովհետեւ 1346ին, երբ առաջին անգամ հրապարակ կու գայ պատմութեան մէջ, Յովհաննէս կը ներկայանայ արդէն իբր աբեղայ (կը կոչուի նաեւ «կրօնաւոր» եւ «կուսակրօն վարդապետ»), պէտք է ընդունիլ թէ անիկա արդէն ի Սեբաստիա նուիրուած էր եկեղեցական կոչման եւ ձեռնադրուած աբեղայ:

Իր կեանքի ապարէզէն մանրամասնութիւններ ծանօթ չեն. Ժամանակակիցները միաբան կը ճանչնան զինքը «ամենայն հիւսիսային կողմանց» առաջնորդին կամ եպիսկոպոսին «աթոռակալը» կամ «երեսփոխանն» եւ կամ «երկրորդը»: Երբ առիթ ընծայուի յիշատակելու եպիսկոպոսը, առընթեր կը յիշեն նաեւ զինքն այսպէս. «գրեցաւ յառաջնորդութեան առաքելական իշխանութեան Տ. Ստեփաննոսի եւ յաթոռա-

[9] Խաչիկեան, Յիշատ. ԺԴ. դարու, էջ 494:

կալութեան հանճարեղ հռետորի Յովհաննէս արեղային» (1346)[10]: «Յայսմ ամի էր վերադիտող այսմ աշխարհի ամենայն հիւսիսային կողմանց տէր Ստեփաննոս եւ երկրորդ նորա Յովհաննէս արեղայ, այր ընտրեալ եւ գովելի յաւրէնս Աստուծոյ, ուղղափառ կրաւնիւք» (1352)[11]: «Ի յառաջնորդութեան այսմ նահանգի վերատեսուչ եւ արհիական եպիսկոպոսի տէր Ստեփաննոսի եւ երեսփոխանի նորին տէր Յովհաննէս արեղայի, կորովամիտ եւ ուղղափառ հռետորի Սերաստացւոյ» (1357)[12]: Աւետիս Նատերանց կ'օրինակէ Դ. Արիոպագացւոյ մատեանը «հրամանաւ եւ արդեամբք ողջախոհ եւ իմաստուն կրաւնաւորի տէր Յովհաննիսի Սե-

[10] Սրուանձտեանց, Թորոս Աղբար, Բ. էջ 426—427 եւ Խաչիկեան, անդ էջ 349:

[11] Խաչիկեան, անդ էջ 401:

[12] Խաչիկեան, անդ էջ 428: Երեւանի Մատենադարանի Թ. 2943 (Սարգիս Շնորհալւոյ՝ Մեկնութիւն Կաթ. Թղթոց) Ձեռագրին յիշատակարանը «գրեցաւ սա ի քաղաքս Ղրիմ, ընդ հովանեաւ ս. Ստեփանոսի նախավկային ի Թուաբերութեանս Հայոց ՊԵ (1356) ի հայրապետութեան տեառն Մեսրովպայ (1359—72) եւ ի Թագաւորութեան Կոստանդեայ (1345—63) եւ յեպիսկոպոսութեանն տէր Ստեփանոսի եւ յաթոռակալութեան տէր Յովհաննիսի» (Խաչիկեան, անդ էջ 421) պէտք է իմանալ թէ Ձեռագիրը գրուած է ՊԵ (1356) տարւոյն, երբ կը Թագաւորէր Կոստանդին Դ., Կարապետ երէցի համար: Այս վերջինս ծախած է ձեռագիրը Վրթանէս հարպետին, երբ Մեսրովպ էր կաթողիկոսը: Յիշատակարանը կը պատկանի Վրթանէսի, ուստի գրուած է ընդմէջ 1359—1362 տարիներու:

բաստացւոյ, աթոռակալի տէր Ստեփաննոսի, որ եւ ստացաւ մեծափափագ տենչանաւք գիրքս աստուածարեալ ի սփոփանս մխիթարութեան անձին իւրոյ սրբասիրի» (1362)[13]: Նոյն յիշատակարանին մէջ է նաեւ տեղիքս. Աւետիս՝ ի Սիս «գտեալ զաւրինակս զայս գրեցի մեծաւ փափագմամբ եւ բերեալ փոխարկեցի (վերստին օրինակեցի) եւ տեառն իմոյ Յոհաննիսի. որոյ յոյժ ուրախացաւ ի գալ աւրինակի սորայ եւ բազում սէր եցոյց մեզ»:

Ստեփաննոս եպիսկոպոս, Ղրիմի առաջնորդը, հաւանաբար 1365ին կը վախճանի, որովհետեւ հետագայ Յիշատակագիրներէ այլ եւս չի յիշուիր անոր անունը: Կարապետ դպիր, որ զինքն կը յիշէ 1365ին, Օգոստոս 15ին, իր յիշատակարանին վերջաւորութեան, ուր կը խնդրէ յիշել գրքին կազմարարը Մաղաքիա՝ հեղահոգի կրաւնաւորը, մաղթանք մը ունի հետեւեալ կերպով. «Քրիստոս Աստուած յարութիւն պարգեւէ տէր Ստեփաննոսի հայրապետի... հոգւոյն եւ իւր եղբարցն, որ զճաշոցս կազմիւ եւ կազմիւ եւ արծաթ կոճակով եւ լաթիւ եւ չարքուրիւ զարդարեաց: Աստուած զիւր ծնաւղացն հոգին զարդարէ յերկնից արքայութիւնն, ամէն:

Ընդ նմին եւ յիշեցէք զտէր Մաղաքիա հեղահոգի կրաւնաւորն, որ զճաշոցս կապեաց եւ կազմեաց, յիշեցէք ի Քրիստոս եւ

[13] Խաչիկեան, անդ, էջ 456:

մեղաց թողութիւն հայցեցէք» (Խաչիկեան, անդ, էջ 469)։

4. Ստեփաննոսի մահէն ետք աթոռին կառավարութիւնն իբրեւ տեղապահ աթոռակալ երկար ժամանակ մնաց Յովհաննէսի ձեռքը։ Ժամանակակից յիշատակարաններ յաջորդաբար կը յիշեն իր անունը կաթողիկոսի անուան կից 1368էն մինչեւ 1380 թուական։

Ստեփաննոս գրիչ որդի Նատերի իր 1368 թուին գրած յիշատակարանին մէջ ներբողը կ'ընէ Յովհաննէսի գործունէութեան եւ ուսումնասիրութեան նկատմամբ. «Արդ յամենառատ շնորհացն Աստուծոյ լցեալ արժանաւորն այրն Աստուծոյ, սրբազան եւ առաքինի, վեհիմաստ եւ հանճարեղ, կորովամիտ եւ խոհեմիմաց, սրբասէր կրաւնաւոր քահանայն տէր Յովհաննէս, աթոռակալ այցելութեան հիւսիսական աշխարհի, ստացաւ զգիրքս աստուածային մարգարէից, եւ զատաս նորոց կտակարանաց, զքրիստոսախաւս աւետարանութիւնս, եւ զառաքելոցն սրբոց զգործսն եւ զքարոզութիւնսն եւ զյայտնութիւն ահագին տեսլեան սրբոյ աւետարանչին Յովհաննու ի մի տուփ, շատ եւ յոլով ծախիւք, զարդարելով խորհրդական նկարակերպութեամբ՝ ոսկիագարդ եւ երանգաներկ գունովք, ի սփոփանս եւ ի զուարճութիւն անձին իւրոյ եւ յիշատակ ոգւոյն առ յապա յաւիտեան։ Եւ այնչափ ունէր փոյթ յանձն իւր եւ սէր, եւ սիրէր յոյժ գրանն Աստուծոյ, մինչ զի ոչ տայր քուն աչաց

կամ նինջ արտեւանաց յընթեռնլոյ զգիրս սուրբս եւ քննելոյ զխորս խորհրդոցն, որ ծածկեալ են ի նմա: Որ եւ շնորհաւքն Աստուծոյ հասու եղեալ ամենայն մտաց գրելոց սրբոց անտարակոյս լեզուաւ տայր զլոյս բանին Աստուծոյ ի սիրտ եւ յոգի ունկնդրաց, որ քաղցր թուէր ի քիմս իմանալոյն, քան զմեղր բերանոյ, որ եւ ժողովեալ գրեանս բազում մեկնչաց ի սրբոց հարանց բացայայտեալ՝ զբոլոր աստուածաշունչ գրոց մեկնութիւնս, եւ զի գրաւէր գոլով ստացու զամենայն գրեալսն եւ անյագ փափագմամբ ընթեռնոյր, ուսանէր եւ ուսուցանէր, ոչ միայն բանիւ, այլ եւ արդեամբք ի գործ բերեալ արձանացուցանէր զուսեալսն ի գրելոց սրբոց: Ցորում եւ ընդ բազում արդիւնաւորութիւնսն զոր առնէր, արմատացուցեալ կանգնեաց վանս իւր եւ տաճար երկնանման գեղապաճոյճ, կամարաձեւ, գմբեթայարկ, սրբագործ վիմաւք, ոսկեզօծ գեղազանութեամբ, տեղի անտանելոյն եւ ի հանգիստ անախտ կամացն Աստուծոյ եւ գենարան զաւրինն անմահի, անուանելով զնա սուրբ Նշան, հինգ խորանաւք, ինն ատիճանաւք յաւրինակ վերնոյն Սիոնի, կարգեալ ի նմա պաշտաւնս սրբէանմանս, կուսակրաւնս եւ սրբամաքուրս, հրեշտակաղեղս զուարթապատկեր, անդադար բերանով եւ անհանգիստ բարբառով պաշտաւորելով մշտամռունչ փառաբանութեամբ արարչին ամենայն արարածոց Աստուծոյ

Հաւր եւ Յիսուսի Քրիստոսի եւ Հոգւոյն ճշմարտի, որում փառք։

Արդ աղաչեմք զկնի ենկեալ մեր եղբարդ սիրովն Քրիստոսի, որք պատահիք հոգիաձիր տառիս եւ հանդիպիք աւգտութեան ինչ իւիք, յիշեսջիք ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր եւ յԱստուած զարժանին յիշատակի, զերջանիկ կրաւնաւոր զտէր Յովհաննէս՝ ստացաւղ գրոցս, զի յոյժ աշխատութեամբ եւ բազում հոգածութեամբ ջանաց յաւարտումն գրոցս, հանելով ինչս բազումս, մինչ յանդ հանեալ աւարտեաց, զոր Տէր Աստուած վայելել տացէ, ամէն։

Յիշեսջիք եւ զծնաւղսն նորին, զփոխեալսն առ Քրիստոս՝ զպարոն Պարոնշահն եւ զՏիկկին, մանաւանդ զհարազատ եղբայր տէր Յովհաննիսի՝ զսիրելի եւ զհամակ արի զՂազար յիշեսջիք ի Քրիստոս, որ յամս յայս փոխեցաւ առ տէր, թողեալ սուգ մեծ սիրելեաց ազգականաց իւրոց, եւս առաւել եթող տրտմութիւն անմխիթար տէր Յովհաննիսին, զի եղբայր կամարար էր նմա, եւ յամենայն գործս բարութեան կամակից, իբրեւ զաւազան յենլի եւ որպէս ցուպ ի ձեռին, իբր զքաղաք ամուր եւ հաստատեալ թագաւորութիւն, եւ ըստ Դաւթայ՝ վայելուչ էր բնակելն նոցա ի միասին, քանզի եւ ինքն Ղազար այր զոլով կատարեալ հաւատով, սիրեաց զմիայնութիւն՝ հետեւելով կոչմանն Քրիստոսի, բառնալով յուսն զխաչն տեառն, հոգացեալ զտեառնն միշտ

*եւ ոչ զաշխարհի, եղեալ մի ոգի միացեալ ի տէր, լինել ամաց յիսնից, բարւոք վարուք կեցեալ յաշխարհի, վերափոխեցաւ յանդրանկաց խորանսն երջանիկ ընդ երանելիսն, եւ թաղեցաւ պատուական մարմին նորա ընդ հովանեաւ նորաշէն սրբոյ տաճարին սուրբ Նշանին, որում եւ բազում էր աշխատեալ նոյն ինքն Ղազարն ի կանգնումն նորին տաճարի :*

*Հուսկ յետոյ, եթէ ախորժէք, յիշեսջիք ի Քրիստոս եւ զանպիտան գրիչս զՍտեփանոս քահանայ, որ եւ ես աշխատեցայ ի սմա, մասն ինչ գրեցի՝ զնոր կտակարանս բովանդակ եւ զսաղմոսն, բայց ի յայտնութենէն, հրամանաւ տէր Յովհաննիսի եւ կատարեցաւ ձեռամբ բազմամեղիս :*

*Գրեալ էր հին կտակարանս յաշխարհն Փանկաց, ձեռամբ աբեղայի միոջ Առաքեալ կոչեցելոյ, ի քաղաքն Պաւլաւնիա, եւ կատարեցաւ ձեռամբ Ստեփանոս քահանայի, որդւոյ Նատերի, ի քաղաքս Կազարիա, որ եւ Խրիմ առձայնի, ի թուականութեանս մերում ՊԺԷ* (1368), *յետ երից ամաց անցելոյ առման քաղաքիս, յորում զկնի եկն սով սաստիկ եւ սատակեաց անհամար եւ անթիւ ոգիս, որ եւ գրելոյ անկար է» (Խաչիկեան, անդ, էջ* 484—487) :

*Յաջորդ յիշատակագիրները կը յիշեն Յովհաննէս Սեբաստացին այսպէս. «Ի թվաբերութեան Հայոց ՊԺԹ* (1370) *ի կաթողիկոսութեան տեառն մերոյ Մեսրովպայ, եւ*

այամ նահանկի դիտաւորութեան աթոռակալի Յոհաննէս աբեղայի կորովամտի» (Խաչիկեան, անդ, էջ 494) :

1371. «Ի հայրապետութեան տեառն Մեսրոփայ, եւ յաթոռակալութեան տէր Յովհաննիսի իմաստնոյ եւ խոհեմականի» (Խաչիկեան, անդ, էջ 496) :

1372. «Գրեցաւ գիրս... ընդ Հայոց թվականին ՊԻԱ, Դեկտեմբերի ամսոյ ի Իէ: Այս գիր հոգեւորական հրամանի եւ հաստատութեան է նուաստ Յովհաննիսի կրօնաւոր քահանայի, ծառայի Յիսուսի Քրիստոսի Աստուծոյ մերոյ, շնորհաւք եւ ողորմութեամբ նորին աթոռակալի հիւսուսական կողմանց» (Խաչիկեան, անդ, էջ 504—505 :

1374. «Ի թուականիս Հայոց ՊԻԳ, Մայիս ամսոյ ԼԱ, ի մուտն Յունիս, ի հայրապետութեան տեառն Կոստանդեայ, ի եպիսկոպոսութիւն եւ ի յաթոռակալութեան տէր Յոհաննիսի կրաւնաւորի Սեբաստացւոյ կորովամտի» (Խաչիկեան, անդ էջ, 514) :

1375. «Ի թուաբերութեանս Ասքանազեան եւ Յաբեթական տաւմարի ի ՊԻԴ... ի հայրապետութեան տեառն Կոստանդեայ.. եւ յաթոռակալութեան ամենայն հիւսիսական կողմանց Յովաննէսի Սեբաստացւոյ, հանճարեղ եւ իմաստուն հռետորի» (Խաչիկեան, անդ, էջ 518) :

1377. «Արդ, գրեցաւ սա ի քաղաքս Ղրիմ, յաթոռակալութեանն Յովաննէս կրաւնաւոր

*քահանային, քաջ եւ իմաստուն եւ ուղղափառ առաջնորդին ի թուականութեան Հայոց ՊԻՁ»* (*Խաչիկեան, Անդ, էջ* 524) :

1380. *«Ի յաթոռակալութեան ամենայն Հիւսիսական կողմանց տէր Յովհաննիսի կրաւնաւորի Սեբաստացւոյ»* (*Պարիս, Ազգ. Մատ.* 80) :

*Թէ ինչու եպիսկոպոսական աթոռն այսքան երկար դատարկ մնաց, յայտնի չէ: Հանգուցեալ եպիսկոպոսին յաջորդ չէ ընտրուած ինքնին Յովհաննէս աթոռակալ, որ կը վայելէր յարգանք եւ վստահութիւն:* 1380*ին տեղի ունեցած է ընտրական ժողովը եւ թեկնածու նշանակուած է Քրիստանի որդին Խաչերես: Սա նոյն տարին ընկերակցութեամբ Նասրատինի որդւոյն Յովհաննէսի, որ նշանակուած էր թեկնածու Լեհաստանի թեմին, կը մեկնի Սիս, ընդունելու կաթողիկոսէն եպիսկոպոսական ձեռնադրութիւն: Խաչերես կոչուեցաւ Ստեփանոս եպիսկոպոս, «տղայ հասակաւ» էր, մինչ Յովհաննէս իր աթոռակալութեան մէջ, օժտեալ իմաստութեամբ եւ խոհականութեամբ անչափահաս եպիսկոպոսին:*

1381*ին Ստեփանոս Նատերանց ի Ղրիմ կ'օրինակէ Երեւանի Թ.* 7477 *ճաշոցն ի Ղրիմ քաղաք, «յեպիսկոպոսութեանն տէր Ստեփանոսի եւ յառաջնորդութեան եկեղեցւոյ սրբոյ Յովհաննէս կրաւնաւոր քահանայի, եւ աթոռակալի այսմ նահանգի՝ բարեփառ*

*եւ ուղղադաւան վարդապետի» (Խաչիկեան, անդ, էջ* 538)։

1384*ին Մարկոս գրիչ կ'օրինակէ Երեւանի Պետ. Թանգարանի* 7402 *Թիւ Ճաշոցն ի Կաֆա, «յեպիսկոպոսութեան տէր Ստեփանոսի տղայ հասակաւ եւ յաթոռակալութեանն տէր Յովանիսի Սեբաստացւոյ իմաստնոյ եւ խոհեմականի» (Խաչիկեան, անդ, էջ* 548)։

1384 *Թուականէն յետոյ յիշատակագիրները կը լռեն Յովհաննէսի մասին։ Այս միջոցին վախճանած ըլլալու է «ամենայն հիւսիսական կողմանց» արդիւնաւոր աթոռակալը յետ իբր քառասունամեայ աթոռակալութեան։* 1390*ին Վարդան սարկաւագ կ'օրինակէ Երեւանի Թ.* 2090 *Նարեկը «յաշխարհիս Հոնաց, մաւտ առ մայրաքաղաքն Սուլղաթ կոչեցեալ, ի սուրբ մենաստանս, որ կոչի Հայր Յովանիսի, առ դուռս տաճար(ին) Տիրամաւրն եւ այլ սրբոց. ի հայրապետութեան տեառն Թէոդորոսի եւ յեպիսկոպոսութեան աշխարհիս այս տէր Ստեփանոսի». ուստի առանց աթոռակալի յիշատակութեան (Խաչիկեան, անդ, էջ* 586)։

5. *Կոչումները «կորովամիտ, յոյժ հրմուտ աստուածաշունչ մատենից*[14], *«քաջ իմաստախոհ վարդապետ*[15], *«հանճարեղ եւ իմաստուն հռետոր*[16]*» են ցոյց կու տան Թէ*

---

[14] *Խաչիկեան, Յիշատ. ԺԴ. դարու, էջ* 494։

[15] *Երեւան Ձեռ. Թ.* 372։

[16] *Երեւան Ձեռ. Թ.* 116։

Յովհաննէս ուսումնասէր էր եւ հմուտ աստուածաբանական գիտութեանց, եւ ունէր իր ուսուցչական շրջանակը, թէ բեմի վրայ եւ թէ դպրոցներու մէջ: Ուրիշ յիշատակագիր մը, Կարապետ դրիչ (1363) կ'անուանէ զինքը նաեւ «կորովամիտ վարդապետ եւ հոգեւոր իմաստասէր, հերձուածողաց հալածող եւ ցոփագնացից ահ արկանող[17]», որ յայտնապէս բեմական եւ դպրոցական գործունէութեան կը հայի:

Բաց ի հռետորական ասպարէզի վրայ անուանի ըլլալէ՝ Յովհաննէս ջանք տարած է մղում տալ գրչութեան արուեստին մասնական յանձնարարութիւններով· 1362ին իր հրամանաւ եւ արդեամբք օրինակած է Աւետիս Նատեր Դիոնեսիոս Արիոպագացւոյ գրութիւններու հաւաքածոյքը[18]· 1363ին Գրիգոր Սուքիասեանց օրինակած է Դաւիթ Անյաղթի եւ այլ իմաստասէրներու գործերը եւ Ներսէս Շնորհալւոյ Տաղաչափութիւնները ի վայելումն Յովհաննէսի[19]: Իր անձնական պէտքին համար օրինակուած է նաեւ Երեւանի Պետ· Թանգարանի Թ· 372 ընտիր Գանձարան — Տաղարանը: Իր օրով ծաղկեցան ի Ղրիմ Նատեր եւ Նատերեանք, Սուքիասեանք, Թորոսեանք, որոնք մատակարարեցին եկեղեցիներուն ընտիր գրչու-

17 Խաչիկեան, անդ, էջ 461:

18 Խաչիկեան, անդ, էջ 456:

19 Տաշեան, Ցուցակ, Վիեննա, էջ 1020, եւ Խաչիկեան, անդ, էջ 380—381:

թեամբ բազմաթիւ եւ լայնահատոր երկեր:

Անշուշտ լաւ յարաբերութեան մէջ ապրեցաւ Յովհաննէս ժամանակակից նշանաւոր դէմքին, Աւետիք ճգնաւորի հետ, որ այս շրջանին նշանաւոր հանդիսացաւ իբրեւ շինող եկեղեցեաց եւ դպրոցներու քաջալերիչ ի Կաֆա:

Յովհաննէս արդիւնաւոր էղաւ նաեւ շինարարական գործերով. ինքը կառուցանել տուած է Ս. Խաչի եկեղեցին 1356ին, ինչպէս արձանագրութիւնը կը վկայէ «սատարութեամբ... հարազատ եղբարց նորին եւ ըստ հոգւոց որդւոց բանին», այսինքն ժողովրդեան: «Սուրբ Խաչի վանաց՝ ի վերայ գումբէթի երկաթագիրն է այս» ըստ էջմ. Թ. 1636, թղ. 119ա (ԺԸ. դարէն):

ՓԱՌԱՑ ՏԱՃԱՐՍ ԱՍՏՈՒԱԾԱՅԻՆ
ՅԵՐԿՐԻ ԴՐԱԽՏ ԿԵՆԱՑ ՓԱՅՏԻՆ,
ՈՐ Է ՊԱՏԿԵՐ ԵՐԿՆԻՑ ՎԵՐԻՆ
ԵՒ ԵՌԱՆՁՆԵԱՆԸՆ ԿԱՑԱՆԻՆ:

Ի ԾՆԸՆԴԵՆԷ ՄԱՐՄՆՈՎ ՓՐԿՉԻՆ,
ԵՐԵՔՀԱՐԻՒՐ ԵՒ ՀԱԶԱՐԻՆ,
ՅՈՒԹ ԵՒ ՅԵՐԵՍՈՒՆ ՍԿՍԵԱԼ ԱՄԻՆ
ԿԱՆԳՆԵԱԼ ՑԱՆՈՒՆ Ս. ՆՇԱՆԻՆ:

ՍԱՏԱՐՈՒԹԵԱՄԲ ԻՒՐ ԾԱՌԱՅԻՆ
ՅՈՎՀԱՆՆԻՍԻ ԿՐԱՒՆԱՒՈՐԻՆ,
ԵՒ ՀԱՐԱԶԱՏ ԵՂԲԱՐՑ ՆՈՐԻՆ,
ԵՒ ԸՍՏ ՀՈԳՒՈՑ ՈՐԴՒՈՑ ԲՆԱՒԻՆ:

(Յ. Տէր-Աբրահամեան, Պատմ. Խրիմու, էջ 157, տես եւ Բժշկեան, Ճանապարհ, էջ 324/5):

*Յովհաննու աթոռակալութեան օրով նորոգուեցաւ Սուրխաթի Ս. Աստուածածին եկեղեցին: Ստեփանոս գրիչ Երեւանի Թ. 55 ճաշոցը կ'աւարտէր 1371ին «ի հոյակապ եւ ի հռչակաւոր քաղաքիս, որ կոչի Սուրխաթ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին եւ սրբոյն Սարգսի զաւրավարի, զոր յայսմ ամի վերստին նորոգեցաւ տաճար պայծառ եւ վայելուչ»:*

*Հաւանօրէն իր անուամբ յորջորջուած է այն մենաստանն ալ, որուն համար կ'ըսուէր 1390ին «մօտ առ մայրաքաղաքն Սուլղաթ» կը գտնուի եւ կը կոչուի «Հայր Յովանիսի» մենաստան (Ձեռ. Էջմ. 2090):*

*Ժամանակակիցները, ինչպէս տեսանք արդէն, հիացմամբ կը խօսին իր բարեմասնութեանց մասին. «ողջախոհ եւ իմաստուն կրօնաւոր», «կրօնաւոր կորովամիտ», «ժրաջան կրօնաւոր եւ ուղղաբան ճարտասան», «իմաստուն եւ խոհեմական», եւ այլ յորջորջանքները, որոնք կը բաշխուին իր անուան առատօրէն, ապացոյց են թէ ինչպէս անիկա իր բարի եւ սրբական վարքով, խոհեմութեամբ եւ իմաստութեամբ վարած է իր աթոռակալութեան պաշտօնը, զոհ ձգելով հասարակութիւնը եւ պայծառացնելով եկեղեցին:*

*Ս. Խաչ: Նոտեր կ'օրինակէ Աւետ. 1347 (ԶՂԶ. այլուր ՌՋԽԹ). ի Սուրխաթ «ի Հողետներս վերի առ դուռն սուրբ Խաչին» (Խաչիկեան, Յիշ. ԺԴ. դարու, էջ 358):*

Յակոբ վ. Կաֆացի (աշակերտ Մարտիրոս Ղրիմեցւոյ) 1698ին գրած է ոտանաւոր գովեստ Ս. Խաչին (Երեւան Թ. 365, 2ա) ասկէ քաղուածաբար Բժշկեան, Ճանապ, 327:

...Կամաւ սուրբ Հոգւոյն ոմըն գիտնական,
Յովհաննէս անուն շնորհիւ պետական.
Լեալ նա յաշխարհէն մեծ սեբաստական,
Կանգնել հաւատով զվանքս սուրբ Նշան.

Ունելով ընդ իւր, փայտըն փրկչական,
Եկեալ ի յաշխարհս փառօք մեծական.
Ամփոփեալ զմասն խնամօք տեառնական,
Վերակառուցեալ զվանքս սուրբ Նշան...

Ժամանակակիցներու այս գրուածքը կարելի է ամփոփուած տեսնել Ստեփանոս գրչի հետեւեալ տողերուն մէջ, զոր կը գրէ 1354ին ի Սուրխաթ.

Եւ իմաստուն մեծ հռետորին,
Տէր Յովհաննէս կուսակրօնին,
Որ է գիտուն աստուածային
Եւ փրկութիւնն է ի բարին,
Զոր Տէր Աստուած ըստ արժանին
Զնա պահեսցէ կենօք կըրկին:

Ուշադրութեան արժանի են յատկապէս յիշատակագիրներու հետեւեալ տողերը, որոնք մասնաւոր շեշտով կ'ուզեն անոր «ուղղափառ» հաւատքը շեշտել:

Կարապետ գրիչ 1363ին ի վերջ Նանայի Յովհաննու մեկնութեան կը գրէր «յաթո-

ռակալութեան տէր Յովհաննիսի կորովամիտ վարդապետի եւ հոգեւոր իմաստասիրի, հերձուածողաց հալածողի եւ ցոփագնացից աՀ արկանողի» (Էջմ· 2611) ։ 1352ին Մելքիսեթեք միայնակեաց որ «Քիմճակի վանքին» մէջ կ'օրինակէր ճառընտիր մը յիշելով զՅովհաննէս արեղայ, կ'աւելցնէր թէ էր «այր ընտրեալ եւ գովելի յաւրէնս Աստուծոյ, ուղղափառ կրօնիւք» (Եր· 80)· ուրիշ մը 1381ին կ'անուանէր «բարեփառ եւ ուղղադաւան վարդապետ» եւն ։

Անշուշտ այս գրիչներն ունէին իրենց աչքի առաջ մասնաւոր դէպք մը եւ կամ դէպքեր, որոնց մէջ կորովամիտ հռետորը երեւան բերած է իր ուղղադաւան հաւատքը հանդէպ «հերձուածողաց», զորոնք հալածած է ։

Ի Կաֆա եւ Ղրիմի ուրիշ քաղաքներու մէջ կային մեծ թուով եւրոպացիներ, ուրիշ խօսքով լատինածէսներ, որոնք ունէին սեպհական եպիսկոպոս մ'ալ ։ Անոնց թուին մէջ կային նաեւ լատին առաքեալներ, յանուանէ Դոմինիկեաններ եւ անոնց միաբանակից Հայ Միաբանողներ ։ Վերջիններէս կը յիշուին այս շրջանին Թադէոս եպիսկոպոս, Մարուգէ, Աւետիք — Օգոստինոս, Ֆր · Յակոբ եւն · ։ Թադէոս եպիսկոպոս 1351ին կը ձեռնարկէ շինել սեպհական եկեղեցի մը ի Կաֆա յանուն սուրբ Հրեշտակապետին Միքայէլի» ։

Երկու եկեղեցիներու յարաբերութիւնք

լաւ էին սակայն, 1348 Սեպտ. 19ին յանձն կ'առնէ «Ստեփանոս եպիսկոպոսն մականուն Մալազ, կատարել Լատինաց «Սան Ֆրանցիսկի» եկեղեցւոյն մէջ, ի բացակայութեան Թադէոս եպիսկոպոսի, քահանայական ձեռնադրութիւն տէր Մարուղէի վրայ:

Երկու եկեղեցիք որչափ ալ բարեկամական յարաբերութեան մէջ էին իրարու հետ, բայց եւ այնպէս կային անշուշտ կէտեր, որոնք կու տային առիթ երբեմն վիճաբանելու, յատկապէս դաւանաբանական խնդրոց շուրջը: Կային, ինչպէս կ'երեւայ, նաեւ եկեղեցական — քաղաքական խնդիրներ:

1365ին Կարապետ դպիր խօսելով Զալիբէգ բռնաւորի վրայ, կը գրէ հետեւեալ տողերը, զորոնք ամբողջութեամբ յառաջ պիտի բերեմ խնդրոյն պայծառութեան համար.

...Ցիշեսջիք ...զփափագմամբ ստացողն սորա զՄկրտիչ աբեղայն... եւ եղբայրն իւրոյ Առաքելին... նաեւ զՀայրապետն զՑուսիկ եւ զՆահապետ աբեղայն եւ զԳրիգոր միայնակեց...: Նաեւ... զսուտանուն քահանայ զԿարապետ զծոյս սորա: Եւս առաւել զեղբայրն մեր հոգեւոր զպատուելի քահանան զՍահակն որ զաւրինակն շնորհաց...:

Կատարեցաւ սա ի թվին Հայոց ՊԺԴ. աւգոստոս ԺԵ. ի Հայրապետութեան տեառն Մեսրովպայ, յեպ — ութիւն արհիականին տէր Ստեփանոսի, ի թագաւորութիւն Կոս-

տանդիանոսի, ի հռչակաւոր քաղաքս ի Կա-փաս, առ ոտս սուրբ Երրորդութեան... ի դառն եւ ի նեղ ժամանակիս, որ երեւեցաւ յայսմ ամի Իսմայելեան ազգէն Նեռն եւ ապականիչն. զազգս քրիստոնէից սրախո-խող արարեալ. որ եւ կոչի անուն Զալի Բէգ. որ եւ զամենայն աշխարհ որ մերձակայ էր ահիւ եւ դողութեամբ պահէր դցայգ եւ դցե-րեկ:

Որ եւ աստուածային նախախնամու-թեամբն հռոմայական եւ արիական ազգէն ըստ հրամանին տէր Ներսէսի յայսմ ամի հրամանակատար եկեալ ի քաղաքս զաւն-ձաւլաւս, ըստ հրամանին Հռոմայեցւոց: Ըստ աստուածային աջողութեան զՍուլղա քա-ղաքն առեալ եւ զամենայն ինչ որ ի նմա գտեալ՝ ձերբակալեալ. եւ զինչ Իսմայելեան եւ երբայեցիք, որ են թշնամի Խաչին Քրիս-տոսի եւ քրիստոնէից՝ զամենեսեան ի սպառ կոտորեալ. եւ զինչսն դաւաճանեալ:

Եւ յայսմ ամի խռովեցաւ ժողովուրդ քաղաքիս քահանայիւքն դասիւք, սուգ եւ տրտմութիւն մտեալ ամենեքեան առ հա-սարակ. որ չարն եւ բանսարկուն թշնամին սատանայ մտեալ բանս արկ ի միտս Մեծու-նաց եւ ի հերետիկոսաց, որ զեկեղեցիս ուղ-ղափառաց ըստ յորջորջման Աստուածածին՝ խլեցին եւ հերետիկոսք բնակեցան. եւ մեծ տրտմութիւն տիրեց ուղղափառաց եկեղե-ցեացն. զոր Տէր Աստուած խաղաղութեամբ պահեսցէ զայս եկեղեցիքս անփորձ...:

Ուրիշ գրչէ։ «Քրիստոս Աստուած յաջողութիւն պարգեւէ տէր Ստեփաննոս Հայրապետին ... Հոգւոյն ... որ զճաշոցս կապիւ եւ կազմով ... կոճակով եւ լաթիւ եւ չարքուրիւ զարդարեաց։...

= Երեւան 7458, Խաչիկեան, 468/9

= Eriv. 54 (Ճաշոց, հանդերձ մանրանկարօք)։

Անկէ արտագրած է ոմն յիշատակարանս, դուրս ձգելով ինչ ինչ անուններ։ Համամճեան՝ Ցուց. Գաղատ. 54 (Կանոնագիրք եւ Թուղթք)։ Ընդգծեալք, որոնք անընթեռնլի են այժմ ի Ձեռագրին լրացուած են օրինակութիւնէս։

Կաֆայի Սուրխաթ Ս. Աստուածածին եկեղեցին, որուն վրայ է հոս խօսքը, անշուշտ այն եկեղեցին է, զոր շինած է պարոն Շահանշահ, 1336ին կը յիշէ զայն Տիրացու Երեւանցի, Երեւանի Թ. 1654 ձեռագրին մէջ.

«Ես Տիրացու... քահանայ... յօտար աշխարհս այս եկի, ի Ղրիմ քաղաքս Սւղպէկ ղանի, յեկեղեցիս պարոն Շահանշահի զգիրքըս գրեցի զՎարդանի...»։ Այլուր յիշելով նոյն եկեղեցւոյն սպասաւոր Զաքարիա կրօնաւորը կը գրէ. «սպասաւորէ Աստուածածնի, որ շինած է, պարոն Շաանշահի եւ իր խնամոյն պարոն Սարգսի... աղաչեցէք զՏէրն ամէնի, որ ողորմի Զաքարէի եկեղեցպանին պարոն Շահանշի...։ Արդ գրեցաւ ի Թվականիս Հայոց ՉՁԵ. ի մայրաքա-

ղաքս ի Սուրխաթ, որ Ղրիմ կոչի, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի, պարոն Ճահանշահի շինած» (հմմտէ Խաչիկեան անդ, էջ 286—288)։

## ԳՐՈՒԹԻՒՆՔ

Յովհ· Սեբաստացւոյ դրաւոր աշխատանքներէն ինծի ծանօթ են հետեւեալ գրուածքները·

1· Քարոզ Աստուածայայտնութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ասացեալ ի Յովհաննիսէ աթոռակալէ Սեբաստացւոյ ամենայն հիւսիսական կողմանց[1]։

Յանեղական լուսոյն նախնական,
Որ է պատճառ լուսոց եղական,
Լոյս գոյացեալ վճիտ մաքրական····

Տուներու սկզբնական գրերը կը կազմեն՝ Յովհաննիսի է բանս։

---

[20] Փարիսի Ազգ· Մատենադարանի Թ· 80, 11ա խորագիրն ունի այսպէս· «Քարոզ մեծի աւուր Աստուածայայտնութեան, Ծննդեան եւ Մկրտութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի· աղերս մաղթանաց բանի առ նոյն Աստուածն եւ Տէրն Յիսուս միջնորդութեամբ մօրն իւրոյ եւ կուսի ամէնօրհնեալ Ս· Աստուածածնին, յանարժան ծառայէ նորին ի նուաստ Յովհաննիսէ Սեբաստացւոյ եւ աթոռակալէ ամենայն հիւսիսական կողմանց»։

*Ձեռ. Երեւան, Պետ. Թանգարան, Թ. 372, 560ա — 565ա (Ա – Գ տուները ինկած են)։ Պարիս, Ազգ. Մատ. Թ. 80, 11ա — 20բ (1380)։*

2. *Նորին Յովհաննէս աթոռակալի ասացեալ ի սուրբ եւ յամենընջանիկ հարսն եւ ի քաջ սպառազէնսն՝ յանպարտելի ախոյեանսն հաւատոյ ի մեծն Աթանաս Աղեքսանդրու եւ ի կորովլին Սիմէոն եւ Կիւրղոս Երուսաղէմի։*

*Ցիսուս Աստուած իմ հոլիւ բարի,*
*Որ գկորուսեալ ոչխարն յերկրի*
*Գտեալ բարձեր յուսոյդ զօրեղի...*

*Տուներու սկզբնագրերը կը կազեն՝* Յովհաննիսի է բանս։

*Ձեռագիր՝ Երեւան, Պետ. Թանգ. Թ. 372, 565բ — 566բ (ինկած են Դ — Զ, ԺԲ — ԺԴ տուները)։*

3. *Ցիշատակարան Ցիսուս Որդւոյ։ Յովհաննէս 1349ին ի Սուրխաթ Գրիգոր (Սուքիասեանց) դրչին օրինակել տուած է Ներսէս Շնորհալւոյ տաղաչափութիւնքը, որուն կցած է։*

## ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ ՏԱՌԻՍ Ի ՍՏԱՑՈՂԷ ՍՈՐԻՆ. Ի ՆՈՒԱՍՏ ՅՈՎՀԱՆԻՍԷ ՍԵԲԱՍՏԱՑՈՅ. ԱՂԵՐՍ ՄԱՂԹԱՆԱՑ ԲԱՆԻ ԱՌ ԻՄԸՆ *: 211բ

Յիսուս ածեալ տէր անվախճան,
Հայր միածին Որդի եւ Բան.
Որով երկինք հաստատեցան,
Իմանալեաւքն համանգամայն:

2 հօր: — 4 իմանալեօքն:

* Հ. Ն. Ակինեան, կը թուի թէ մտադիր չէր հրատարակել ամբողջապէս այս Յիշատակարանը: Իր յօղուածին մէջ միայն մի քանի տուներու յառաջբերութիւնը կայ: Մենք սակայն յարմար գտեցինք այդ ուտանաւոր ներբողեանն ամբողջական բնագրովը այստեղ ներկայացնել, քանի որ միակ Ձեռագրի մը մէջ է որ առ այժմ պահուած կը գտնենք: Այդ Ձեռագիրը, գրուած եւ նկարազարդուած հաստ թուղթի վրայ, կը պահուի խնամով Վիեննայի Մխիթարեան Մատենադարանի մէջ, կը կրէ թիւ 547, որուն մանրամասն ցուցակագրութիւնը տես Հ. Յ. Տաշեան, Մայր Ցուցակ, Վիեննա, 1895, էջ 1019—1020: Տաշեան այն ժամանակ տակաւին անծանօթ Յովհաննէս Սեբաստացւոյ կենսագրութեան անդրադարձն մանրամասնութիւններու, կը համարէր թէ Ձեռագիրը գրուած է Սեբաստիա, սակայն այսօր յայտնի է թէ 1343էն սկսեալ Յովհաննէս կը գտնուէր Ղրիմ, ի Սուրխաթ, ուստի այստեղ իր գործածութեան համար գրել տուած է այդ Ձեռագիրը եւ այդ առթիւ յօրինած իր Ներբող — Յիշատակարանը: Գրիչը՝ Գրիգոր, Հաւանաբար, Սուքիասեանց, միօրինակ չէ աւ– եւ օ– գրչութեան մէջ: Մեր հրատարակութեան մէջ ամենուրեք պահած ենք աւ– ձեւը, իսկ տարբերութիւնները նշանակած ծանօթութիւններու կարգին:

(Հ. Գ. Տ. Գ.):

*Եւ երկրային հիմն անսասան,*
*Իմաստութեամբդ ի խոր անկան.*
*Նայ եւ զգալի գոյքս ամենայն,*
*Ի քէն եղեալք եւ գոյացան:*

*Յորոց պատիւ անեզրական,*
*Ընդ գոհութիւնս անչափական,*
*Եւ աւրհնութիւնք տոլորական,*
*Փառք եւ գովեստ անճառական:*

*Ընդ քեզ եւ Հաւր անըսկըզբան,* 212 ա
*Եւ Հակցի Հոգւոյդ բըղխման,*
*Կացցի յայժմուս եւ յաւիտեան,*
*Եւ անթուելի դարս անսահման:*

*Որում եւ իմըս փանաքի,*
*Յոյժ Թարմատար ոգիս յոռի,*
*Ի փեսայէդ եղեալ այրի,*
*Զար սիրելին գըտեալ գերի:*

*Սայ որ խորան է լուսալի,*
*Իմ ճշմարիտ Սողոմոնի,*
*Այժմ աղուեսուն որջ խաւարի,*
*Դիւաց դարուն տուն կեղարի:*

*Զարեաւք լցեալ անչափելի,*
*Վիրաւք նեխեալ անբուժելի,*
*Ծարաւաթոր եւ որբնալի,*
*Եւ տեսողաց իւր զազրելի:*

13 հօր: — 25 Զարեօք: — 26 Վիրօք: — 27 ուղղէ՝ որդնալի:

Յերես անկեալ քեզ պաղատի, 212բ
Բեկեալ սրտիւ յոյժ թախծալի,
Վիմաւք տըխուր արտասուալի,
Ձայնիւ նըւազ կողկողալի:

Հայեաց դու յիս տէր բարերար,
Աչաւք քո քաղցր եւ հաշտարար,
Զփանաքութիւնս իմ թարմատար,
Դու քեւ լըցոյ փարթամարար:

Եւ ըղձար սիրելին իմ խռովարար,
Հերքեա յինէն ի խոր խաւար,
Զայն որ բախեաց զիս կամակար,
Որպէս մանուկ մի խելագար:

Եւ սուրբ փեսայդ ուրախարար,
Մուտ յառագաստ քո սիրարար,
Զի քէն այրի դհոգիս աւտար,
Ընկալ ի գիրկդ ընտանեբար:

Գըրկեա աջոյ ձեռամբդ յաւժար, 213ա
Զախդ հովանի գլխոյս յարմար,
Զի մի հասցէ յիս նետըն չար,
Այն որ թըռչի մուտ ընդ խաւար:

Այլ եւ աղուէսն այն կամակոր,
Զհայրն սրտութեան եւ նենգաւոր,
Կալեալ արկցես անդունդք ի խոր,
Անդ որ է որջ իւր բնակաւոր:

31 Վիմօք, կարդա՛ Դիմաւք:
34 աչօք:
45 յօժար:

Եւ զաւղային դեւըն մոլոր ,
Զթըռչուն կոչեալըն թեւաւոր ,
Տանի խաւարն անլուսաւոր ,
Ի յարտաքինն յոյժ հեռաւոր :

Եւ զխաւարեալ յարկըս աղաւոր ,
Զկեղարու տունս տակաւոր ,
Լըցոյ լուսով քո արփաւոր ,
Ճառագայթիւքըդ փառաւոր :

Եւ նորոգեա յոյժ հնարաւոր , 213բ
Նորոգ խորան գիս հոգեւոր ,
Խաղաղութեանդ իմ յերկնաւոր ,
Արքայարան խորհրդաւոր :

Նըպաստ կենաց խոստովանեալ ,
Տէր իմ Յիսուս բարեբանեալ ,
Ախտից բոլոր բըժիշկ գովեալ ,
Անհընարից հընարք ցուցեալ :

Զհոգիս թիւնաւք չարին լցեալ ,
Եւ ի բարեաց դատարկացեալ ,
Մաքրեա հոգւովդ աւրհնաբանեալ ,
Լից բարութեամբ քո կատարեալ :

Եւ զկարեվէր խոց իմ նեխեալ ,
Զդարչ որքնալիցս ապականեալ ,
Կըտրեա սուսերբ քո սուր սըրեալ ,
Խարեա խայծիւդ ողջակիզեալ :

53 զօղային :
69 թիւնօք :
71 հոգովդ :
74 ուղղէ : որդնալիցս :

Եւ զկենարար մարմինդ աւրհնեալ, 214ա
Տուր ինձ կենաց դեղ կատարեալ,
Զի ճաշակմամբ ի քեզ բնակեալ,
Եղէց կրկին կենաւք լցեալ։

Նոյնպէս եւ զբան քո հոգեկան,
Որ է հոգի եւ կեանք մարդկան,
Որ ի Հոգւոյդ քո էական,
Հնչեաց ի գունդըն նախնական։

Ի մարգարէսըն հրաշական,
Եւ յառաքեալսն աստուածադան,
Յորոց գրեցան գիրք տիրական,
Հնոց եւ նորոց տառք ամենայն։

Որոց բազումք հետեւեցան,
Բարունքն ընտիր աստուածաբան,
Որք զհին եւ նոր գիրս ընթերցան,
Մաքուր մըտաւք եւ ուռճացան։

Կրկին յորոճ իմացական, 214բ
Բնաւիցս եռուն կեր հոգեկան,
Զ'որ աղաչեմ զկենացդ իշխան,
Տալ ինձ ըղնոյն լոյս գիտութեան։

Իմաստութիւն Հաւր անքընին,
Աստուած եւ տէր իմ յերկնային,
Նախախնամող էից բնաւին,
Ի ժամանակըս նոր եւ հին։

80 կենօք։
92 մըտօք։
97 հօր անքըննին։

Որպէս եւ մեզ յամըս վերջին,
Լոյս ծագեցեր զիմանալին,
Ջաստուածաբան սըրբոցն ըզմին,
Քըննիչ խորոց քո սուրբ տառին։

Ջարեանառուն իմ լուսատուին,
ՋՆերսէսըն սուրբ Պահլաւունին,
Ջհովիւըն քաջ ընտրեալ արին,
Ջեկեղեցւոյ ջահ պանծալին։

Ջդէտըն զուարթուն առաքինին, 215 ա.
Ջհաւատարիմ տընտես բանին,
Որ ի ժամու ըստ արժանին,
Ջհաց քո բաշխէր բանականին։

Սայ Մովսէսի լեալ նմանող,
Ջգործ եւ զբան քո տառապող,
Ցերգ եւ ի տաղ ըղնոյն չափող,
Քաղցր եղանակ ձայնիւ ածող։

Դաւթի գործոյն համզունակող,
Շնորհաց Հոգւոյդ քո ընդունող,
Ջնոր Գողիադ պարսաքարող,
Հերձուածողաց խըմբից հերքող։

Սզգմամբ քոյին Հոգւոյդ երգող,
Այսուն չարի սայ հալածող,
Ջմարդկան ըըկկիչըն խափանող,
Ոգւոց ախտից մեր բըժըշկող։

116 ուղղէ· ողող։
121 հոգոյդ։
124 ողոց։

Տեսանողաց Բանին սիրող, 215բ
Առաքելոցն յոյժ փափաքող,
Զմիտս նոցին բացայայտող,
Զափեալ բանիւ յըստակ մեկնող:

Իմաստութեան քո հանճարով,
Քոյինատուր տառիցն ուժով,
Ի յառաջին մարդոյն կարգով,
Մինչ ի վերջինն աւարտելով:

Զբան եւ ըզգործ չարագրելով,
Զիւրաքանչիւր դարուցն աճով,
Զմիտըս հանուրցըն խորհըրդով,
Մեկնեաց վըճիտ բանիւս չափով:

Զչարեացն ըզչար գործ յիշելով,
Զինքն ընդ նոսին չար կոչելով,
Վասըն չարին արտասուելով,
Մեծ կականմամբ հառաչելով:

Զբարեաց բարիսն յինքն ունելով, 216ա
Սրբոցն յաւէտ հաղորդ գործով,
Քեզ պաղատէր կողկողալով,
Խառնիլ ի դաս նոցին փութով:

Ելից ըզբանս իւր մաղթանաց,
Ի թիւս տանց երկհազարաց,
Որով յուսոյ դուըրդ կենաց,
Յաւէտ բախել զմեզ յորդորեաց:

134 ուղղէ՛. ոճով:

*Դըրրուստ մի այլ չարակարգեաց,*
*Զոր անճառէդ չափով ճառեաց,*
*Անծին ծընաւղ զՀայր քարոզեաց,*
*Անծին ծընունդ զքեզ դաւանեաց:*

*ԶՀոգիդ բըղխումն արտաճառեաց,*
*Ճշմարտապէս առանց կարծեաց,*
*Եւ զմարդանալըն քո գրեաց,*
*Մինչ յայն երեկ աւրն աւարտեաց:*

*Բարառնաբար յաղագս երկնի,* 216բ
*Բանըս գրեաց զարմանալի,*
*Որ ի դիմաց յերկնից խաւսի,*
*Իբր ի գոյէ մի կենդանի:*

*Բազում եւ այլ բանք պիտանի,*
*Որ իմաստնոց է ցանկալի,*
*Երգ եւ նըւագք հիանալի,*
*Եւ մեկնութիւնք խորին բանի:*

*Թարգմանութիւնք յոյժ գովելի,*
*Եւ պատմութիւնք ըսքանչելի,*
*Ներբողականք բանք գովեստի,*
*Եւ հաւատոյ ճառք պանծալի:*

*Արձանացոյց յեկեղեցի,*
*Ըստ յեւթնալոյս աշտանակի,*
*Լընուլ լուսովն իմանալի,*
*Զընդունողաց սոցին զհոգի:*

156 օրն:

*Այլ ես նըւաստըս քո ծառայ,* 217ա
*Յոյժ անպիտանըս պաշտաւնեայ,*
*Չերանելոյս գիրն ընթերցայ,*
*Ազատ կամաւք եւ ցանկացայ:*

*Բայց զի սնոտի հոգաւք լըցայ,*
*Եւ պատրանաւք պաշարեցայ,*
*Ներքին աչաւքըս կուրացայ,*
*Ոչ պահեցի զոր ընկալայ:*

*Վասն այնորիկ կարաւտացայ,*
*Գըրել ի նիւթ մաղաղաթեայ,*
*Գըրչաւ ճարտար զոր եւ ծանեայ,*
*Պըճնեալ ոսկով ի գոյն ծաղկեայ:*

*Քարեա տախտակն որ ըստացայ,*
*Ցիս անմոռաց պահել ըզսայ,*
*Եւ յիշատակ ինձ առ յապայ,*
*Ինձ եւ յիմոցըն մըշտակայ:*

*Նոյնպէս եւ սոյն տառիս գրողին,* 217բ
*Աշխատողին եւ ստուգաւղին,*
*Պայծառ ծաղկաւք զարդարաւղին,*
*Ի չար եւ կապ աւարտողին:*

174 *պաշտօնեայ:*
176 *կամօք:*
177 *հոգօք:*
178 *պատրանօք:*
179 *աչօքըս:*
181 *կարօտացայ:*
185 *ուղղէ՛. քարեայ:*
191 *ծաղկօք զարդարօղին:*

*Փափաքանաւք ընթերցաւղին,*
*Զմիտըս բանիցըս քննաւղին,*
*Սովաւ առ քեզ պաղատողին,*
*Մաքուր մըտաւք աղաւթողին։*

*Եւ ստացողիս յըղձմամբ սըրտին,*
*Ինձ եւ յիմոցն ամենայնին,*
*Որ տարփանաւք սիրոյ կըրկին,*
*Ետու գըրել ինձ ըղսորին։*

*Ի ծննդենէ մարմնով քոյին,*
*Ի թիւ յատուկ մի հազարին,*
*Ցերեք հարիւր եւ ի յիսնին,*
*Եւ ի մի ամ սկսեալ ամին։*

*Սակայն ի թիւ այսքանազեան,* 218 ...
*Ցեւթըն հարիւր տաւմարական,*
*Ի յիննըսուն աւարտական,*
*Եւ ի յութեակ թիւն յանգական։*

*Իսկ ի փոքրիկըն մեր շըրջան,*
*Ցերկու հարիւրըն թըւական,*
*Վաթսուն եւ հինգն աւարտական,*
*Ի վեցերորդ ամին սկըսման։*

*Քեզ մատուցի նըւիրական,*
*Զտառըս մաքուր աղաւթական,*

193 *Փափաքանօք։*
196 *մըտօք։*
199 *տարփանօք։*
206 *տօմարական։*
214 *աղօթական։*

Ես որ ծառայս եմ անարժան,
Քո Յովհաննէս այր անպիտան։

Զի յաներեկն աւր քո ծաղման,
Զմեզ ընկալցիս յաջոյն կողման,
Եւ քեզ տացուք փառս անվախճան,
Այժմ եւ յապայն եւ յաւիտեան։

217 օր։

4. Հաստատական Յիշատակարան Երեւանի Թիւ 7432 ճաշոցի թղ. 278բ, Ղրիմի Շահնշահ գիւղի Ս. Գէորգ եկեղեցւոյ (1372)։

«Այս գիր հոգեւորական հրամանի եւ հաստատութեան է նուաստ Յովհաննիսի կրօնաւոր քահանայի, ծառայի Յիսուսի Քրիստոսի Աստուծոյ մերոյ, շնորհաւք եւ ողորմութեամբ նորին աթոռակալի հիւսուսական կողմանց։ ....

(Վերջ.) Գրեցաւ գիրս յըստ մեզ մարդեղութենէն Տեառն մերոյ եւ փրկչին Յիսուսի Քրիստոսի ՌՅՀԴ (1374) թվականին եւ ըստ Հայոց մեծի թվականին ՊԻԱ (1372), ի դեկտեմբերի ամսոյ ի Իէ (27)։ Եւ վասն տաւել հաստատութեան նշանեցաք մերով իսկ սովորական ձեռագիր նշանաւս»։ Կնիք։

Հրատարակութիւն՝ Լ. Ս. Խաչիկեան, ԺԴ. դարու Ձեռագիրների Յիշատակարաններ. Երեւան 1950, էջ 504—505։

# ԺԲ.

# ՄԱՆՈՒԷԼ ԲԶՆԵՑՒՈՅ

## ԺԲ.

# ՄԱՆՈՒԷԼ ԲՋՆԵՑԻՈՑ

1388—1425, 1425—1432

*Մաշտոցներու եւ Գանձարաններու մէջ երեւան կու գան երեք գանձեր, որոնց տնակայ գրերը կը հիւսեն* Մանվէլ. *ինչ ինչ ձեռագիրներու մէջ այդ Մանվէլը կը կոչուի «Բջնեցի», «եպիսկոպոս», «Տէր Մանուէլ Բջնոյ, Այրարատեան Նահանգի», բայց անոր ժամանակի մասին որ եւ է ակնարկութիւն չ'ըլլար:*

*ԺԴ—ԺԸ դարերուն Բջնոյ արքեպիսկոպոսական աթոռի վրայ բազմած են համանուն հինգէ աւելի արքեպիսկոպոսներ, սկսեալ* 1367*էն: Այս պարագան կը դժուարացնէ որոշել գանձասաց Մանուէլի անձն եւ ժամանակը: Առ այս միակ միջոցն կը համարիմ յենուլ այն հնագոյն ձեռագիրներու վրայ, որոնք կը պարունակեն յիշեալ երեք գանձերէն մէկն կամ միւսը, այսպիսի են* 1436 (*Ա.*), 1484 (*Գ.*) *եւ* 1530 (*Բ.*) *տարիներուն գրուած ձեռագիրները: Եթէ երեք գանձերս մէկ հեղինակը կը պատկանին, կրնանք վստահաբար ըսել, թէ գանձասաց Մանուէլ Բջնեցին* 1436*էն յառաջ ապրած է. այլապ*

մեզի ծանօթ երեք Մանուէլներուն ընծայե-լու է։ Հաւանակօրէն նախապատուութիւնը Ա. Մանուէլին տալու է։

Բջնոյ աթոռին վրայ նստող առաջին երեք Մանուէլ անուն արքեպիսկոպոսներն են.

1. Մանուէլ Ա. յաջորդն Վանական Բ.ի. իր գովքը կը հիւսէ Յովհաննէս գրիչ, որ օրինակած է Շարակնոց մը «հրամանաւ» արքեպիսկոպոսին 1367ին ի Սանահին.

«Թվին ՊԺԶ ծրեալ եւ ծաղկեալ այս բուրաստան Յոհաննիսի գրչի ձեռամբ... ի սուրբ... ուխտս որ կոչի Սանահին... առ ոտս Ղազար վարդապետի եւ Երջանիկ հա-րազատի իրոյ Յովհաննէս ձգնազգեաց փի-լիսոփայի. հրամանաւ սրբազան վեհին իմոյ Երջանիկ եւ առաքելաշնորհ արհիական գլխոյն մեծի մետրապօլտի եւ վերադիտողի՝ երկնաքատակ տանն Արարադեան եւ տեղա-պահի երկնահանգետ աթոռոյն սուրբ տե-ղեացն, այսինքն անդն[լ]ական Վիրապին.. որ եւ աստուածային ընտրութեամբն շնոր-հեալ ի Տեառնէ հովիւ եւ առաջնորդ բա-նաւոր հօտի, իշխան եւ իշխեցող ի վերայ ԺԲ վիճակաց. որոյ անուն, իր եւ պատ-կեր... տէր Մանուէլ գերահռչակեալ։ Նա եւ ոչ ի յամիկ ժողովրդոց ընտրեալ, այլ ի յազատ տանէ եւ սեփական ազգէ, որ եւ ըստ անուանն ճոխութեան եւ ըստ վարուցն մաք-րութեան ի վերջին ժամանակիս փայլէ ի

տանս արեւելեան, որպէս զարեգակն ի մէջ աստեղաց. շնորհազարդեալ փիլիսոփայական հմտութեամբ աստուածաշունչ մատենից եւ երաժշտական եղանակաց. սիրող որբոց, զարդարիչ տաւնից, բարեկամ Քրիստոսի եւ ախոյեան հաւատոյ: ...որով ընդ բազմաց եւ զայս փոքրատուփ գիրք շարականցս ստացայ...» (Բանբեր, Ա. էջ 205—206):

Այս Յիշատակարանը կը կանխէ Մանուէլ արքեպիսկոպոսի մէկ տաղաչափականը, որուն անակապ գրերը՝ «Տէր Մանուէլ Երգե զայս բան»: Յառաջ կը բերեմ տունները.

Մանուէլ զհամբակս այս անարժան,
Եպիսկոպոս արուդ 'ւ անպիտան,
զաջորդ Բրջնոյ ու Արարատեան,
եւ Վիրայքին սուրբ գահերայան:
Այլ եւ ըզխմն աստուածանման
զտէր Վանականն արհիական,
որ կայ արքնեալ այժմ՛ ի տապան
յիշէք յաղաւթս մաքրական:
Նաեւ ասնէք յիշման արժան
զմեր մարմնական զծրնողքն արեան
զհայրն իմ Շապուհ յազատ տոհմեան,
զմայր Զանխաթուն բարի անուան:
Ու որք քան զսոքա յառաջել կան,
զպապ անուանեալքըն մեր բնական
զԹայլին 'ւ Արջուկ Զաքարիայն.
Քրիստոս հանգչի հոգիս նոցայն...:

Իսկ մերձաւորն խմոյ արեան
զմեծն Ագլիգրէկ Եգլիվարդեան,
ու Աւաքն որդի եւ Զաքարայն,
եւ ըզթոռնունքն իւր միարան:...
Լուր գի ասեմ լիաբերան,
զմեր հոգեւոր զծնաւղքն յաւազան,
զպարոն Սատրիկն Վահապեան,
զպարոն Վախախն բարի անուան:...
Սոյնպէս զորդի մեր 'ւ ազգական
ըզտիրացու ըզաբեղայն,
զքահանայապետ անուան,
զնորաբողբոջ ձեռացս ածման:...

(Բանբեր Հայաստանի գիտական Ինստիտուտի, գիրք Ա եւ Բ (1921—1922· էջ 203/205):

Այս վերջին տանս «զքահանայապետ անուան» կը թուի ինձ իմանալ, թէ նոր օծուած աբեղան ալ Մանուէլ անունը կը կրէր:

Իր գրչէն կ'երեւան նաեւ հետեւեալ տողերը, որոնք Երեւանի Մատենադարանի թիւ 4060 (Աստուածաշունչի) մէջ մուտ գտած են.

Զտէր Մանուիէլ համբակ վերջին,
Յաջորդ Բրջնոյ ու Այրարատին,
Որ ծըրեցի ծայրոք մատին.
Զյիշատակաց գիծս վերջին:

Միշտ յիշեսջիք առ ի բարին
Զմեզ եւ գնախնիքն մեր բնաւին.
Եւ ձեզ յիշէ Տէր ի բարին
Աստ եւ ի յօրն ապագաին. ամէն:

Լ. Խաչիկեան, ԺԵ. դարու յիշատակարաններ, Երեւան 1955, էջ 51:

Հաւանօրէն նաեւ հետեւեալը, ԺԴ. դարուն գրուած ձեռագրի մը մէջ (Երեւան, Մատ. Թ. 2079, էջ 228).

Բազմերանգ դաշտ նազելի
մատնեղիգամբ առշարեցի,
Քառակուսի հիմնադրի,
ու ութնանկիւնի վրան հարի.
Ութ բրքամբ զսա կառուցի,
երկեակ քառիւք բազմախաչի.
Եւ գեղեցիկ զարդարեցի
եւ տեառն իմոյ ընծայեցի.
Տէր Մանուէլ երաժշտի
Արարադեան մեծ այցելւի.
Զի յիշատակ սա եղիցի
գլխ ըստ հոգւոյ ստացողի,
Տէր Ստեփանոս փիլիսոփայի
մաքուր եւ սուրբ ծղնաւորի:

Մանուէլ Ա.ի աթոռակալութեան տարիները մեզի ծանօթ չեն: Գիտենք միայն 1367 տարին:

2. Իր յաջորդն եղած է Վանական Գ., որուն մահուան տարին միայն ծանօթ է։ Թովմաս Մեծոփեցի կը պատմէ, թէ Լէնկթիմուր 1387ին. «խաբեալ զամուրն Բջնոյ էառ զնա և սպան զեպիսկոպոս աշխարհին զտէրն Վանական, որ էր այր իմաստուն և գիտնական և ողորմած և գթած ամենայն աղքատաց» (էջ 19)։ Նոյնը կը վկայէ Գրիգոր Խլաթեցի, թէ 1387ին Լանկթամուրեանք.

*Զամուր տեղին յաւար առին...*
*Յորոց և մի էր և Բջնին,*
*Որ էր աթոռ երկուց պետին*
*Զոր առին և քանդեցին.*
*Զեպիսկոպոսն սպանեցին։*

(Լ. Խաչիկեան, ԺԵ. դարու Յիշատակարաններ. Ա. էջ 275)։ Ուրիշ ժամանակակից մը ձեռագրի մը յուշանցքին վրայ կը գրէ. «Քրիստոս Աստուած, փրկեա զաշխարհս ի Լանկթամուրէն. թվ. ՊԼԶ (1387), առէ ի ժ. Իաղմուրն երեկ ի Լանկէն ի Բջնի» (1388, մարտ 23: Հ. Ղ. Ալիշան, Այրարատ, էջ 274)։

3. Մանուէլ Բ. 1388—1425։

ա. Մանուէլ Բ. եպիսկոպոս 1406ին արձանագրած է Ներսէս Շնորհալւոյ Ընդհանրականի 1294ին օրինակուած ձեռագրին վերջը. «Զանբաժս ի բարեաց և զանջեղս ի չարեաց գհանդիպողս այսմ հայրենական

եւ կանոնական սահմանադրութեանս, զտէր Մանուէլ նուաստ եպիսկոպոս Բջնո. եւ այրարատեան նահանգի, յիշեսջիք ի մաքրափայլ յաղօթս ձեր, որով եւ դուք յիշեալ լիջիք ընդ սորին ի համագումար հանդիսին. ամէն. թվ. ՊԾԵ» (1406[1]) :

բ. 1414ին Սարգիս Թմոքցի յՕշական օրինակած է Երեւանի Մատենադարանի Թ. 6255 ճաշոցը. յիշատակարանին մէջ կը խնդրէ. «յիշեսջիք ի Քրիստոս զտէր Մանուէլն արհեպիսկոպոս Բջնոյ եւ Արարատեան եւ զտէր Յովաննէս, որք բազում աշխատութեամբ աղատակարգ եղեն» (Լ. Խաչիկեան, ԺԵ. դարու Յիշատակարաններ, մասն Ա., էջ 162) :

գ. Վիեննայի Թ. 55 Աստուածաշունչը գրած է Յովհաննէս եպիսկոպոս Անւոյ յանձնարարութեամբ Մանուէլ Բջնոյ արքեպիսկոպոսի եւ Մելքիսեթեկ ծաղկող նկարազարդած : Յովհաննէս գրիչ ունի մանր յիշատակագրութիւններ. յառաջ կը բերեմ երկուքը միայն.

դ. Թղ. 51բ. Զաստացուց զՍուրբ Գրոցս զարհի եւ զերջանիկ զիտապետն Բջնոյ մեծ նահանգին զտէր Մանուէլ աղաչեմ յիշել ի Տէր. ընդ նմին եւ զանպէտ գրիչս զՅովհաննէս եպիսկոպոս Անոյ վիճակիս . . . :

ե. Թղ. 365ա. Զամենիմաստ եւ զերջանիկ արքեպիսկոպոսն զտէր Մանուէլ, զմեծափափաք տենչմամբ ցանկացող զԱստուածաշունչ տառիս, հանդերձ հարազատովքն

*իւրովք՝ Զաքարիաիւ եւ Սարգսիւ աղաչեմ յիշել ի Տէր. նաեւ զիս զանպիտան գրիչ զՅովհաննէս եպիսկոպոս Նահանգիս. եւ Աստուած զձեզ»։*

գ. *Մելքիսեթեկ ծաղկող կը գրէ Թղ. 471բ. «Յիշեցէք... յաղօթս ձեր զստացող գրոցս զտէր Մանուէլ, որ ստացաւ զսայ հալալ յարդեանց յիշատակ իւր եւ ծնողաց իւրոց. եւ ի կատարել գրոցս գրելով ինքն փոխեցաւ առ Քրիստոս. եւ մնաց Աստուածաշունչս ծաղկելոյ...»։ Այ տողերուն կը կցէ գրիչս։*

է. *Շարժեալ ի սէր անճառելի,*
*Տէր Մանուէլ յոյժ նազելի...*
*Յոյժ ըղձացաւ սյսմ գանձի.*
*Եւ ետ գրել զԱստուածաշունչս գովելի,*
*Եւ ստացաւ իւրն յիշատակ անջնջելի։*
*Ով վեհազոյն եղբարք բարի...*
*Զձեզ աղաչեմ յար ըղձալի,*
*Յիշել համայն ի Տէր բարի,*
*Զտէր Մանուէլն ցանկալի...։*
*Լերուք եւ ինձ քաղցունք բարի,*
*Առնել յիշման զիս արժանի,*
*Զմեղսամակարթս յոյժ եղկելի,*

---

[1] *Էջմիածին, Գէւորգեան բաժին, Թ. 57, Թղ. 369բ. Հմմտ.* Н. Марръ, Сборникъ притчъ Барбана *Պետերբուրգ* 1899. *Յաւելուած Ա. էջ* 17։ *Ն. Մառ «սյրարաղեան նահանգի» կարդացած է «այր ար. ատե[փա]ննոս հանգի». կ'երեւայ թէ դժուարընթեռնլի էր բնագիրը։ Լ. Խաչիկեան չունի յիշատակարանս։*

ԶՄելքիսեթեկ…
Որ եմ ծաղկող այսմ տառի.
Նայ եւս էր թիւն տումարին
Ը. Ճ. հայկեան ազգին,
Տինայ Է. Ժ. յաւելուածին
Այլ եւս եւթն չարամանին:

Տումարին թիւն է. Ը × Ճ + Է × Ժ + Է, ուստի պէտք է իմանալ 800 + 70 + 7 = 877 (ՊՀԷ) + 551 = 1428:

Հ. Յ. Տաշեան ձեռագրիս ցուցակագրութեան ժամանակ կարդացած է «Ը × Ճ է Ժ կամ Է + Ժ», որով ստացած է 1368 կամ 1375: Այսպէս ալ յառաջ բերած են Գ. Յովսէփեան, Բանբեր Ա. 193 եւ Լ. Խաչիկեան, ԺԴ. դարու Յիշատ. էջ 335:

Մանուէլ Բ.ի մահը պատահած է այս թուականէն մէկ կամ երկու տարի յառաջ (տես վարը), ուստի 1426/1427 տարւոյն:

4. Յովհաննէս Ոսկեփորիկ, եպիսկոպոս Անւոյ եւ արքեպիսկոպոս Բջնոյ, գրիչ 1425—1432:

Սա էր Մանուէլ Բ. արքեպիսկոպոսի գործակիցն եւ եղաւ անոր մահուանէն ետքը անոր յաջորդը:

ա. Յովհաննէս կը յիշուի առաջին անգամ 1414ին Սարգիս Թմոքցիէն՝ Մանուէլ Բջնեցւոյ հետ «տէր Յովհաննէս», որոնք «բազում աշխատութեամբ օգտակար» եղած

*են ձաչոցի մը օրինակութեան* (*տես վե*ր 3բ) ։

բ․ 1418*ին Մկրտիչ գրիչ կը խնդրէ յի-չել «զվարպետն իմ զտէր Յովհաննէս, որ մականուն կոչի Ոսկեփոր», (Խաչիկեան, ԺԴ․ դարու Յիշատակարանք, էջ* 222) ։

գ․ 1425*ին կ'օրինակէ Յովհաննէս Անւոյ եպիսկոպոս Վիեննայի Թ․* 55 *Աստուածա-շունչը Մանուէլ Բ, Բջնեցւոյ համար* (*տես վերը* 3, դ) ։ *Իսկ* 3, ե․ *կը խնդրէ «յիշել ի Տէր նաեւ զխս զանպիտան գրիչ* զՅովհաննէս եպիսկոպոս նահանգիս», *այսինքն Բջնոյ եւ Արարատեան նահանգի* ։

դ․ *Ծախի Դող աւանի Աստուածա-շունչը, որ անթուական է, ունի յիշատակա-գրութիւնս․ «Զստացող սուրբ գրոցս զՍի-մէօն բարունի, զաշակերտ մեծին Գրիգորի* (*Տաթեւացւոյ*) *եւ զանխմաստ ծրող սորին զՅովհաննէս եպիսկոպոս Անւոյ աղաչեմ զձեզ զասք լուսերամից յիշման առնել զմեզ արժանի»* (*Մ․ Բարխուդարեան, Արցախ, էջ* 78) ։

ե․ 1432*ին ի Սանահին գրած է Ճարակ-նոց մը․ «Գրեցաւ Եղանակաւոր տառս ի Թվ․ Հայոց ՊՀԲ․ ձեռամբ տխմար եւ փցուն գրչի Յով․ եպիսկոպոսի Անոյ… ի խնդրոյ… Յո-վաննու քահանայի»* ։ *Ստացողն կ'աւելցնէ․*

*«Ետու գրել Յով․ արքեպիսկոպոսի մականուն Ոսկեփորիկ վերաձայնելոյ, շնոր-հազարդի եւ ճարտար գրչի․ որոյ յիշատակ նորին աւրհնութեամբ եղիցի»․ Երեւան, Մա-*

տեննադարան, Թ. 1587. Խաչիկեան, անդ, էջ 302—303: Յիշատակագրութիւնը Յովհ. արքեպիսկոպոսի մահէն վերջը գրուած կ'երեւայ:

Գ. Բեռլինի Թ. 37 Ճարակնոցը արտագրուած է ի ձեռն Մատթէոս գրչի 1447ին «ի լաւ եւ յընտիր աւրինակէ... զոր էր գրեալ ձեռամբ Յովհաննէս եպիսկոպոսի Անւոյ, մականուն Ոսկեփոր վերաձայնելոյ» (Խաչիկեան, անդ, էջ 604):

Է. «Երուսաղէմի Թ. 1584, Ճարակնոց, գրուած 1426ին ի յանառիկ գղեակս Թմոք, ձեռամբ մեղապարտ գրչի Անոյ եպիսկոպոսի տէր Յովհաննիսի ի խնդրոյ տէր Աստուածատրոյ ի լաւ եւ յընտիր օրինակէն մեծ եւ քաջ քարտուղարին Սիսոյ Գրիգոր գպրի մականուն Խուլ կոչեցելոյ... զօրինակիս տուողն զՄարգիս աւագերէցն» յիշեցէք: Ծաղկող եւ նկարող «Յովհաննէս կրօնաւոր»:

Ը. Վիեննայի Թ. 55, Թղ. 471բ. յիշելով Մանուէլ Բ.ի մահը, կը գրէ թէ այդ Աստուածաշունչը, որ գրուած էր հանգուցելոյն համար, աւարտած էր եւ կը մնար ծաղկելը: Բայց այն կ'իյնայ «ի ձեռս անիր(աւ բռնաւորի մը. մէկ տող, իբր 70 գիր ջըն-ջուած է. կը շարունակուի) ընտրութեամբն Աստուծոյ տէր Յոհաննէս, մանունկ գոլով հասակաւ եւ լի ամենայն առաքինութեամբ իբրեւ ջահ անշիջանելի փայլէր ի մէջ եկեղեցւոյ: Սա բազում աշխատանօք եւ ընչիւք ազատեաց զգիրքս ի ձեռաց անօրինաց եւ ետ

*ծաղկել զսա: Որոյ Տէր Աստուած վայելել տացէ նմա բազում ժամանակս. եւ գիր ծնողաց հոգին ի ձեռաց սատանի ազատէ Աստուած. եւ որք յիշէք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ, ամէն: Նայ եւ զանարժան ծաղկողս Մելքիսեթեկ յիշեցէք աղաչեմ»:*

թ. *Յովհաննէս Թմոքուեցի կը գրէ* 1442ին *«յերկիրս Արարատեան, ի գեաւղս, որ կոչի Սերկեւիլի», Տօնական մը, ուր ունի նաեւ տողերս. «զարձեալ աղաչեմ յիշել ի Տէր Յովանէս եպիսկոպոս, մականուն Ոսկիափոր, որ է ուսուցիչ մեր այամ զործոց», այս ինքն զրչագրութեան (Երեւան, Մատ., Թ.* 996. *Խաչիկեան, էջ* 534):

ժ. 1425*ին Ստեփանոս գրիչ ի Ջաղավանք «գրեցաւ, կ՚ըսէ (Երեւանի Մատենադարանի Թ.* 1114) *ի հայրապետութեան ազգիս Հայոց տեառն Պաւղոսի եւ յարհիեպիսկոպոսութեան մեծ նահանգիս Արարադեան տէր Յովհաննիսի նորընծայ ընդունակ նոր շնորհացն Քրիստոսի… զոր Տէր Աստուած պահեսցէ երկար ամօք յամենայն փորձութենէ հարազատ եղբարօք իւրովք. ամէն» (Խաչիկեան, անդ, էջ* 334—335):

ժա. 1432*ին ուրիշ մը կը գրէ. «ի յայս եւ ի սոյն ժամանակի յեպիսկոպոսութեան արհիական աթոռոյս Բջնոյ տէր Յովհաննէսի» (Անդ,* 421):

ժբ. 1432. *Կարապետ Աղթամարցի ի Տփխիս կ՚օրինակէ Աւետարան մը, որուն սկիզբը Թղ.* 1*ա գրուած է. «Յայսմ ամի փո–*

*խեցաւ ի Քրիստոս պարոն Ջալարէն. եւ յետ* 40 *աւուր փոխեցաւ ի Քրիստոս արհեպիսկոպոսն տէր Յովանէս, եղբայր նորին, որդիք պարոն Փաշի, երիտասարդական մահուամբ. եւ Թողին սուք անըմ չկելի իւրոցն եւ աւտարաց* (*անդ, էջ* 420—421)։ *Պարոն Ջալարէ յիշուած է* 1424*ին իբրեւ «իշխանաց իշխան»* (*անդ*, 316)։

ծգ. 1432*ին Աւետարանի մը գրիչը կը գրէ. «յանիշխանութեան Արարադեան դաւառիս... ։ Արդ ի յայս եւ ի այն ժամանակի, յեպիսկոպոսութեան արհիական աթոռոյս Բջնոյ տէր Յովհանէսի, եւս Ծատուր ծառայ ծառայից Աստուծոյ, նախարար, վերակացու եւ առաջնորդ քաղաքիս Բջնոյ... ընծայեցաք զսա* (*Աւետարան*)... *արհիական աթոռոյս Բջնոյ եւ երկնահանգէտ մաւրս լուսոյ սուրբ Աստուածածնիս»* (*Խաչիկեան*, *անդ*, *էջ* 421)։ *Եւ* ժդ. *Անթուական Աւետարանի մը յիշատակագրութեան մէջ «Ես տէր Յոհանէս արքեպիսկոպոս Բջնոյ եւ Արարատեան* (*Նահանգի*), *որ զգիրս գրեցի, վկայ եմ. Աստուած շնորհաւոր առնէ, ամէն»* (*անդ*, *էջ* 422)։

5. Մանուէլ Գ. 1452։ *Ունիմ վկայութիւնքս Բեռլինի Թ.* 33*ի* (*Մաշտոց*) *մէջ.*

*«Զվերջին ստացող սուրբ Երգարանիս զտէր Մանուէլ եպիսկոպոս, որդի պարոն Աւաքին, Թոռն պարոն Աղիղբէկին, որ գնեց զտետրակս ի հալալ յընչից իւրոց ի Թվ. ՋԱ* (1452)*. յիշեցէք ի Քրիստոս»*։

*Մաշտոց. «գրեցաւ սա ի գաւառիս Արարատեան, ի գեղաքաղաքիս Եղիվարդ… յառաջնորդութեան տեղւոյս տէր Մանուէլի արհիեպիսկոպոսի, որդի պարոն Աւագի եւ թոռն պարոն Աղիգբեկին, որ կամակից եւ ձեռնտու եղեւ եւ գաւրինակս շնորհեաց…: Գրեցաւ ձեռամբ… դրչի Մաթէոսի, ի թուականութեանս մեր ՋԺԳ* (1464) *ի կաթողիկոսութեան տէր Զաքարին ի յաթոռ սուրբ Էջմիածին Վաղարշապատու»* (*Ալիշան, Այրարատ, էջ* 198): *Եւ* 1469*էն Բանբեր Ա. էջ* 206:

6. Մանուէլ Դ. 1555. *անդ*:

## ՄԱՆՈՒԷԼ ԲՋՆԵՑՒՈՅ ԳԱՆՁԵՐԸ

1. Գանձ ի Մանուէլէ ասացեալ ի վերայ մեռելի:

*Մինդ ի յէէն, Բանդ ի սկզբանէ,*
*Յորժամ ծագիս փառօք ի յերկնէ,*
*Դատել զբոլոր ազգն յԻսրայէլէ,*
*Որք ի ծնընդոց յԱդամ 'ւ յԵւայէ:*
*Եւ պսակին բարիքն ի քէնէ,*
*Զարքըն տանջին ի սատանայէ.*
*Տէր ի ծառայս քո յայս խնայէ,*
*Եւ քաղցրութեամբ ի սա ակնարկէ:*
*Զաստուածային գութդ ի սա շարժէ,*
*Զողորմութիւնդ ի սա կարկառէ,*
*Զմեղս եւ զյանցանս զոր ինչ գործեալ է,*
*Ողորմութեամբդ քո զայն ջնջէ:*

Թէ ի բարին սա ծոյլ կացեալ է,
Ներողութիւնդ քո դայն չիշէ,
Վասն զի ո՞վ է մարդ, որ կեցցէ,
Եւ ի զգալիս յայս ոչ մեղանչէ:
Բայց դու միայն բանդ որ ի Հօրէ
Կամ ո՞ր ծնունդ յԱդամայ զարմէ,
որ զմահ մարմնոյն նա ոչ տեսանէ,
Որ մարմնացար ծնընդեամբ ի Կուսէ:
Եւ ոչ տիրեաց քեզ մեղք ի յերկրէ,
Այլ եւ բարձեր ըղմեղս յաշխարհէ·
Արդ, Տէր, ընկալ ըղմեր ննջեցեալս
Եւ հանգո՛ ի դասս լուսոյ աղաչեմք···:

կջ· Այս բաւական է ձեզ թէ լըսէք,
Եւ ի մեղացըն դադարէք,
Եւ յօդայնոցն զիս թափեցէք:

Տունք՝ «Մանվել»: Վերնագիրն Վիեննայի Թ· 362 ունի· «Գանձ որ ի մեռելթաղն ասա եւ զեղկելի Մանուէլս յիշեա· եւ Առաքել գծաւղս յիշեա: Ի Մանուէլ վարդապետէ»:

Ձեռագիրք բազմաթիւ են Մաշտոցներու եւ Գանձարաններու մէջ: Կը յիշեմ· Երեւան, Թանդ· 451 (1437): Էջմ· 473: 474: Վիեննա 133, Թղ· 42բ (1455): 362: Հալէպ, Քառասնից· 71 (1497· ցուց· Ա· 150) Գանձս կայ նաեւ Զմմառի 81, 105, 107, 108, 111, եւ 113 ձեռագիրներու մէջ:

3. Գանձ Ամենափրկչին. ի տէր Մանուէլէ:

*Մեծ է զօրութիւն մեծի Նշանին,*
*Մեր փրկագործին Ամենափրկչին,*
*Տիրական կերպին, դրոշմեալ պատկերի*
*Սուրբ Կարապետին...*
*Ամենափրկիչ պարծանք Հայկազնից,*
*Տուն քրիստոնէից, մեղաց մեր քաւիչ*
*Աշխարհափրկիչ, կենաց պարգեւիչ:*

*Տունք՝* «*Մանվլիէլ*»:

*Ձեռագիրք. Երեւան, Թանգ.* 353, *թղ.* 6*ա*—7*ա* (1484): 362 (1656): 367 (*ԺԵ/ԺԶ*): *էջմիածին*, 427, *թղ.* 296*ա*:

2. Գանձ Քահանայապետին ի Մանուէլ Բջնեցւոյ:

*Մեծ եւ հզաւր անուն հրաշալի,*
*Հայր համայնից Աստուած կենդանի.*
*Բանդ ի Հաւրէ ծոցածին Որդի,*
*Հոգին բղխումն եւ աղբիւր բարի:*
*Երեք անձինք բնութեամբ միակի.*
*Անքանակ 'ւ անորիչ 'ւ անբաժանելի...*
*Ընկալ զսա եւ դասաւորեա,*
*Զդիր յանցանաց մեղաց մեր ջնջեա,*
*Եւ արքայութեանդ արժանաւորեայ:*

*Տունք՝* «*Մանվլիլ է*»: *Վերնագիրը Երուսաղէմի Թ.* 302 *ունի.* «*ոդեալ ի տէր*

Մանուէլէ Բջնոյ Այրարատեան նահանգի· ի խնդրոյ բազմաց հարց եւ եղբարց սիրելի»։

Ձեռագիրք· Երեւան, Թանգ· 359 (1623)։ 361 (1633)։ 363 (1665)։ 364 (1670)։ 365 (1675)։ Էջմիածին· 424։ 826։ Երուսաղէմ, 302, 271բ (1530)· Թաւրիզ, Բերդաթաղ· 43, թղ· 418ա—420բ (տեղիս անընթեռնլի· ասկէ արտագրուած Վիեննայի Թ· 1041, թղ· 544ա)։ Զմմառ, 81, թղ· 387ա (ԺԶ)։

## ԺԳ.

## ՔԱՋՆ ԼԻՊԱՐԻՏ

*Յորտեղ նստին հաց ու սեղան*
*Ժողովք բազումք եւ չատ խըլխան,*
*Յիշեն ըզնա սուրբ քահանայք,*
*Տէր ողորմի ասեն նըմա:*

*Պատմական դէմք մըն է Լիպարիտ, Կիլիկիոյ հայկական թագաւորութեան վերջալոյսի ժամերուն պայծառացած հզօր եւ պատերազմասէր ասպետ մարաջախտ մը, որ իւր բազկի ուժով հայրենի հողին պաշտպանն է հանդիսացած, փայլած է հայ ժողովուրդին վստահութիւնն եւ համակրանքը, ու ինկած է պատուոյ դաշտին վրայ իբրեւ նահատակ մը հայրենիքի ազատութեան:*

*Ժամանակակիցները արձանագրած են իր արիական գործերը իրենց տարեգիրներու մէջ, բանաստեղծները երգած են անոր հերոսական մահն եւ ժողովուրդը յաւերժացուցած է իր նահատակին յիշատակը դրոյցներու մէջ:*

*Հերոսին փառքը ճառագայթած է իր*

*քրոջ վրայ, որ հայ ժողովրդական դրոյցին մէջ կը ներկայանայ ըմբշամարտուհի մը, կաշըմբուռն զօրութեամբ:*

*Մինչեւ այժմ ծանօթ էր Լիպարիտ* իբրեւ պատմական դէմք *Կիլիկիոյ ժամանակագրին այն կարճ տողերէն, որոնցմէ օգտուած էր Հ. Մ. Չամչեան եւ զորոնք քաղուածաբար յառաջ բերած էր Հ. Ղ. Ալիշան. իսկ* իբրեւ ժողովրդական հերոս՝ *այն կրկին տաղերէն, զորոնք երգած են Յովհաննէս Թլկուրանցի եւ Սարգիս Կաֆայեցի:*

*Բայց հիները այնպէս ալ ուշդ չեն գըտնուած նկատմամբ հայ հերոսին: Պատահած եմ յընթացս իմ դեգերումներուս հին ձեռագիրներու մէջ նոր նիւթերու, որոնք թէ պատմական Լիպարիտի դէմքը կը լուսաւորեն եւ թէ հայ հերոսին փառքը կը պանծացնեն: Թէ պատմական յիշատակարաններն եւ թէ գրուցախառն պատմուածքները արժանի են ուշադրութեան. վերջինները կը բանան մեր առջեւ նոր էջ մը հայ դիւցազներգական գրականութեան:*

*Այս տեղ իմ ջանքս պիտի ըլլայ ի մի հաւաքել Քաջին Լիպարտի անձին հայող ծանօթ եւ անծանօթ նիւթերը, պատմական յիշատակարաններն եւ գրուցախառն պատմուածքները, թողլով անոնց պատմական վերլուծումը գրութեանս վերջը:*

1.

ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՔԱՋԻՆ ԼԻՊԱՐՏԻ

Առաջին տեղը պիտի շնորհեմ գրուցախառն պատմուածքի մը, զոր գտած եմ Նախկին Լազարեան Ճեմարանի Թ. 140 ձեռագրին մէջ, Թուղթ 129բ—134ա, «Պատմութիւն քաջին Լիպարտին է ասացեալ» խորագրով: Ձեռագիրը կ'ամփոփէ իր մէջ Մովսէս Ջուղայեցւոյ Ժողովածոյքը, որ վերնագիր ունի. «Գիրք համառօտ ժողովածու վասն առ ի պատրաստ գոլոյ ի պէտս մատռութեան և տեսողութեան բանասիրաց... հաւաքեալ ի Նուաստ Մովսիսէ մեղաւոր Ջուղայեցւոյ, ի Թուականութեանս Հայոց ՌՃԽԴ (1695) ամին». օրինակած է 1762ին տէր Առաքածատուրի որդի տէր Յովհաննէս քահանայ «ի վայելումն Գօթայեցի տէր Աւետիս վարդապետին»: Որչափ նկատած եմ, պատմուածքս կը պակսի Մ. Ջուղայեցւոյ ուրիշ՝ աւելի հնագոյն օրինակներու մէջ. և արդէն նիւթն ալ անյարմար էր այն ժողովածոյքին նկարագրին. հաւանօրէն ուրիշէ մը, թերևս Յովհաննէս քահանայի գրչէն մուծուած է հատուածս ժողովածոյքին մէջ, իբրև ԼԲ. գլուխ:

Ինչպէս կ'երևայ, պատմուածքիս անծանօթ հեղինակը գրի առած է ինչ որ լսած է անգիր աւանդութենէ: Թլկուրանցւոյ տաղը հաւանօրէն ծանօթ եղած է իրեն. բայց ունի

*ինչ ինչ կ՚էտերու մէջ չեղումներ անկէ․ մինչ Թլկուրանցին պատմական հերոսը կ՚երդէ, պատմուածքիս հեղինակը կը նկրտի հերոսէն դիւցազն մը կերտել։ Արդեամբք ալ արձակ դիւցազներգութիւն մը հարկ է տեսնել հոն, որ Կիլիկիոյ սիրտը ձեւ եւ կերպարանք առած, դաղթող ժողովրդեան հետ աշխարհէ աշխարհ ընթացած, բերնէ բերան պատմուած, ի վերջոյ յանձնուած է թղթի։*

*Պատմութեանս կից կայ ուրիշ պատմուածք մը՝ Լիպարտի քրոջ մասին, որ նոյնպէս հետաքրքրական է։ Ինձ ծանօթ է այս պատմուածքին մէկ ուրիշ փոփոխակը, ուր հայ ըմբշամարտուհին կը ներկայանայ Եօթը քաջ եղբայրներու քոյրը։*

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՔԱՋ ԼԻՊԱՐՏԻՆ

*Քաջ Լիպարիտն էր ի Սասնոյ գաւառէն, որ եկեալ բնակէր ի Կիլիկէ, ի ժամանակս վերջին Թագաւորացն Հայոց՝ ի յազգէ Ռուբինանց Հեթմոյ եւ Թորոսի եւ ի նոցին Թոռանցն։*

*Եւ էր նա քաջ նման Տրդատայ եւ նման Մուշեղայ։ Զոր գային Տաճկաց ազգն ի Մարայ բազում զօրօք ի վերայ Տարսոնի եւ Կիլիկիայ գաւառին․ եւ ինքն քաջ Լիպարիտն*

ԽՈՐԱԳԻՐԸ՝ *Պատմութիւն քաջ Լիպարտին է ասացեալ։ Գլ. ԼԲ։*

9 *Կիլիկիոյ*։

միայն ելանէր ի դէմ եւ կոտորէր զամենեսին եւ դիզէր զլաշն որպէս բլուր բլուր։ Եւ կայր յեզր կարմնջին առ զօրսն Թագաւորին. եւ նստեալ հանգչէին ինքն եւ ձին. եւ կրկին մտանէր ի պատերազմն եւ կոտորէր զնոսա եւ փախուցանէր։

Եւ բազում ժամանակս անսասան եւ անվրէպ պահեաց զԹագաւորութիւնս Հայոց։ Եւ զզօրսն եւ զԹագաւորն (Թշնամեաց) ձերբակալ առնէր եւ զզօրսն կոտորէր եւ զզօրսն փախուցանէր եւ հալածէր։ Եւ յահէ նորա ոչ իշխէր գալ հեծել՝ ասպատակել զՀայս։

Եւ Թագաւորն Հայոց երկեաւ ի քաջ Լիպարիտէն, զի մի գուցէ եւ զինքն սպանանէ եւ ինքն Թագաւորէ։ Այլ քաջ Լիպարիտն հոգով եւ մարմնով ոչ ունէր այնպէս վատ խորհուրդ, այլ միամիտ ի սէրն Քրիստոսի եւ սուրբ հաւատոյ Լուսաւորչին եւ սուրբ Եկեղեցեացն՝ քաջութեամբ կայր արիաբար ընդդէմ զօրացն Տաճկաց։

Բայց յետոյ Մանճաք անուն ոմն ի Մարայ հեծելազօր հսկայաձեւ եւ քաջ եկաւ խնդրել ի Սուլթանէն, զի եկեալ սպանցէ զքաջ Լիպարիտն։ Եւ եկեալ ԾՌ հեծելով եւ բանակ էարկ ի դէմ Սրսու։ Եւ Թագաւորն Հայոց յայնմ ժամանակին ձենեց զքաջ Լիպարիտն եւ ասէ. Քեզի համար եկեալ են հեծեալս։ Եւ

18 եւ զորսն զԹագաւորն։ — 19 զօրսն փ.։ — 23 գուցցէ։ — 30 Մաճաք։ — 33 ծառայ։

*նա ելաց եւ ասէ. Իմ ջանս վասն եկեղեցեաց է եւ քրիստոնեայ եղբարց, եւ ոչ վասն թագաւորութեան. Է՞ր պատճառես զիս, որ զքո թշնամիքն սատակեցուցեր եմ եւ հալածական արեր եմ կամաւքն Քրիստոսի մերոյ. դարձեալ կրկին յուսամ ամենափրկիչն Քրիստոս, որ նոյն ինքն տայ կարողութիւն ծառային իւրոյ, որպէս ընդդէմ գալ եւ վանել զթշնամի խաչի նորա:*

*Եւ նոյնժամայն եմուտ յեկեղեցին եւ լալով համբուրեաց զսուրբ սեղանն եւ ասէ. Բարով կացէք, զի թշնամեաց ոչ վախենամ, այլ յիմոցս. թշնամութեամբ խորհուրդ խորհէին ինձ. բայց ես միամտութեամբ գնեմ զանձն իմ ի վերայ քրիստոնէից: Եւ համբուրեաց զեղբայրն իւր զԹաթուլ եւ զորդին իւր զՅոհաննէս եւ զկինն իւր Աննայ. եւ բազում ողբով գոչեաց եւ ասէ. Ոչ զխնային զջանս իմ եւ զքաջութիւնս իմ. այլ յորժամ հեռանայ ոսս ի դրանէ արքունի, չուրջ պատեն զաղանք վայրենիք եւ արեան ծարաւիք եւ աւերք ածեն եկեղեցեաց եւ զարպասաց եւ այնչափ արիւնս հեղուն անպարտ քրիստոնէից:*

*Եւ երբ զձին թամբեց եւ հեծաւ քաջ Լիպարիտն, եւ բռումբն ի ձեռինն՝ խաղայր առաջի զօրացն Հայոց թագաւորին. եւ օրհնէր զԱստուած: Եւ ի ձայնէ զոչմանէն ահարեկ լինէին թշնամիք իւր եւ սրտակտոր՝ որպէս զոչիւն առիւծոյ:*

Եւ սովորութիւն էր նմայ՝ երկու, երեք քաջ ձի թամբօք պահէին դհետ նորա. եւ յորժամ յոգնէր ձին ի վազելոյ եւ ի գնացմանէ՝ դառնայր առ հեծեալն եւ իջնայր ի ձիուն եւ հեծնայր ի միւսն եւ դառնայր ի պատերազմն: Եւ բազում անգամ ի մէջ պատերազմին անկաւ ձին եւ ինքն հետեւակ կռուելով ի հետ ձիաւոր եւ ռումբաւոր եւ զրահաւորացն. եւ կոտորելով երանէր ի միջոյ ամբոխին եւ երթայր առ զօրսն եւ հեծեալ զմիւս ձին եւ դառնայր զոչելով որպէս զառիւծ: Եւ մնամ թէ չարք ի յահէ նորա մեռանէին ի վերայ ձիոց. եւ նա զկռւողսն կոտորէր՝ որպէս հուր զեղէգն: Եւ որք հարկանէին զնա սրով եւ նիզակաւ եւ նետով, ոչ նայէր յետս, զի ոչինչ համարէր զնոսա եւ զհարուածս նոցա. այնպէս թուէր թէ տառկինակով հարկանէին զինքն: Այլ եւ բազում անգամ հետեւակ մտանէր ի կռիւ ի մէջ ձիաւորաց եւ միայն քարաձգութեամբ դարձուցանէր զթշնամիսն. եւ ինքն դառնայր ուրախութեամբ, օրհնելով զԱստուած:

Եւ մի ոմն քաջ՝ Մանճանք անուն՝ որ եկեալ էր ի կռիւ ԾԹ զօրօք. եւ ել քաջ Լիպարեան զոչելով եւ աւրհնելով զահեղ անունն Աստուծոյ. եւ գնայր խաղալով ի դէմ զօրացն: Եւ նոքա սասանեցան, երբ տեսին զյաղթող վկայն Քրիստոսի: Եւ մտեալ ի

70 հօդնէր: — 80 դհուր եղէգն:

կոխ եւ հարեալ փանեց եւ կոտորեց զնոսա եւ բազում զՄանձակն · եւ դարձաւ յետս եւ կուտեց զլաշն որպէս զլոր : Եւ ի խոնճիլ երկիվարին՝ դարձաւ յետս առ զօրսն Հայոց :

Յայնժամ թագաւորն չարացաւ · էառ զՀայոց հեծելս եւ յետս դարձաւ , էանց զկարմունճն եւ փլուց զնա կապանաւն :

Եւ եկեալ քաջ Լիպարիտն եւ եւես զչարութիւնն որ վասն իւր : Եւ ինքն զմահն յանձն էառ վասն Քրիստոսի · եւ դարձաւ յետս · եւ էջ յերկիվարէն եւ ընկէց զսուրն իւր ի բաց եւ նստաւ ի մէջ ասպարիսին : Յայնժամ բոլորեցին զնա · եւ ոչ ոք իշխէր որ մերձենայր առ նայ : Եւ այնչափ նետեցին ի հեռաստանէ բումբ եւ նիզակս եւ գեղարդս ի վերայ նորա , մինչեւ թաղեցաւ : Եւ այս օր հանեալ եւ խոցոտեցին զնա եւ սպանին :

Եւ սկսան կոտորել զաշխարհն եւ քակել զեկեղեցիսն · եւ սպանին զթագաւորն · եւ գերեցին · եւ սպաննելոցն արանց եւ ի կանանց , որ զթիւն միայն Աստուած գիտէ :

Եւ զգլուխն քաջ Նահատակին տարան ի Մսըր : Եւ սուլթանն յայժ ապաշաւեաց , եթէ Ընդէ՞ր ոչ բերէիք զնա կենդանի առ իս , զի կին տայի նմա որ արժէր , եւ թագաւոր առնէի , ընդդէմ թշնամեաց իմոց կեցուցանէի զնա որպէս պարիսպ :

100 ըլոյց : — 109 բաւմբ :

Եւ այնպէս նահատակեցին զքաջն Լիպարիտ եւ աւերեցին զաշխարհն եւ տիրեցին այդն Տաճկաց եւ Թագաւորեցին:

ԹՈՅՐՆ ԹԱԶԻՆ ԼԻՊԱՐՏԻ՝ ԸՄԲՇԱՄԱՐՏ

Եւ քաջն Լիպարիտն ունէր քոյր մի փախուցեալ ի գիւղ մի, առնակին եղեալ, իբրեւ յիսուն ամաց:

Եւ յայնմ ժամանակին ելեալ փահլուան մի խամայելացի եւ ասէր պարոնին Արսայ, թէ Բեր ի գաւառէ քումմէ կամ ի զօրաց քոց ինձի նման, զի զօտէմարտիցուք, թէ ոչ տուր ինձ հարիւր դեկան կարմիր ի աշխարհաց քոց:

Եւ նա ոչ եգիտ այլ ընդամարտիկ որ զզօտին ընդնել էր տաճկին:

Եկն քոյրն քաջն Լիպարտին եւ ասէ. Ի՞նչ տայք ինձ եւ ես կոխեմ զփահլուանն: Եւ ասէ Պարոնն. Զի՞նչ խնդիրք ունիս նա տամ, եթէ կոխես զնա: Ասէ կինն. Որչափ բամպակ որ չալկեմ այն իմ լիցի: Եւ առին յանձն:

Եւ եկեալ փահլուանն՝ ետես զկինն հսկայաձեւ եւ երկեաւ. բայց վասն կին լինելոյն արհամարհեաց զնա: Եւ մերկացաւ փահլուանն եւ զգեցաւ զգեստն իւր. եւ

ԽՈՐԱԳԻՐ՝ չունի Զ.:
2 առնայկին եկեալ: — 5 խամայէլացի: —
20 ընկեցաւ զգեստն:

17*

*սկսաւ խաղալ, իբր թէ այպ առնէր, եւ խընդրէր այր մարդ զի մարտիցէ ընդ նմա :*

*Եւ եկն յառաջ կինն՝ իւր կանացի զգեստիւն. եւ բռնեալ զերկու ծակացն փահլուանին երկու բռամբն եւ վերացուցեալ զնա եւ տարաւ յառաջի պարոնին, իգլիր զերեսս փահլուանին ի գետինն եւ զմի ականջն քարշեալ ի բաց նետեց : Եւ ամենեքեան զահի հարան, թէ ուստի՞ է սա կամ ո՞ր ազգէ :*

*Եւ հրամայեաց թագաւորն տալ նմայ բամբակ որպէս որ կարէ չալկել : Եւ բարձան զկինն այնչափ, մինչեւ հարիւր լիտր : Եւ նա առեալ ուրախութեամբ եւ գնաց ի տուն իւր. եւ իբրեւ էրաց զբամպակն, նա եսես որ եղեալ էր ի մէջ բամպակին քարս որ կայր քառասուն լիտր :*

*Եւ ամենեքեան ապուշ մնացին զօժանդակութիւն կնոջն. ամէն :*

## 2.

## ՅՈՎՀ. ԹԼԿՈՒՐԱՆՑԻՈՅ ՏԱՂ ՔԱՋԻՆ ԼԻՊԱՐՏԻ

*Տաղս առաջին անգամ լոյս տեսաւ* 1885*ին Հ. Ղ. Ալիշանի* Սիսուանին *մէջ (էջ* 226*) : Ձեռագիրը, ուսկից հանուած է օրինակը, չէ յիշատակուած : Բնագիրը, ինչպէս կը գրէ Նորայր Բիւզանդացի, յիշեալ հրատարակութեան մէջ «թերի է եւ կամաւ այլայլեալ ի պատճառս թուրքին» : Այս այլայլումները անփոփոխ պահուած են տաղիս յետագայ հրատարակութիւններու մէջ. այսպէս՝ Կ. Կոս-*

տաննեանց, Յովհ. Թլկուրանցի եւ իր տաղերը. Թիֆլիս, 1892, էջ 52—56. Հ. Գ. Յովնանեան, Միջնադարեան ազգային տաղաչափութիւն, «Հանդէս Ամսօրեայ», 1896, էջ 115—116 = արտատպ. Վիեննա, 1911, էջ 30—31. Հ. Գ. Ալիշան, Հայապատում, Վենետիկ 1901, Բ. մաս, § 359: Միանգամ հրտ. Ն. եպ. Ծովական, Սիոն 1954, էջ 323—25:

Տաղէս ձեռագիր օրինակ ծանօթ չէ ինծ. ունինք առաջին 1—8 եւ 13—16 տողերու համար երկրորդ օրինակ Սարգիս Կաֆայեցւոյ «Հոգւոյդ սուրբ ես եւ ամբիծ» տաղին վերջը, հրատարակուած նախ Հ. Գ. Ալիշանէ՝ Յուշիկք Հայրենեաց Հայոց, Բ., էջ 512 եւ ապա Հայապատում, § 359բ: Իսկ տող 61—96 գտած եմ էջմիածնի Թ. 515 ձեռագրին մէջ (թղ. 26ա, ԺԷ. դար): Յեցած այս օրինակներու վրայ կը փորձենք վերականգնել բնագիրը, իսկ 9—12, 17—60 տողերու մէջ Հ. Ալիշանէ մուծուած կամաւ այլայլութիւնները կ'ուղղենք ենթադրաբար:

Տաղին հեղինակը իր անունը դրոշմած է վերջին տան մէջ՝ Յովհաննէս Թլկուրանցի:

Լիպարիտի վսեմ, հայրենասէր եւ տիրասէր ոգւոյն վառ նկարագիրը, անոր ընտանեաց անդամներու յականէ յանուանէ յիշատակութիւնը, հերոսին նահատակական մահուան սրտաճմլիկ նկարագրութիւնը, Սիսի աւերումը, ընդհանուր ժողովրդական սուգը առթիւ Լիպարիտի եւ իր որդւոյն՝ Սիր

*Յոհանի նահատակութեան, պատկերներ են կտաւի վրայ առնուած թարմ գոյներով, որոնք կ՚ենթադրեն ժամանակակից մը եւ ժամանակի գրածումներուն թարգման մը։ Այս պատճառաւ ալ յայտնած էի ժամանակ յառաջ[1] այն տեսութիւնը թէ տաղիս հեղինակը չէ Սայ Յովհաննէս Թլկուրանցի կաթողիկոսը (1495—1535), այլ համանուն աւելի հնագոյն մը, թերեւս Յովհաննէս Թլկուրանցի գանձասացը, որուն գանձերը կը տեսնուին արդէն 1370ին եւ յաջորդ տարիներուն գրուած Գանձարաններու մէջ։ Ա՛յս Գանձասաց Թլկուրանցւոյ պէտք է վերագրել ոչ միայն Լիպարտի գեղեցիկ երգը, այլ եւ յանուն Յովհ. Թլկուրանցւոյ հասած տաղերու ընտիր շարքերը։*

### ՏԱՂ ՔԱՋԻ ԼԻՊԱՐՏԻՆ

*Է Աստուծոյ անունն օրհնած*
*որ անըսկիզբն եւ անվախճան․*
*Որ ուժ երետ քաջ Լիպարտին*
*եւ զօրացոյց զիւր սուրբ ծառայն։*

*Ի սուրբ Սարգիս քաջն ի նըման,*
*ի սուրբ Թորոս, ի սուրբ Վարդան,*

1 *Յաստուծոյ… օրհնեալ* S։ — 3 *որ ետուր ուժ Լ․* S։ — 5 *զերթ սուրբ* S *քաջին նըման* J։

[1] *Արեգ ամսագիր*, 1923։

Քան ըզՄուշեղ այլ խիստ յաղթող
 քան ըզՏրդատ Հայոց արքայն:

Յորժամ հեծնուր զիւր ձին վայրան,
 ի ձեռն առնուր զըսում ճօճան,
Սասանէր ազգըն Թուրքմանայ
 Դողայր ամէն Թուրքմանստան

Պատերազմին չըկայր խափան
 ամէն տարի տասն ու քըսան.
Ինքն ըզԹուրքմանըն հալածէր
 արին հանէր զէտ գետ Ջիհան:

. . . . . . . . . . . .

Ձերթ քաղխով տիկ չարեօք լըցան.
 ժողովք առին 'ւ ի Սիս էկան,
Մանչակ անուն չարեաց մասան,
 մօտ ի քաղաքն եկան հասան:

Վաթսուն հազար մարդ մխարան,
 զըրէհն հագան 'ւ ի ձին հեծան,
Ձեռուին առին զըսումը ճօճան,
 Թուր եւ աղեղ, ու կանգնեցան:

7 ըզՄուշեղն յաղթող եղեալ S: — 9—12 չունի J: — 11 ստրանց? S: — 12 ստարատան S: — 13 պատե- րազմի՛ն եկիր հափոյն (?) J: — 14 ամեն J ու] եւ S: — 15 մինն S: ըզԹումանըն S ըզԹումուն J: — 16 հ. գետեր J. հոս կ'ընդհատի J. իսկ S կը նշանակէ բացմակէտեր, յայտնի չէ թէ ձեռագիր ըր պակասաւոր է թէ հրատարակիչը տողեր դուրս թողուցած է: — 18 'ւ] ու S: — 22 'ւ] ու S: — 23 զրում S:

Վաթսուն հազար թուրքմանք եկան
Զայն ձրգեցին ու կատղեցան.
Հարին ըղփող պատերազմին,
գդուկն ու գնաֆիրն ըդդուհարկան:

Այն անօրէն չար կենդանիքն
որ են նոքա թուրքմանական,
Եւ ի յահէն քաջ Լիպարտին
գինչ դուռ դադան, տաջ չիդան:

Յանժամ տալ սուրբ թագաւորն.
«Բաջ Լիպարիտ, մեծ զօրական,
Հեծեալս քեզ համար եկան.
մինչ յայս տեղիս ուր կանգնեցան:

Վաթսուն հազար մարդ կարեցիր.
ու զՄանչակին գոխած տղան.
Առիր ըղթախտարն Սուլթանոյ
բերիր ձիան ու չատ թուրքման»:

Բաղցրիկ եասուր պատասխանի,
թէ «Ես քաղքիս չարին փոխան.
Բայց չէ պատեհ դրուց անել
թէպէտ հասու ինձ օր մահուան»:

Էջ եւ թամբեաց գիւր ձին վաղան.
հազար զրէհ 'ւ ի վրայ ճօշան,
Ի գլուխ եդիր յաղթող վահան.
ի ձեռն էառ գրսումբ ճոճան:

25 ստրանց S: — 30 ստարական S: — 38 ու] որ S: — 39 թուրանոյ (?) S: — 46 ի վերայ S: — 47 անիմաստ է «վահան», պէտք է ենթադրել «սաղաւարտ»: — 48 գրսում S:

*Երկրրպագեաց սուրբ աթոռոյն,*
*և ծունր եդիր ամէն խորան.*
*Փառաւորեաց զԵրրորդութիւն*
*զովեաց զիշխանըն մխրան:*

*Հառաչեաց, զորդեակըն համբուրեաց*
*հանց որ զհեծելն ի լաց եհան:*
*Ասաց. «Որդեակ իմ Յովհաննէս,*
*Վասիլ եղբայր իմ սիրական:*

*Փառօք տիկին դու Մանանոյ,*
*իշխանուհի արենըման.*
*Հայեաց պատկերս ի մանկութեան,*
*որ տի մանում ի հող տապան»:*

*Քաջ Լիպարիտ ասաց ցարքայն.*
*«Հայոց արքայ ադնուական*
*Հաստատ 'ւ ամուր պահէ զկարմունծն.*
*որ ես մանում ի մէջն ու գամ»:*

*Յիշեաց զՔրիստոս ահեղաձայն,*
*կարեց 'ւ անցաւ առիւծ նըման.*
*Զհեծելն արար փախըստական*
*'ւ ի հետ եդիր ընծանըման*

*Լաշկարն արար զիզան զիզան*
*հանց որ արիւն գետեր եկան:*
*Նա թագաւորըն չարացաւ,*
*զհեծելն առաւ ու ետ դարձաւ.*

57 Իմացիր *տիկին իմ Տամ-Աննա*: — 61 *հոս կը սկսի էջմ.* 515. *Լիպարիտն... արքայն* E: — 62 *Թագաւոր* S: — 63 *ու* S. *չունի* E. *գի կ.* E: — 66 *կոտորեաց փանցաւ* E: — 68 *հեան երթայր*: — 69 *լաշկն արաւ* S: — 72 *առին... դարձան* S *«ու» չունին* SE:

*Թուրքաց հեծեալն առաջ եկան,*
*գկարմունճն առին ու կանկնեցան։*
*Երբ Լիպարիտն ի յետ դարձաւ,*
*նա չար հեծեալն ի դէմ եկան։*

*Ըռումր զրրին ամէն զինայն,*
*չառ խոցեցին զյաղթող վրկայն.*
*Հայեր սզարմ յաջ եւ ի ձախ*
*զոչ ոք զատու իւր օգնական։*

*Գաղանաղէմ անօրէննին*
*որբ֊յն արեան ծարաւէին.*
*Զիւր սուրբ մարմինն ի հօն թաղին*
*զգլուխն առին ի հետ տարին։*

*Երբ որ հեծեալն ի յետ դնայ,*
*ապա Սխացիքն ի դուրս եկան.*
*Կրրկին առին 'ւ ի Սիս մըտան.*
*քաղքին կըրակ զարկին 'ւ եկան։*

*Ծառ գարպանին աւեր ածին.*
*'ւ եկեղեցիքըն զանազան.*
*Էրէցկնին գերի տարան*
*սարկաւագունքըն միարան։*

74 *գկարմունճն* E: — 77 *զինայ* S: — 78 *զաղթող* E: — 78 *աջ* E: — 79 *չի զատու* E: — 81 *անօրէննին* E *անօրինին* S: — 82 *ծարաւ էին սուրբ օրէնին, ծարաւ էին սուրբ յարեան* E: — 83 *մարմին* E: — 84 *տարան* E: — 85 *հեծեալքն... դնացին* S: — 86 *'ւ ապա Սրացիքն* S: — 87 *եկան* S: — 90 *վեկեղեցիքն* E *յեկեղեցեացն* S: — 91 *երիցկանայք* S:

Ծառագայթեց լոյսն ի վըրան
ի սուրբ մարմնոյն ի հանգըստեան :
Քաջ Լիպարիտն ու Սիր Յոհան
քրիստոնէից համար մեռան :

Յոր տեղ նըստին հայ ու սեղան
Ժողովք բազում եւ շատ իշխան ,
Յիշեն ըզնա սուրբ քահանայքն ,
Տէր ողորմի ասեն նըմա ·

Խէվ Յովհաննէս Թուլկուրանցին
Կարճ եւ ողորմ ասաց զայս բանս ·
Դուք յիշեցէք զինքն հանապազ ,
Յառակ ասէք ի մի բերան :

93 լոյս ձ. վրան E: — 94 ի] եւ S չունի E:
95 Յոհան E ուսիր Յոհան S: — 97 ի սեղան S:
— 97—104 չունի E: — 100 Տէր] տան S: —
101 Յովանէս S:

Հ. Ն. Ակինեան այս վերնագրով իր նախորդ գրութեան մէջ, էջ 252 կը ծրագրէր «Ի մի հաւաքել Թաջին Լիպարտի անձին հայոց ծանօթ եւ անծանօթ նիւթերը, պատմական յիշատակարաններն եւ գրուցախոսն պատմուածքներ, թողլով անոնց պատմական վերլուծումը գրութեանս վերջ»: Իր այդ գրութեան մէջ Մեծ Բանասէրը մեզի կը ներկայացնէր 1. «Պատմութիւն Թաջ Լիպարտին» անտիպ զրուցախառն պատմուածքը, «Թոյրն Թաջին Լիպարտի՝ ըմբշամարտ». եւ 2. Յ. Թլկուրանցւոյ «Տաղ Թաջին Լիպարտի», որ Ալիշանէ[1] եւ Կոստանեանցէ[2] հրատարակուած էր, եւ ինք ջանացած է քննագիրը վերականգնել մասամբ յեցած էջմիածնի թ. 515 Ձեռագրին վրայ եւ մասամբ ենթադրաբար ուղղելով գիտակցաբար մուծուած այլայլութիւնները: Հ. Ալիշան Բազմավէպի (1863, էջ 376) եւ «Յուշիկք», Բ.ի 1870, (էջ 510—512) մէջ կը հրատարակէր առաջին անգամ «Հոգւոյդ սուրբ ես եւ ամբիծ» Լիպարիտի նուիրուած

[1] Հ. Ղ. Ալիշան, *Սիսուան*, 1885 էջ 226. *Հայապատում*, 1901, Բ. Ց. 351:

[2] Կ. Կոստանեանց, *Յովհ. Թլկուրանցի եւ իւր տաղերը. Թիֆլիս*, 1892. էջ 52—56:

տաղ մը Յովհ. Թլկուրանցւոյ անունով: Յետոյ Ալիշան Սիսուանի մէջ հրատարակելով անոր հարազատ տաղը Քաջ Լիպարիտին, առաջին տաղը կը համարի անանուն եւ ռամկաբան քերթողի[3] մը: Կոստանեանց[4] անդրադառնալով այդ տաղին վերջին տան մէջ յիշուող Սարգիս անունին վրայ, հեղինակ համարեցաւ Սարգիս: Հ. Ակինեան յատուկ յօդուածով մը «Սարգիս վարդապետ Կափացի[5]» այն կարծիքն յայտնեց թէ այդ «Հոգւով սուրբ ես» տաղին հեղինակը, Սարգիս Կափացին է, առաջնորդ Կափայի Ս. Անտոն վանքին (1428—1448) եւ աթոռակալ Կոստանդին Կիլիկիոյ Կաթողիկոսին:

*Խմ. Պիւզանդեան*, Յովհ. Թլկուրանցի, Տաղեր, (Երեւան 1960, էջ 298) հրատարակութեան առթիւ այդ երկու տաղերն իբր մէկ տաղ կը համարի եւ կ'ընծայէ Յովհ. Թլկուրանցիին: Կը մերժէ Կոստանեանցի բացատրութիւնն եւ հետեւաբար նաեւ Հ. Ակինեանի ենթադրութիւնը: Առ այս իր պատճառաբանութիւնը՝ «Վիպերգի այս մասը իր բնոյթով այնպիսին է, որ պէտք է երգուած լինի դէպքի համեմատաբար թարմ տպաւորութեան տակ, իսկ 170 տարին բաւական երկար ժամանակ էր թարմութիւնը խունացնելու համար» (Անդ էջ 268):

---

3 Ալիշան, *Սիսուան* էջ 226:

4 *Կոստանեանց, Յովհ. Թլկուրանցի*, էջ 58:

5 *Հանդէս Ամսօրեայ* ԽԹ (1935), էջ 33—44:

Կը թուի թէ Պիւազեան մտադիր չէ եղած որ Սարգիս վարդապետ դէպքէն ոչ թէ 170 այլ 70 տարի իսկ հեռու չէր։ Քանի որ ըստ Ակինեանի անոր հետքը կը կորսուի 1447 թուականէն յետոյ. հաւանաբար 1450էն առաջ մեռած է։ Սարգիս վարդապետ իբր արուակալ կաթողիկոսին անշուշտ ծանօթ էր անոր եւ ծագումով նաեւ Կիլիկեցի, իր բարբառն ալ վկայ է այս իրողութեան։ Սարգիս վարդապետ իբր մանուկ շատ մօտ էր դէպքին եւ լսած էր իր ծնողքէն կամ իր ուսուցիչներէն Լիպարիտի քաջագործութիւնները եւ թարմ մնացած էր անոր անմոռաց յիշատակը եւ այդ թարմութիւնն ալ պահած է իր տաղին մէջ։ Պիւազեան համոզիչ պատճառաբանութիւն մը չունի Ակինեանի կարծիքը մերժելու, այս կը հաւաստէ նաեւ Գ. Վ. Աբգարեան իր գրախօսութեան եւ քննադատութեան[6] առթիւ։ «Տաղ քաջի Լիպարտին» բանաստեղծութեան առաջին մասը՝ 1—48 տողերը ոչ մի ձեռագրում Թլկուրանցու անունը չի կրում եւ ժողովածուում զետեղուած է թիւրիմացաբար ծագած մի ծանօթագրութեան հիման վրայ»։ Ալիշանի կողմէ «Յուշիկք»ում հրատարակուած է թիւրիմացութեամբ Թլկուրանցու անուամբ։ Հետազայում 15 տարի յետոյ գտնելով իրական

---

[6] Գ. Վ. Աբգարեան, *Յովհաննէս Թլկուրանցի, Տաղեր*. *Տեղեկագիր (Հայկկն. գիտ. Ակադեմիայի)*, 1961, *Թ*. 3, *էջ* 93—98։

Թլկուրանցու տաղը, Ալիշան որոշում է նորից հրատարակել այն, որպէսզի այս անգամ յայտնի, որ Թլկուրանցունը չէ՝ «սրտագին եւս քան զԹլկուրանցւոյն են բանք այլոյ անծանօթ եւ ռամկաբան քերթողի»։ Այս ուղղումից յետոյ տաղը Թլկուրանցու անուամբ հրատարակելու համար այլեւս ոչ մի հիմք չի մնում եւ Պիւագեանի բացատրութիւնները մեզ չեն կարող համոզել (Անդ էջ 94–95)։ Աբգարեան այնուհետեւ կը հաստատէ թէ «Տաղերի միասին լինելու հանգամանքը» հիմք չի ծառայեր նոյն հեղինակի լինելուն։ Եւ այն սովորութիւնը, որ Միջնադարեան տաղասացներու մօտ առկայ է, տաղին վերջաւորութեան իրենց անունը նշել, «ծիշդ այս տաղի հեղինակը վերջին տան մէջ գրում է.

Հիւսիսային կողմն (ձեռագրում հողմն)
Սարգիս յիշող եղաւ քեզիկ, [հիմիկ
Դուն սիւն էիր հայոց՝ մեզիկ,
Ով մեծ հզօր քաջ Լիպարիտ։

Աբգարեանի այս փոքրիկ սրբագրութիւնը փոխանակ «*Հողմն*»ի, *կողմն* աւելի եւս կը հաստատէ Հ. Ալիշեանի կարծիքը, եւ այդ ուղղումով իմաստ կը ստանայ նաեւ ոտանաւորին վերջին տունը։ Քննադատը կ'եզրակացնէ. «Այսպիսով, մեր կարծիքով, Սարգիսը տաղի հեղինակի անունն է։ Այս անունը կրող տաղը եւ նրան սխալմամբ միացուած Թլկուրանցու տաղը բացարձակ ան–

համաձայնութեան մէջ են գտնուում նաեւ իրենց կառուցուածքով: Սարգսի ամբողջ տաղը, առանց բացառութեան, բոլոր 12 տների վերջում ունի «Ով մեծ, հզօր քաջ Լիպարիտ» կրկնակի տող: Սրան հակառակ, Թլկուրանցու տաղը ոչ մի կրկնակ տող չունի: Եւ վերջապէս, Թլկուրանցու տաղն ունի իր անփոփոխ եւ որոշակի յանգաւորումը· 27 տնանց տանաւորից 25-ն անխտիր իրենց ներսում ունին *–ան* յանգը, մինչդեռ ան յանգը Սարգսի տաղում հանդիպում է ընդամենը մէկ անգամ» (Անդ էջ 96):

Աբգարեանի այս դիտողութեան վրայ աւելցնելու է լեզուական տարբերութիւնը: Սարգսի սիրելի են *քեզիկ*, *մեզիկ* ձեւերը, մինչդեռ Թլկուրանցիի մօտ ոչ մէկ անգամ գործածուած կը տեսնենք իր՝ Պիւազեանի կողմէ հրատարակուած տաղերուն մէջ:

Հանգուցեալ մեծ բանասէրը, իր հիւանդութենէն առաջ պատրաստած էր Լիպարիտի տաղին պատմական վերլուծումը[7] եւ այդ խնդրին հայող ինչ ինչ յիշատակագրութիւնները, որոնք այս առթիւ կը փութանք հրատարակել:

Հ. Պ. Տէր–Պօղոսեան

[7] *Թլկուրանցու «Քաջ Լիպարիտ» Ողբ – տաղին վերլուծումը տուած է Պ. Մ.* Խաչատրեան. *Յմմ. Թլկուրանցու «Տաղ Քաջի Լիպարտին» Պատմական ողբը: Պատմա – բանասիրական Հանդէս*, 1964, *Թ.* 2. *էջ* 111 – 120:

## Քաղաքական կացութիւնը
## 1345 — 1375

1. *Կիլիկիոյ Հայ Ռուբինեան թագաւորութիւնը իր գոյութեան վերջալոյսը կ՚ապրէր:*

*Ուժեղացած էր Եգիպտոսի սուլթանութիւնը: Կիպրոսի թագաւորին յարձակումը Աղեքսանդրիոյ վրայ եւ այն տեղ կատարած աւարառութիւնները*[1] *գրգռած էին սուլթանին գայրոյթը: Եգիպտոսի ամիրան փորձեց այդ աւարառութիւններու վրէժը լուծել Կիլիկիոյ Հայ թագաւորութենէն, որ դաշնակիցն էր Կիպրոսի թագաւորին: Թշնամի բանակը մերձեցաւ Կիլիկիոյ սահմաններուն 1347ին: Բայց կրցաւ Կոստանդին Ե. օգնութեամբ Կիպրացիներու եւ Ռոդոսցիներու՝ ընկրկել թշնամին հայկական սահմաններէն:*

*Հ. Մ. Չամչեան այս կռուին մասնակից կը ներկայացնէ Լիպարիտ իշխանը, իբրեւ սպարապետ հայ բանակին*[2]*: Թէ ինչ ազդի–*

---

[1] 1366/7. *տես Խաչիկեան, ԺԴ. Դարի Յիշատակարաններ. էջ* 478:

[2] *Չամչեան, Գ.* 350. *«Կարգեալ (Կոստանդին Ե.) իւր սպարապետ զմի ոմն Լիպարիտ անուն քաջ իշխան Հայոց»:*

*րէ առած է Զամչեան այս տեղեկութիւնը, չգիտենք: Կասկածելի է, վասն զի վաղաժամ է 1347 տարին Լիպարիտի համար: Զամչեան իր աղբիւրին Կոստանդինը, որ ըլլալու էր Կոստանդին Գ., կ՚երեւայ թէ համարած է Կոստանդին Բ.ը. այն ինչ որ 1368ին կատարուած է Սիսի պարիսպներու առաջ, փոխադրած է 1347 տարին:*

*2. Կոստանդին Բ., Պաղտին մարաջախտի († 1337) որդին, որ գահ բարձրացած էր հակառակ Պեմունդի թեկնածութեան, վախճանեցաւ 1363ին, այն տարին, երբ Վենետիկի մէջ վերջին օրերը կ՚ապրէր իր մրցակիցն Պեմունդ:*

*Պետրոս, Կիպրոսի թագաւորը, որ կը թափառէր Եւրոպա եւ կը բախէր Քահանայապետի եւ եւրոպական մեծ պետութիւններու դռները, Պեմունդի համար չահելու հայկական Կիլիկիոյ թագաւորական թագը, այժմ թագին ժառանգ կ՚առաջարկէր Լեւոնը:*

*Կոստանդին Բ.ի մահը կը փութացնէ Կիպրացին վերադառնալ Կիպրոս, որպէս զի Կիլիկիոյ գահին վրայ հանէ Լեւոն Ե., որուն ի նպաստ բերած էր ձեռք Հռոմայ Քահանայապետին յանձնարարականները, Բայց Հայ իշխանները մինչ այս մինչ այն կը հռչակեն թագաւոր, Կոստանդին Գ., Աղտուց տիրոջ Հեթում Ջամբուլայի որդին եւ Կոստանդին Բ.ի հօրեղբօրորդին:*

*Կոստանդին մօր կողմէ Կիպրացի էր.*

գլաց թէ ակար են իր ոյժերը երկրին թշնամիներուն դիմադրել կարենալու համար: Այս պատճառով ալ խորհեցաւ թագաւորական գահն ու գանձը յանձնել Կիպրոսի Պետրոս թագաւորին եւ առանձնանալ Կիպրոս: Կոստանդինի այս տրամադրութիւնը հարկադրեց, որ Պետրոս ետ կենայ Լեւոնի թեկնածութիւնը պաշտպանելէ: Բայց կային մէջտեղ շատ դժուարութիւններ, իրագործելու համար թագաւորին խորհուրդը: Դժուար էր մանաւանդ ստեղծել Կիլիկիայի եւ Կիպրոսի միջեւ ուղղակի յարաբերութիւն, որովհետեւ փակուած էին ճանապարհները: Ծովեզերքին՝ միայն Կոռիկոսի ամրոցը մնացած էր Հայոց ձեռքը: Ու այս միաբանած էին երկու կողմերը 1367 Սեպտեմբերին գաղտնի երթեւեկութիւններով, որ միաժամանակ յարձակում գործեն Եգիպտացիներու վրայ եւ վերագրաւեն Այասը: Պետրոս թագաւոր ժամադիր ժամուն մտաւ Այաս. բայց քաղաքը չկարենալով գրաւել իր ոյժերով, կրակ ձգեց եւ քաշուեցաւ Կոռիկոսի բերդը: Կոստանդին ուշացած էր ցամաքէն իջնել Այաս: Այսպէս հնարաւոր չեղաւ երկու թագաւորներու հանդիպումը: Պետրոս վերադարձաւ Կիպրոս:

Այժմ աւելի վատթարացաւ Կոստանդինի դրութիւնը: Եգիպտացիք, Թուրքերն եւ Գարամանները սկսան ասպատակել Կիլիկիա: 1368 Մայիս 6—9 փորձեց Տարսոնի ամիրան գրաւել Սիսը. բայց չյաջողեցաւ:

Զգացին Հայերը, թէ թողուած են իրենց ոյժերուն։ Խորհեցան գահընկէց ընել Կոստանդին թագաւորը եւ խնդրել Քահանայապետի միջնորդութեամբ մեծ պետութիւններէն Հայ գահին համար արքայական տունէ թագաւոր մը եւ եւրոպական միջամտութիւն։

Երկու հոսանք կար. լատինասէրները կ'ուզէին, որ Կիպրոսի Պետրոս թագաւորը հրաւիրուի իբրեւ թագաժառանգ. իսկ ազգայինները կը խորհէին Կոստանդին Բ.ի այրին տիկինը՝ Մարիուն ամուսնացնել Եւրոպայի ազնուազարմ իշխանի մը հետ։

Այս վէճերը տեղի կ'ունենային Կիլիկիա, երբ Պետրոս թագաւոր Եւրոպա կը գտնուէր, համաձայնութիւն մը գոյացնելու Ս. Քահանայապետի եւ Եւրոպական պետութիւններու մէջ, միացեալ ոյժով յարձակում մը գործելու Եգիպտոսի վրայ։ Վենետիկ էր ան, երբ հասաւ իրեն լատինասէր կուսակցութեան պատգամաւորութիւնը (1368, Օգոստ.—Սեպտ.), որ կ'առաջարկէր իրեն հայկական թագաւորութեան գահը։ Այս լուրին վրայ աճապարեց Պետրոս Կիպրոս վերադառնալ, անկէ Կիլիկիա անցնելու մտադրութեամբ։ Տեսած էր ամէն պատրաստութիւն նաւելու դէպի Կիլիկիա, երբ, 1369 Յունուար 16ին ի Նիկոսիա կը սպաննուի իր պալատականներու ձեռքով։ Ան կտրած էր մինչեւ անգամ նոր դրամ, ՊԵՏ-

ՌՈՍ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅԱՍՏԱՆԻ *վերստացութեամբ*:

*Այս միջոցին Տարսոնի ամիրան Մանչակ մտած էր Սիս եւ մատնած կիլիկեցիները յուսահատ դրութեան: Լատինասէրները այս անգամ (1 Յուլիս 1369) կը դիմեն ուղղակի Ս. Քահանայապետին խնդրելու անմիջական օգնութիւն: Միաժամանակ կը հասնին Եւրոպա պատգամաւորներու պատուիրակները, ստանալու համար Քահանայապետի եւ Եւրոպական պետութիւններու հաւանութիւնը ի նպաստ Մարիունի: Այս առաջարկութիւնները առիթ տուին երկար բանակցութիւններու:*

*1373 Ապրիլին սպանուեցաւ Կոստանդին Գ. իշխաններէն: Թագաւորութիւնը յանձնուեցաւ Մարիուն Թագուհւոյն մինչեւ որ գահը ժառանգ էր Լեւոն Ե.:*

*Բայց վիճակուած չէր Լեւոն Ե.ի փրկել Կիլիկիան իր օրհասական դժուարին կացութենէն: Հազիւ տարի մը կրած էր ան թագը իր գլխուն վրայ, երբ գերի ինկաւ Եգիպտացիներու ձեռքը: Կիլիկիա գրաւուեցաւ Եգիպտացիներէն:*

*Լեւոն Ե. ազատելով գերութենէ 1382ին անցաւ Ֆրանսա ողբալու հոն իր չար բախտը:*

*Լեւոն Ե. միանգամ միայն յիշուած է ժամանակակից Հայ յիշատակագիրներէ. Աւետարան մը գրուած ի Սուրխաթ Ղրիմի «ի Հայրապետութեան տեառն Կոստանդեայ*

*եւ ի Թագաւորութեան Լեւոնի» (Լ. Խաչիկեան, ԺԴ. դարի հայերէն ձեռագրերի յիշատակարաններ. Երեւան* 1950, *էջ* 518)։

## ՔԱՋՆ ԼԻՊԱՐԻՏ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՄԷՋ

1. *Սասունցի էր ծագումով քաջն Լիպարիտ։ Իր բարի ծնողքը, ծնած եւ սնած Սասնոյ լերանց վրայ, հայրն էր Թորոս Կապնեցի, որ ունէր երեք որդի, Վասիլ եւ դեռատի Լիկոս եւ Լիպարիտ։ ԺԴ. դարու առաջին կէսին կը գաղթէ ընտանիքով Կիլիկիա, կը հաստատուի Սիս, կը մտնէ զինուորական ծառայութեան մէջ։ Իբրեւ քաջամարտիկ զինուոր աստիճանէ աստիճան բարձրանալով կը կարգուի աւագ մարաջախտ հայկական բանակին։*

*Զինուորական ծառայութիւնը կ՚ընտրեն նաեւ իր որդիք։*

*Լիպարիտ կ՚ամուսնանայ Տամ – Աննայի հետ, որմէ կ՚ունենայ զաւակ մը Սիր Յոհան։ Երբ կը վախճանի հայրը, պարոն Թորոս աւագ մարաջախտ հայոց, հայ բանակին աւագ մարաջախտ կ՚անուանուի Լիպարիտ, եւ ժողովուրդէն կ՚ընդունի «պարոն Թորոսի» յորջորջումը։* 1361*ին կը յիշուի ան իբրեւ «իշխան»։* 1367*ին «ի յաւագ մարաջախտութեան Հայոց Լիպարիտ, պարոն Թորոս*

աւագ մարաջախտուն որդւոյն» (Խաչիկեան, 477)։

Առաքել կը նկարագրէ զինքը «յաղթող ի պատերազմի»։ 12 տարի «ի զէն զինուորութեան». գիշեր ու ցերեկ անդադար պատերազմի մէջ. ուր կ'երթար «իբրեւ զառիւծ գոչէր ի վերայ թշնամեաց խաչին Քրիստոսի» եւ դուրս կու գար պատերազմէ միշտ յաղթական։

1361ին Թորոս Ռուբինեաց կ'օրինակէ Մեծին Ներսէսի Վարուց պատմութիւնը «ի խնդրոյ որբասէր հեզ, քաղցր եւ խոնարհ իշխանացն պարոն Լիպարտի եւ պարոն Վասլի՝ որդւոցն պարոն Թորոսի Կապնցոյն, սպարապետին Հայոց»։ Եւ կ'աւարտէ բացագանչութեամբ. Ո՜վ քաղցր եւ բարի պարոն իմ Լիպարիտ, ընկալ զսա եւ զմեղաւոր հոգս Թորոս յիշեա» (Խաչիկեան, անդ, էջ 451)։

Տարսոնի ամիրան Մանչակ Ճահարօղլի, որ Եգիպտոսի սուլթանին գերիշխանութեան տակ էր, կը հաւաքէ իր չուրջը Թուրքման եւ Գարաման ցեղերէ իբր 12·000 հեծեալ եւ զրահակիր հետեւակ, եւ կը քալէ Սիս քաղաքի վրայ Անցմնցուկի կողմէն։ Կոստանդին Գ. էր Հայոց թագաւորը, որ ի լուր թշնամւոյն յառաջխաղացութեան՝ կ'ելլէ անոր դէմ։ Մախթայ դետին միւս կողմը բանակած էր Մանչակ։ Թշնամւոյն աՀեղ բանակը երկիւղ կ'ազդէ թագաւորին, որ կը հրամայէ պաշտպանողական դիրքի մէջ մնալ։ Քաղաքացիները խուճապի մէջ՝

կը դիմեն իրենց գոյքերով դէպի բերդ: Զօրքը պարիսպներու վրայ կը սպասէ թշնամւոյն յարձակողականին:

Մանչակ չի համարձակիր յարձակիլ եւ գրոհ տալ քաղաքին վրայ, կը խորհի խորամանկութեամբ մտնել քաղաք, աւարել եւ այրել: Թողուցած բանակը գետեզերին, կ'առնէ հետը 400 գրահաւոր հեծեալ եւ 800 ոմբաւոր եւ կ'երթայ քաղաքին արուարձանները՝ Տապլըներայ քարն եւ Կիրտանակի քարքիթն. անկէ կ'ուղարկէ թագաւորին պատգամաւորութիւն մը, միամտեցնելու զանիկա, թէ ինքը եկած է «առաջի քաղաքին ի Ֆառւճ» լոկ քաղաքը տեսնելու փափաքով: «Սսեցիք վերահասու կ'ըլլան խարկանքին: Ուժեղ յարձակումով մը կը մղեն թշնամին յետս: Այս պատերազմի մէջ մեծապէս կ'առաքինանայ Լիպարիտ. որ ի մէջ այլոց կը սպաննէ Մանչակի «գոված տղայն». զոր կը թաղեն նոյն բլուրին վրայ:

Յաջորդ տարին, 1369ին, Մայիս 20ին, երկրորդ անգամ երեւցաւ Սիսի առաջ Մանչակ: Եկած էր իր որդւոյն սպանութեան վրէժը լուծելու:

Կիլիկիոյ պատմիչը շատ հակիրճ տողերու մէջ ամփոփած է այս արշաւանքի հետեւութիւնը. կը գրէ. «Իսմայելացիները յարձակեցան Սիսի վրայ Անցմնցուկի կողմէն եւ սպաննեցին Լիպարիտ Հայոց քաջ սպարապետը, անոնց գլուխն էր Տահարօղլին»: Դէպքին մանրամասն նկարագրութիւնը տուած

է Յովհաննէս Թլկուրանցի, ողեւորուած Սպարապետի չահատակութիւններէն եւ հերոսական նահատակութենէն:

Մանչակ գլուխ անցած 60.000 գրահակիր այրուձիու՝ կու գայ եւ կը կանգնի Սիսի պարիսպներու առաջ: Կը հնչեն փողերը, կը ճօճան սուրերը. պատերազմի կը յորդորեն քաղաքացիները: Թշնամին կը փախնայ յառաջ գալ, յարձակիլ Հայոց վրայ, վասն զի զարհուրեցուցած էր զօրքը Լիպարիտի անունը: Թագաւորը (Կոստանդին Գ.) կը ձայնէ Լիպարիտին. Մարաջախտ, արի ել Թշնամւոյն դէմ. քեզի համար եկած է Շահարօղլին: Կը զգայ Լիպարիտ բոպէին դաժանութիւնը. կը տեսնէ մահը իր առաջ. բայց չ՝ընկճիր իր ոգին, կը վառի ի գէն եւ ի զարդ, կու տայ հրաժեշտ իր տիկնոջ Աննայի, իր որդւոյն Սիր Յոհանին եւ իր եղբօր Վասիլին: Իսկ Թագաւորին պատուէր կու տայ.

Հաստատ 'ւ ամուր պահէ զկարմունճն...
Որ ես մտնում ի մէջն ու գամ:

Լիպարիտ կը կնքէ ինքզինքը խաչի նշանով. կը կարդայ Քրիստոսի անունն իրեն օգնական, եւ առած իր քաջարի զօրականը կը քալէ Թշնամւոյն վրայ.

Կրտրեց 'ւ անցաւ առիւծ նըման,
զՀեծիլն արար փախըստական.
ւ ի հետն երթայր ընծանման.

Ըղլաչկն արաւ գիզան գիզան,
Հանց որ արին գետեր եղան:

Լիպարիտի քաջագործութիւններուն հեռուէն ականատես էին Թագաւորն եւ կամըրջապահ հեծեալը: Եւ երբ սպարապետը միջամուխ Թշնամւոյն բանակը կը գործէր նախճիրներ, կամրջապահ գինուորները չարժած նախանձէն Թագաւորին հետ կը Թողուն կամրջագլուխն ու կը հեռանան: Թըշնամին անպաշտպան տեսնելով կամուրջը՝ յառաջ կու գայ եւ կը տիրանայ:

Լիպարիտ Թէպէտ յաղԹական, բայց յոգնած պարտասած իրեններով հազիւ հասած կամրջախելին՝ կը բարձրացնէ աչքերը վեր, դէպի կամուրջ· կը տեսնէ Կամըրջագլուխը Թշնամիներու ձեռքը: Ան մատնուած էր իրեններէն: Անանցանելի էր գետը: Երկու կողմերէն Թշնամեաց մէջ: Կանգ կ'առնէր հերոսը: Թշնամին հեռուէն կ'արձակէր ռումբերը· ոչ ոք կը համարձակէր մօտենալ հերոսին: Ոմբակոծուած, նետահար վիրաւոր կ'իյնայ հերոսը դիտապատ, հայրենիքի, կրօնի եւ ժողովուրդի համար, ծածկուած ռումբերու եւ նետերու դէզերուն տակ, պատուոյ դաշտին վրայ: Նահատակին մահէն ետքը միայն կը համարձակի Թշնամին մերձենալ հերոսի գլխակին· կը բաժնէ գլուխը մարմնէն ու Թանկագին աւարով կը դառնայ Մանչակին, պատմելու ահաւոր ախոյեանին մահը:

*Պատուոյ դաշտին վրայ նահատակուած էր նաեւ Սիր Յոհան, Լիպարիտի որդին:*

*Լիպարիտեանց մահուամբ յաղթութեան դափնին խլած էր Մանչակ: Անմիջապէս հաւաքելով բանակին մնացորդը խաղաց Սիսի վրայ, գերփեց, աւարեց եւ հեռացաւ կրակի տալով քաղաքը:*

*Լիպարիտի նահատակութիւնը Մախ-թայ գետի եզերքին երգած են Յովհաննէս Թլկուրանցի եւ Սարգիս Կաֆացի. անոնց հետ համաձայն է կենսագիրը:*

*Լիպարիտի մահէն ետքը աւագ մարա-ջախտ կարգուեցաւ անոր եղբայրը Վասիլ, որ* 1370 *կը յիշուի այս տիտղոսով: Սա էր հաւանօրէն այն Վասիլն, որդի Թորոսի, որ Կոստանդին Գ.ի սպանութենէն ետքը* (1373) *Կի Թագաւորին Բարդողիմէ որդւոյն հետ օգնական նշանակուեցաւ Մարիուն Թագա-պահ դշխոյին, որ էր Կոստանդին Բ.ի այրի կինը (Սիսուան, էջ* 560):

## ՊԱՏՄԱԿԱՆ ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆՆԵՐ

1. *Թորոս Ռուբինեանց կ'օրինակէ ի Սիս Մեծին Ներսէսի վարքը* 1361*ին. «ի խնդրոյ սրբասէր, հեզ, քաղցր եւ խոնարհ իշխա-նացն պարոն Լիպարտի եւ պարոն Վասլի, որդւոցն պարոն Թորոսի Կապնցոյն, սպա-րապետին Հայոց, ի վայելումն անձանց իւ-*

րոց...: Հայցեցէք յԱստուծոյ զկեանս խաղաղական շնորհել պարոն Լիպարտին եւ պարոն Ռասլին եւ պարոն Լիկոսին դե-ռա...:

Ի թուին ՊԹ (1360), ի յամսեան ի Մա-յիսի երեկ Հալպայ ամիրայն Պայտամուրն Մարայ զօրօքն ի Հայք. նայ առին զԱտա-նայ եւ զՏարսոն ու զՃարի–Քարուկն ու զՏղայ–Լեւոնին:

Ով քաղցր եւ բարի պարոն իմ Լիպա-րիտ, ընկալ զաս եւ զմեղաւոր հողս Թորոս յիշեա»:

1. Խաչիկեան, ԺԴ. դարու Յիշատա-կարաններ, Երեւան 1950, էջ 451 (առնուած Փիրղալէմեանի Հաւաքածոյքէն):

2. Ստեփանոս դպիր կ'օրինակէ ժողո-վածոյ գիրք մը ՊԹ (1360) թուին յԵրուսա-ղէմ, «Յայսմ ամի բազում նեղութիւն կրեց ազգս Հայոց ի Հագարաց եւ յայլ անօրի-նաց, որ գրով չպատմի. եւ առին զմեծ քա-ղաքն Տարսոն եւ զայլ քաղաքս եւ գեղս եւ զբերդս. եւ գերիս բազումս. եւ արարին զամենայն աչք յարտասուս վասն ծովացեալ մեղաց մերոց»:

Երուսաղէմ, Թ. 1616:

3. Գրիգոր Ակներցի կ'օրինակէ Աւետա-րան մը ՊԺԶ (1367) տարւոյն Երուսաղէմ, «Ի Թագաւորութեան Հայոց Կոստընդեայ, որդւոյ պարոն Հեթմոյ Ախտուց տէր կոչե-ցելոյ». ի խնդրոյ Անդրէաս քահանայի: Գրի-չը իր մասին գրած է տողերս. «Եւ իմ գի

Թէպէտ... եւ բազմաժամ վշտաւք պաշարեալ էաք՝ ի բանտ եւ ի կապանս. եւ ամենայն աւուր առաջի դատաւորաց քարշեալք, այսմ ազագաւ թէ զՍկանդրի (զԱղեքսանդրիա) փռանկն (Պետրոս Կիպրոսի թագաւորը) էառ եւ բազում եւ անթիւ տաճիկ էսպան, եւ գայլս եւ զկանայս գերի վարեաց ի Կիպրոս կղզի»:

Երեւան, Թ. 8308: Խաչիկեան, անդ, էջ 478:

4. Երեւանի Մատենադարանի Թ. 1205, թղ. 197ա–բ, Գէորգ Լամբրոնացւոյ Եսայեայ Մեկնութեան վերջ կը գտնուի Հետեւեալ Յիշատակարանը, որ այժմ պակասաւոր է. բայց դար մը յառաջ ամբողջական էր, ինչպէս կը տեսնուի Հ. Ղ. Ալիշանի ստացած օրինակութենէն, որ դժբախտաբար քաղուածաբար հրատարակուած է Սիսուանի մէջ (էջ 541): Ա. մասը ունիմ անձամբ օրինակած:

Ի թՓարերութեանս Հայոց ՊԺՋն, ի ամսեանն Մայիսի Զ աւուրն, ի յաւագմանէ սատանայի արար դաւրաժողովք ամիրայն Տարսոյ. Մինչաք անուն. ժողովեաց ի շամբուն հեծելէն քանի որ կարաց. եւ գուրակիր Թուրքմանն զամէնն եւ այլ բազում խառամոնցիք. եւ եբեկ ի վերայ աթոռանիս բերդին Սըսոյ. ի հայրապետութեան տ(եառ)ն Մեսրոպա եւ ի թագաւորութեան Հայոց երկրորդ Կոստանդեա, որդի ի Քրիստոս հանգուցելոյն ամենագովութեանց ար–

ժանաւորին մեծ եւ հզաւրին եւ ամենամեծ ջամբլին Հայոց պարոն Հեթմոյ եւ ի դունտուստապլութիւնն Հայոց պարոն Բաղունի պարոն Լեւոն պարոն Բաղունենց որդոյն. եւ ի յաւլաք մարաջախտութեանն Հայոց պարոն Լիպարիտ, պարոն Թորոս աւլաք մարաջախտուն որդոյն: Նայ ի նոյն թիվս որ ի վերոյ է ի. «Զ.ն ի Մայիսն երեկ ի յՍնցմնցկին դլհին, բաղում հեծման հեծելով. եւ այլ չատ հետիվակաւք որ էին իբրեւ ԺԲՌ մարդ եւ այլ աւելի. նա յաջողութեամբն Յիսուսի Քրիստոսի եղավ թաղաւորն ընդդէմ նորայ Հայոց Կոստանդին. եւ դրին կռիվ հողմնկռիվ: Եւ ի յահէն սուլտանին ոչ եղեւ հրաման թաղաւորին կռվիլ ընդ նոսայ: Եւ այլ ամենայն բազմութիւն քաղաքին, հէծմանք եւ հետիվակք ի կիր էին ի բերդն գինչս իւրեանց. եւ միւս աւրն յղրկեաց դեսպան առ թաղաւորն՝ ուզելով հրաման տալոյ. եթէ զամ առաջի քաղաքին ի Փռուճ վասն տեսանելոյ զքաղաքն. եւ երբ գայր նայ խաբնաւք մտանէր ի քաղաքն ու այրէր. եւ այսպիսի խաբէութեամբ ուզէր դավաճանել զքաղաքն: Եւ ի միւս աւրն որ էր ի յամսոյս Ը. աւրն, ի յաւուրն Կէրպիչարաթ[1]. իւր իշխանքն էր ի վերա գետին Մախթլչա. նայ ի թող ի տեղն զվրանին քչտած եւ զիւր մաժառսստունն եւ զայլ ծանդրոցքն. եւ ի–

---

[1] ՊԺԶ (1367) տարւոյ Մայիս 8 Շաբաթ էր. 1368ին՝ Երկուշաբթի:

առ զգաւրքն իւր. եւ երեկ դէպ Շապլխերոյն քարն. ու երեկ դէպի Կերտուճակին քարքիթն. ու ի Պեղենց ածվուքն Շապըլխերն սահա? Եւ մինչ ի Ջրհորն — որ Թուրքն այժմ Մուսալլայ-դույուսի ասեն... [Մանչաք առեալ էր (ընդ իւր) զընտիր ընտիր զօրականին, յորս 400 հեծեալք զրահաւորք եւ 800 ոմբաւորք. այլ քաղաքացեացն ի վերայ հասեալ խարէութեան՝ խրախուսեցին այր զընկեր եւ խրախուսեցան ի Թագաւորէն յանուն՝ Քրիստոսի եւ Ս. Լուսաւորչին. մինչեւ] մի ոմն յիշխանաց Թագաւորին, որ էր իւր յոյժ սիրելի եւ մտերիմ եւ խոհեմ, որ էր աւագ չաւուշ, պարոն Կոստանդին Բաղիքարկցի?, որ ի բազում աւուրց հիւանդ կայր անկողնով, զժուարին ցաւօք, եւ դեռ չեւ էր լուացեալ ի չկարոտութենէն?, վասն այս պատահմանն՝ դետառողջ քաջասիրտ մարդ, եւ վասն բարի Թագաւորին սրտին համար՝ զմահն ի յանձն էառ, եւ հեծեալ ընդ Թագաւորին. եւ սպանաւ ի նոյն տեղին. եւ էր պատճառն իւր հիւանդութիւն, զի վատայժ եղեւ, որ չկարաց ինքն զինքն ժողովել ի վերայ ձիոյն: Եւ մի ոմն այլ սիրական Թագաւորին՝ որ էր իւր զօրացն չաւուշ, Սիր Թորոս Մոցի անուն, [նոյնպէս անկեալ երեւի ի մարտին. զոր քաջութեամբ մղեալ՝ յաղթութեամբ ի բազում աւարաւ դարձան Հայք. եւ յայնմ մարտի մեծապէս տառապեցաւ Լիպարիտ, սպանեալ եւ զՄանչակին զոված տղայն] եւ

զՄանչկլին գոլած տղայն թաղեցին ի յայն բլուրն եւ գայլ զօրս զոր կոտորեցին. եւ այժմ թէքիէ է Տաճկաց, եւ կոչի Զօմախ–ալէալ»:

Խաչիկեան, անդ, էջ 477. Սիսուան, էջ 541—42:

«Յայսմ ամի ի թվականութեանս Հայոց ի ՊԺԸ ամին մորեխն կերաւ զՃամառ աշ–խարհն եւ եկն հաւն Աստուծոյ հրամանաւն եւ կերաւ զմորեխն:

Յայսմ ամին նահատակեցաւ մեծ պա–րոնն ի Հայոց պարոն Լեւպարիտն, որում ողորմեսցի Քրիստոս Աստուած նմա ի հան–դերձելումն. ամէն:

Քաջ զաւրականն Քրիստոսի նմանեալ տուաջին զաւրավարացն Մեսկեսիոսի, Գէոր–գայ... սա էր աշխարհին Կիլիկիոյ ծնեալ եւ սնեալ ի Սսոյ, բարի ծնաւղաց զաւակ եւ քաջամարտիկ զինաւոր, որ անուն պարոն Թորոսի կոչի: Եւ էր սա Աստուծոյ կարո–ղութեամբն յաղթող ի պատերազմի ի գէն զինուորութեան երկոտասան ամ զգիշեր եւ զցերեկ ոչ դադարէր ի պատերազմելոյ. ոչ տայր քուն աչաց եւ ոչ նինջ արտեւանաց, եւ ընդ որ ընթանայր՝ իբրեւ զաւիւծ գոչէր ի վերայ թշնամեաց խաչին Քրիստոսի եւ յաղ–թէր կամաւն անեղին Աստուծոյ՝ այլազ–գեաց:

* Յետ ԺԲ ամի անցանելոյ Հեթումն

Հոռոմ շունն ի Սոյ մահապեղ արրոյց քաջ զաւրավարին պարոն Թորոսին եւ սպան զնա :

Ես Առաքել գրեցի զվարս սրբոց» :

Վերջին աստղանիշ հատուածը հաւանօրէն Յայսմաւուրքի մէջ գրուած լուսանցագրութիւն մ՚եղած ըլլալու է. ո՞վ է Պարոն Թորոսն եւ ո՞վ Հեթում հռոմշունն: «Յետ ԺԲ ամի» եթէ հաշուենք 1369էն, պիտի ստանանք 1381· երբ կարելի չէր «Պարոն Թորոս զօրավար» գտնել:

4. Հետեւեալ Յիշատակարանս հանուած է 1298էն ի Մաշկեւոր գրուած Յայսմաւուրքէ մը, որ կը պահուէր Տրապիզոն, ուր Պր. Հայկ արտագրած եւ ուղարկած է մեզ նախորդ դարու վերջերը:

5. Ի թուին ՊԺԸՆ ի Մայի(ս) ամսու ին երեկ Տարոյ Նայիպն Ծուհ որ է (Ծահարի՞) որդին ի վրայ Սըսու ի Ծարաթ օր· կովեցան յուսին ղիհն ու իրք մի վղեն չկարցին այնել, ու Կիրակի ի վաղուենէ եկին յԱնցմնցկին Կանդարայն հեծմնով ու հետեկով. գրին կոխ ու խանկրեցին զքրիստոնէքն ու սպանին Ճ մարդ ու սպանին զպարոն Լիպարիտ պարոն Թորոս ավաք մարաջախտուն որդին ու այրեցին զքաղաքն ու զզարպան ու կեցաւ գ աւր ու դարձաւ ի յիր տեղն ի Տարսուս: Կու ասեն թէ Կոստընդին Թագաւոր պարոն Հեթմու որդին

երեր դհիծելն ու տուր տուեց գպարոն Լի-պարիտն ու գքաղաքն Տաճկին:

British Museum, Or. 5458. թղ. 143ր. Կոնիբիր, Ցուց. թ. 113, էջ 292):

6. Կիլիկիոյ պատմիչը կը գրէ.

Եկին Իսմայէլացիքն ի վերայ Սսոյ ընդ անցմնցուկն, եւ սպանին զքաջ սպարապետն Հայոց Լիպարիտն. որոյ գլուխն էր Ճահար օղլին:

Ալիշան, էջ 226, հմմտ. նաեւ 538:

7. Ժամանակագիրն Կիլիկիոյ ծանուցանէ զի Լիպարիտ Քաջն մարաջախտ՝ որդի է Թորոսի ասպ մարաջախտի, եւ կրսեր եղբայր Վասիլի, զի սա էր ասպ մարաջախտ՝ ի ժամանակի չահատակութեան եւ նահատակութեան, առ որովք կայր եւ այլ ոմն մարաջախտ Օշին անուն եղբայր Թորոսի եւ հայր Վասիլի:

Ալիշան, 542:

8. Ցատաջ կը բերեմ նաեւ Հ. Զամչեանի հետեւեալ տեղիքները.

1347ին Եգիպտոսի ամիրան անհամար զօրքով կը յարձակի Հայոց վրայ, ջնջելու քրիստոնէական կրօնը: Կոստանդին թագաւոր կ'ելլէ անոնց դէմ «կարգելով իր սպարապետ զմի ոմն Լիպարիտ անուն քաջ իշխան Հայոց: Եհաս նմա ի Թիկունս եւ Հուգոն արքայ Կիպրոսի ի Հայոց յորդորելոյ Պա-

ղին. եկն եւ Դէմոտաղոս զօրագլուխ հեծելազնդի Հռոմայեցւոց: Միաբան մատուցեալ ուցա ընդ այլազգիս՝ հարին եւ հանին զնոսա ի Կիլիկիոյ...:

«Ամիրայն Բաղտատոյ եւ Եգիպտոսի, որում անուն էր Այշէխուր սուլտան՝ կամ Շեխմէյխ խան, ... գիտելով թէ դաշնակից է Լեւոն արքայ Հայոց ընդ (Պետրոսի) արքային Կիպրոսի արձակեաց ապա ի ներքս ի Կիւլիկիա զգունդս զօրաց իւրոց ի ձեռն մեծի զօրագլխին իւրոյ՝ որ կոչիւր Շահար օղլի» (յամի 1366):

Եւ Լեւոն արքայ ընդդէմ Եգիպտացւոց հանդերձ Լիպարտեաւ քաջ սպարապետաւ իւրով. եւ ի մարտնչել ընդ նոսա սաստիկ՝ եցոյց Լիպարիտ ահագին արութիւնս, և եհար զհարիւրս ի թշնամեաց. այլ իբրեւ անխնայ մխեցաւ ի խուժանն՝ վտանգեցաւ եւ անկաւ: Զայն տեսեալ թագաւորին Լեւոնի՝ լուծաւ եւ լքաւ, եւ դարձաւ ի փախուստ. եւ ապա աղաչանօք հաշտութիւն խօսեցեալ ընդ Սուլտանին՝ եհան զզօրս նորա յաշխարհէ իւրմէ»: [1371] Բայց զկնի ամաց ինչ յէ ամի թագաւորութեան Լեւոնի անկաւ վերստին թշնամութիւն ի մէջ նորա եւ ի մէջ Եգիպտացւոց. եւ եկն միւսանգամ Շահար օղլին զօրու ծանու. եւ այրեաց ըստ մասին զՍիս քաղաք. եւ կացեալ յաշխարհի անդ աւուրս քան՝ ապականեաց զբերդս երկրին. եւ անկաւ սով ի տեղիս տեղիս.

*մինչեւ գրիւ մի ցորենոյ վաճառեցաւ ի Սիս Ճ դրամոց: Իսկ Լեւոն արքայ առեալ ընդ իւր արս քանի մի, եւ պատահեալ մարտի զօրացն Եգիպտացւոց՝ եհար զնոսա չարաչար. բայց չկարացեալ ի սպառ զդէմ ունել, վտանգեցաւ. եւ վէրս ընկալեալ յանձին՝ փախստեայ անկաւ յանմատոյց լերինս. եւ չերեւեցաւ առ ժամանակ մի...:*

*(Հ. Մ. Չամչեան, Պատմութիւն Հայոց, Գ. էջ 350 եւ 357):*

